# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1 ՀՈՒՆՎԱՐ · 1966
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание






ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար


# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ ԵՎ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Հին տարին՝ 1965 թվականը, պատմության գիրկն անցավ։ Սովետական ժողովուրդները նոր տարի թևակոխեցին ձեռք բերած պատմական նվաճումների խոր գիտակցությամբ և հպարտությամբ լի։ Բավական է ասել, որ ՍՍՌՄ արդյունաբերությունն անցած յոթնամյակի ընթացքում 84 տոկոսով ավելացրեց իր արտադրանքի ծավալը, նշանակալի չափով գերակատարվեց նախատեսված պլանը։ Էլեկտրաէներգիայի, թուջի ու պողպատի, մեքենաների, սարքավորումների ու սարքերի, քիմիական նյութերի արտադրության, նավթի, գազի ու քարածխի արդյունահանման մարզերում մեծ քայլերով առաջ ընթացավ սովետների երկիրը։ Վերջին յոթ տարիներում, կրկնապատկելով արդյունաբերության հիմնական արտադրաֆոնդերը, սովետական ժողովուրդն իր հերոսական ջանքերով կառուցեց և գործարկեց հինգուկես հազար խոշոր ձեռնարկություններ։*

*Մեզ օրինական հպարտություն է պատճառում, որ պարտիայի ճիշտ քաղաքականության շնորհիվ, Սովետական Միությունն աշխարհում երկրորդ տեղն է գրավում արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալով, իսկ նրա մի շարք կարևոր տեսակների արտադրությամբ՝ գրավում է առաջին տեղը։*

*Մեր ռեսպուբլիկայում ևս արդյունաբերությունը զարգանում է արագ տեմպերով։ Վերջին յոթ տարում կառուցվեցին և շահագործման հանձնվեցին 220 արդյունաբերական ձեռնարկություն և խոշոր արտադրամաս։ Կրկնապատկվեցին արդյունաբերության հիմնական ֆոնդերը։ Հսկայական աշխատանք կատարվեց տեխնիկական վերակառուցման, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման ուղղությամբ։ Հաշվումները ցույց են տալիս, որ Սովետական Հայաստանի արդյունաբերությունը յոթնամյակի տարիներին համախառն արտադրանքի թողարկումը ավելացրել է երկու անգամից ավելի։ Իսկ ռեսպուբլիկայի արդյունաբերության այնպիսի կարևոր ու առաջատար ճյուղերը, ինչպիսիք են՝ քիմիական ինդուստրիան, թողարկվող արտադրանքի ծավալը կմեծացնի 3 անգամ, գունավոր մետալուրգիան մոտ 3 անգամ, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը՝ 3 անգամ, սարքաշինա-*

կան արդյունաբերությունը՝ մոտ 4 անգամ, հաստոցաշինական արդյունաբե-
րությունը՝ 4,6 անգամ։

Մեծ աշխատանք է կատարվում էներգետիկայի զարգացման ուղղությամբ,
որը ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հետագա ծաղկման հիմքն է։

Այսպիսի փայլուն և անհերքելի նվաճումների լույսի տակ, երիցս խղճուկ
ու ծիծաղելի են երևում բուրժուական գրչակների ճիգերն ու բանդագուշանք-
ները սոցիալիստական սիստեմի ճգնաժամի վերաբերյալ։

Տակավին չէին ավարտվել ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի
նիստերը, երբ կապիտալիստական երկրների ռեակցիոն բուրժուական շրջան-
ներում աղմուկ-աղաղակ բարձրացավ սովետական էկոնոմիկայի կարծեցյալ
անհաղթահարելի դժվարությունների շուրջ։ Ակներև է, որ այդ աղմկարարու-
թյունը մի նպատակ է հետապնդում՝ վարկաբեկել սովետական սոցիալիստա-
կան հասարակարգը և շեղել Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդների ուշադրու-
թյունը ՍՍՌՄ փորձն ուսումնասիրելուց։ Սակայն դրանք ապարդյուն ճիգեր
ու հիմնազուրկ հույսեր են, որոնք կործանման են դատապարտված կյանքի
կողմից։

Ամբողջ մարդկության աչքի առաջ հաղթանակած սոցիալիզմի երկիրը վըս-
տահորեն ստեղծում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, անկասելի
հաջողություններով առաջ մղելով երկրի էկոնոմիկան։ Սակայն այստեղից չի
բխում, որ մեր առաջընթացը կատարվում է հարթ ու ողորկ ուղիներով, որ մեր
հզոր վերելքի ճանապարհին չկան լուրջ արգելքներ ու դժվարություններ։

ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումն էլ քննարկեց այն կարևոր
հարցը, թե այսուհետև ինչպե՞ս վարել երկրի արդյունաբերությունը, որպեսզի
լիովին գործադրվեն սոցիալիստական սիստեմի բոլոր առավելությունները։
Գլխավորն ու էականն այն է, որ մեր պարտիայի կենտկոմի կոլեկտիվ ջան-
քերով մշակվեցին արդյունաբերության նորմալ զարգացման մեթոդներն ու
եղանակները, նրա կազմակերպման ու կառավարման հարցերը։ Հավատարիմ
լենինյան պատգամներին, պարտիան այժմ ավելի է խորամուխ լինում սոցիա-
լիստական հասարակարգի տնտեսական հարաբերությունների էության մեջ,
որպեսզի նրանց զարգացման օրինաչափություններն ավելի ռացիոնալ օգտա-
գործի հօգուտ ժողովրդի կենսամակարդակի բարձրացման։ Եվ այդ նպատա-
կով նա շարունակ կատարելագործում է կոմունիստական շինարարության ղե-
կավարման իր մեթոդները, նրա հիմքում դնելով գիտական բազա, վճռակա-
նորեն ձերբազերծվելով գործնական խնդիրների լուծման ժամանակ դրսևոր-
ված սուբյեկտիվիստական և վոլյունտարիստական մոտեցումից։

Պարտիայի գլխավոր նպատակն է՝ բարձրացնել արդյունաբերական ար-
տադրության տնտեսական արդյունավետությունը, արագացնել ազգային
եկամտի աճման տեմպերը և դրա հիման վրա ավելի վճռականորեն բարձրաց-
նել ժողովրդի բարօրությունը։

Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում որպես տնտեսական լուրջ խնդիր
պարտիան առաջ քաշեց արդյունաբերության աշխատանքի արմատական բա-
րելավման հարցը, քանի որ արդյունաբերությունը սոցիալիստական էկոնոմի-
կայի հիմքն է։ Նրա տեխնիկական մակարդակից, աճման տեմպերից և ար-
տադրանքի որակից է կախված ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի
առաջընթացը, մեր հայրենիքի պաշտպանական հզորության բարձրացումը։

Վերակառուցելով արդյունաբերությունը ճյուղային սկզբունքով, պարտիան



համոզված է, որ առավել մեծ հնարավորություններ կստեղծվեն նրա տեխնի-
կական մակարդակի բարձրացման, գիտության ու տեխնիկայի նորագույն
նվաճումների արմատավորման և աշխատանքի արտադրողականության բարձ-
րացման համար։ Հասկանալի է, որ կառավարման ճյուղային սկզբունքը միա-
ժամանակ պետք է զուգակցվի տերիտորիալ սկզբունքի հետ։

Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի նախատեսած տնտեսական կարևոր
ռեֆորմի էությունն ու հիմնական նպատակներից մեկն էլ պլանային ղեկա-
վարման սիստեմը և տնտեսավարության մեթոդները կոմունիստական շինա-
րարության նոր խնդիրներին համակերպելն է։

Նման լուրջ շրջադարձի համար պարտիական կազմակերպություններից
պահանջվում է, նախ՝ ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումնե-
րի խոր իմացություն և դրանք անշեղ կենսագործելու բազմակողմանի ունա-
կություն, որը մշտապես պետք է ուղեկցվի պարտիական կազմակերպական
ճկուն գործունեությամբ։ Այո՛, կյանքը մեզնից պահանջում է ստեղծագոր-
ծական ճիգերի լարում, մեր առջև ծառացած վիճխարի ու նոր հարցերի ճիշտ
ու արդյունավետ լուծում։

Սակայն արդյունաբերության ղեկավարման ճյուղային սկզբունքին անց-
նելը, ընդհանուր միութենական և միութենական-ռեսպուբլիկական, ինչպես
նաև ռեսպուբլիկական մինիստրությունների ստեղծումը բնավ չի նշանակում,
թե մեխանիկորեն վերադառնում ենք գործունեության մինչժողտնտխորհային
մեթոդներին ու եղանակներին։ Անհրաժեշտ է խելացիորեն օգտագործել այն
ամբողջ դրական փորձը, որ կուտակվել է թե՛ հին մինիստրությունների գոյու-
թյան և թե ժողտնտխորհների գործունեության ընթացքում։ Բայց հարկավոր
է նկատի ունենալ գլխավորը, որ մինիստրությունները պետք է դրսևորեն նոր
գործելակերպ, մշտապես հետևելով պլանավորման նոր սկզբունքի և արդյու-
նաբերական արտադրության տնտեսական խթանման ուժեղացման, տեղական
պարտիական, սովետական և տնտեսական օրգանների գործունեության հետ
կենտրոնացված ղեկավարման ճիշտ զուգակցմանը։

Հարկավոր է մոտակա ժամանակամիջոցում բարձրացնել ժողովրդական
տնտեսության պետական պլանավորման գիտական մակարդակը։ Ինչպես
միութենական, այնպես և մեր ռեսպուբլիկայի Պետպլանը պետք է դառնան ժո-
ղովրդական տնտեսության գիտական պլանավորման ղեկավար կենտրոններ։
Ահա թե ինչու Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը որոշեց ժողովրդական տըն-
տեսության բարձրագույն խորհուրդը վերացնել և Պետպլանն անմիջականորեն
ենթարկել կառավարությանը, այսինքն՝ ՍՍՌՄ Մինիստրների սովետին, իսկ
ռեսպուբլիկաների պետպլանները՝ միութենական ռեսպուբլիկաների Մինիստըր-
ների սովետներին։ Այստեղից անհրաժեշտություն ծագեց ռեսպուբլիկայի պետ-
պլանին առընթեր ստեղծել էկոնոմիկայի ինստիտուտ, որը կոչված է գիտա-
կանորեն ուսումնասիրելու ռեսպուբլիկայի արտադրողական ուժերը և այդ հի-
ման վրա ապահովելու արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարա-
րության և մեր ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետագա զարգաց-
ման ճիշտ և տնտեսապես արդյունավետ պլանավորումը։

Այժմ ավելի, քան երբեք, պլանավորող մարմինները պետք է մշակեն և
գիտականորեն հիմնավորեն ոչ միայն տնտեսության արդյունավետ պլաններ,
այլև սահմանեն տնտեսության տարբեր ճյուղերի մոտակա և հեռավոր զար-
գացման իրական պրոգնոզներ և այդ հիման վրա երկրի էկոնոմիկայի պլանա-

վորումը վարեն կոմպլեքսային մեթոդով: Դա նշանակում է, որ էկոնոմիկայի զարգացման տեմպերն ու համամասնությունները որոշելիս, պլանավորող մարմինները պետք է կարողանան լիովին ներդաշնակել տեխնիկայի առաջընթացի և ընդլայնված վերարտադրության կենսաբուխ պահանջները: Միայն այդպիսի պլանավորումը հնարավորություն կընձեռի մեկընդմիշտ վերացնելու այն էական անհամամասնությունները, որոնք դեռևս գոյություն ունեն կապիտալ շինարարության և նոր տեխնիկայի կիրառման բնագավառում: Գիտական օրենքների խոր իմացությամբ մշակված պլանները միայն կապահովեն մեր ազգային եկամտի տեմպերի առավել աճումը, հասարակական աշխատանքի արտադրողականության արագ բարձրացումը և գործադրվող ֆոնդերի շահութաբեր վերարտադրությունը:

Յուրաքանչյուր ձեռնարկության կենսունակության ու գործունեության չափանիշը սահմանելով նրա շահութաբերությունը և արտադրանքի իրացումը, պարտիայի ու կառավարության վերջին միջոցառումներն այն նպատակն են հետապնդում, որ առաջիկայում լիակատար լարվածությամբ օգտագործվեն երկրի արտադրողական ուժերի բոլոր կարողությունները, ամբողջ արդյունաբերության տեխնոլոգիան մշտապես վարվի տեխնիկական պրոգրեսից բխող պահանջների համեմատ և անընդհատ կատարելագործվեն աշխատանքի ձևերը տնտեսական բոլոր միավորներում:

Նման հանգուցային հարցերի արագ և հաջող լուծման նկատառումով, կենտկոմի սեպտեմբերյան պլենումը անհրաժեշտ գտավ ընդլայնել տեղական սովետական օրգանների, ձեռնարկությունների ղեկավարների իրավունքները, անհապաղ վերացնել նրանց տնտեսական գործունեության ավելորդ կանոնարկումը, կրճատել վերևից սահմանվող ցուցանիշների քանակը: Արդյունաբերության կառավարման վերոհիշյալ միջոցառումների անշեղ կիրառումը զուգակցելով տնտեսական լծակների հետ, մեր արդյունաբերությունը նոր ծաղկում կապրի:

Չպետք է մոռանալ, որ շահույթի բաշխման նոր ձևը զգալիորեն բարձրացնում է ձեռնարկությունների կոլեկտիվների ու առանձին աշխատողների նյութական շահագրգռվածությունը: Արդյունաբերական ձեռնարկությունների նախկին ֆոնդի փոխարեն այժմ ստեղծվում են երեք ֆոնդ՝ նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու բնակարանային շինարարության և արտադրության զարգացման ֆոնդ: Նյութական խրախուսման ֆոնդը օգտագործվում է բանվորներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին սահմանված սիստեմներով պարգևատրելու համար: Բացի դրանից, այդ ֆոնդն օգտագործվում է արտադրական կարևոր առաջադրանքներ կատարելու համար աչքի ընկած աշխատողներին միանվագ խրախուսելու, ինչպես նաև տարվա աշխատանքի ընդհանուր արդյունքների համար ձեռնարկությունների աշխատողներին պարգևատրելու համար: Դրա հետ մեկտեղ, այդ նույն ֆոնդից ձեռնարկությունների աշխատողներին տրվելու է միանվագ օգնություն:

Նախատեսված է, որ, արտադրության շահութաբերության աճի համեմատ, կմեծանա աշխատողների նյութական խրախուսման համար ձեռնարկություններին հատկացվող շահութաչափը:

Ձեռնարկությունների մնացած երկու ֆոնդերի օգտագործման նպատակը նույնպես պարզ է: Որքան մեծ լինեն այդ ֆոնդերը, այնքան ձեռնարկությունը



շատ կկառուցի բնակելի ու կուլտուր-կենցաղային օբյեկտներ և դրանով իսկ կնպաստի արտադրողների կենսամակարդակի և աշխատուժի վերարտադրության բարձրացմանը: Այդ ֆոնդերի չափերը ամբողջովին կախված են տվյալ արդյունաբերական կոլեկտիվի գործունեության արդյունավետությունից: Ապահովվում է ինչպես ձեռնարկության կոլեկտիվի, այնպես էլ յուրաքանչյուր աշխատողի միանգամայն որոշակի և անմիջական շահագրգռվածությունը իրենց աշխատանքի ցուցանիշները բարելավելու համար: Այսպիսով, նոր պայմաններում այս կամ այն ձեռնարկության կոլեկտիվի բարեկեցությունը հիմնականում կախված կլինի ձեռք բերած տնտեսական արդյունքներից:

Սահմանված խրախուսանքի ֆոնդերն այն լծակներն են, որոնց բանիմաց գործադրմամբ հնարավոր կլինի անընդհատ աճեցնել ո՛չ միայն անհատական պարգևների գումարները, այլև ընդլայնված մասշտաբներով ապահովել սոցիալիստական կուտակման տեմպերը և արտադրության կատարելագործման պրոգրեսիվ միջոցառումները:

Ձեռնարկությունների իրավունքների ընդլայնումը կոչված է ապահովելու մեր արդյունաբերության տեխնիկական պրոգրեսը, որի գլխավոր նախապայմանը՝ արտադրության մասնագիտացումն ու արտադրաձեռնարկությունների ռացիոնալ կոոպերացումն է: Այստեղ մեր անելիքները շատ են: Սակայն տվյալ դեպքում անհրաժեշտ ենք համարում նշել, որ տնտեսությունների ինքնուրույնության ապահովումը նպատակ ունի բարձրացնել նրանց ձեռներեցությունն ու պատասխանատվությունը: Սա նշանակում է, որ սոցիալիստական ձեռնարկությունների համերաշխ գործակցության շրջանակներն անհամեմատ ընդլայնվում են: Այստեղից էլ բխում է սոցիալիստական ձեռնարկությունների ղեկավարների փոխադարձ պատասխանատվության անհրաժեշտությունը, պատասխանատվություն, որը կենսականորեն պարտադիր է ձեռնարկությունների համար: Առանց այս գործոնի ճիշտ կիրառման, ձախողման է դատապարտվում մասնագիտացումը, որը չի կարող իրականանալ, եթե խախտում են կոոպերացման կանոններն ու պայմանագրերը:

Ի՞նչ է հետևում այս ամենից: Այն, որ ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը, բացառելով սուբյեկտիվիզմն ու վոլյունտարիզմը պարտիական-պետական ոլորտից, նոր և օբյեկտիվ պայմաններ է ապահովում իրոք ընդունակ, տաղանդավոր և ձեռներեց միլիոնավոր աշխատավորների համար՝ լիովին դրսևորելու իրենց պոտենցիալ կարողությունները հանուն մեր հայրենիքի արագ բարգավաճման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման: Գործունակ, նորարար և ստեղծագործ աշխատողների ամբողջ ավյունը պետք է ներդրվի տնտեսության տարբեր ասպարեզներում, առավելապես կռթնած մարքսիստական տնտեսագիտության օրենքների խոր իմացության, գիտականորեն հիմնավորված արդյունավետ պլանների վրա:

Սուբյեկտի վառ երևակայությունը և ցանկությունները կվնասեն գործին, երբ տնտեսական այս կամ այն ձեռնարկումը չի ելնում հաշվարկումից, օգտավետությունից և եզրափակիչ հաշվեկշռից: Տնտեսավարման արվեստի հայելին տվյալ ձեռնարկության հաշվեմատյանում գրանցված ճշմարիտ հաշվեկշիռն է, որը խարսխված պետք է լինի շահութաբերության և արտադրանքի հաջող իրացման վրա: Սուբյեկտիվ ցանկությունները չեն արտացոլվում հաշվեմատյանում, իսկ եթե արտացոլվում են, ապա դա կոչվում է կեղծ հաշվեկշիռ:

Եթե ձեռնարկությունը խրախուսվում է անկախ էներգիայի, հումքի, աշ-

խատումի և այլ օժանդակ նյութերի խնայման գործոնի, առանց ինքնարժեքի իջեցման շոշափելի արդյունքի, ապա այս դեպքում տնտեսավարի ինքնուրույնությունը հենց սուբյեկտիվիզմի շրջված ձևն է, որը մեզ համար վնասակար է։ Եթե տնտեսության մեջ կոպեկները չեն խնայվում, նրա հաշվեկշռում խախտված են սոցիալիստական տնտեսավարման տարրական կանոնները, գործը հաջող ընթանալ չի կարող։ Ահա թե հետայսու ինչպես պետք է մոտենանք ձեռնարկության գործունեության գնահատմանը։

Արդյունաբերության սիստեմի ու կառավարման այն խոշոր ռեֆորմը, որը կատարվում է մեր երկրում ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումների համաձայն, ավելի հրամայական է դարձնում կադրերին տնտեսագիտությամբ զինելու կենսական պահանջը։

Հայտնի է, որ պարտիական ղեկավար օրգանի կողմից տնտեսավարման ասպարեզում կիրառվող մանր խնամակալության դեպքում պարարտ հող էր ստեղծվում ապաշնորհ տնտեսավարի դիրքերի ամրության համար։ Հաճախ դժվար էր լինում վատ, անճարակ աշխատողին զանազանել լավից։ Իսկ այժմ, երբ պարտիան կտրականապես դատապարտում է ու մերժում մանր խնամակալության արատավոր ոճը, բարենպաստ պայմաններ են ստեղծվում կարող և շնորհալի կադրերի համար՝ իրենց ձիրքն անարգել կիրառելու հօգուտ տընտեսական պլանների հաջող կատարման և գերակատարման։ Այժմ արդեն շատ դժվար կլինի տնտեսության շահութաբերության հարցի դրական լուծումը՝ լոկ վարչական կարգադրություններով։

Առանց խոր և բազմակողմանի գիտելիքների առհասարակ և տնտեսագիտության իմացության հատկապես՝ այժմ անհնարին է փոքր թե մեծ ձեռնարկության վարումը։ Ըստ որում, զարգացման ներկա էտապում արդեն հնարավոր չէ տնտեսությունը վարել միայն քաղաքատնտեսության ընդհանուր օրենքների իմացությամբ։ Սովետական արդյունաբերական ձեռնարկության ղեկավարից կյանքը պահանջում է հստակ և կոնկրետ գիտելիքներ ունենալ ժողովրդական տնտեսության պլանավորման հիմնական սկզբունքների, պլանավորման և հաշվարկման բնագավառում կիրառվող մաթեմատիկական մեթոդների, տնտեսական ինֆորմացիայի մեքենայական և ավտոմատացված մշակման, արտադրության նորագույն կազմակերպման, սոցիալիստական ձեռնարկության իրավական հարաբերությունների, տվյալ ճյուղի տնտեսական ու տեխնիկական արդի նվաճումների, իր ղեկավարած ձեռնարկության պլանավորման, ֆինանսավորման, տնտեսական գործունեության բալանսավորման և վերջապես արտադրության կառավարման գործում վիճակագրության կարևորագույն դերի մասին։

Հետևաբար, այժմ սոցիալիստական ձեռնարկության ղեկավարի մտահորիզոնի ընդլայնման հարցը մեզ համար հրամայական պահանջ է։ Ահա թե ինչու Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը պարտավորեցրեց պատշաճ բարձրության վրա դնել կադրերի տնտեսագիտական կրթության և տնտեսագետների պատրաստման ուսումնական գործը։

Տնտեսության ղեկավարման վարչարարական մեթոդներից հրաժարումը նոր, բարձր խնդիրներ է դնում արդյունաբերության բոլոր աշխատողների և, ամենից շատ, նրա ղեկավար կադրերի առջև։ Միանգամայն պարզ է, որ նոր պայմաններում, երբ ընդլայնվում են ձեռնարկությունների իրավունքները, նրանց տրվում է ավելի մեծ ինքնուրույնություն, կադրերից պահանջվում է



նաև ավելի մեծ ձեռներեցություն՝ տնտեսական լծակներից ինքնուրույնաբար և խելացիորեն օգտվելու, անհրաժեշտ հաշվարկների հիման վրա ամենօրյա գործնական հարցերը լուծելու հմտություն։ Մենք պետք է մեր կադրերին դաստիարակենք խնայողության, հաշվենկատության ոգով, նրանց զինենք հիմնական ֆոնդերի և կապիտալ ներդրումների օգտագործման հարցի առավել արդյունավետ լուծում գտնելու հմտությամբ։ Խոսքը վերաբերում է կադրերի գիտելիքների ընդլայնմանը, հանձնարարված գործի համար նրանց պատասխանատվության բարձրացմանը։

Ինչպե՞ս լուծել այդ խնդիրները։

Գաղտնիք չէ, որ մեզ մոտ, մինչև վերջին ժամանակներս մի շարք «տնտեսավարներ» գործը վարում էին ոչ տնտեսարարական սկզբունքով, այլ հենված իրավունքի վրա՝ կարգադրություններով։ Նույնիսկ մեր փորձված շատ ինժեներներ ու տեխնիկներ հույժ անբավարար չափով են խորամուխ լինում տնտեսական հարցերի մեջ, մտահոգ ձեռքներին չեն հաշվում, թե տնտեսական ի՛նչ արդյունք կստացվի այս կամ այն միջոցառման իրագործումից։ Իսկ այժմ մենք պետք է մեր տնտեսական ու տեխնիկական կադրերին ներարկենք արտադրության էկոնոմիկայով զբաղվելու ճաշակ։ Հարկավոր է հասնել այն բանին, որ ձեռնարկություններում տնտեսական հարցերով զբաղվեն այնպես, ինչպես զբաղվում են նոր տեխնիկայի, տեխնոլոգիայի արմատավորմամբ, այսինքն՝ արտադրության ղեկավարման մեջ էկոնոմիկայի, տնտեսական արդյունավետության հարցերը պետք է դարձնել գլխավորը և դրանց ենթարկել մնացած մյուս միջոցառումները։ Մեր խնդիրն է՝ հասնել այն բանին, որ մեր կադրերը պրակտիկայում հմտորեն կիրառեն արտադրության պլանավորման և տնտեսական խթանման նոր մեթոդները, ինչպես դա նախատեսված է ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումներում։

Այժմ անհրաժեշտ է լայնորեն կազմակերպել արդյունաբերության ղեկավար կադրերի տնտեսագիտական ուսուցումը։ Հարկավոր է մշակել տնտեսագիտական ուսուցման ընդհանուր ծրագիր, այն համարեցնելով տվյալ ճյուղի կամ ձեռնարկության կոնկրետ պայմաններին և խնդիրներին։ Այժմ մենք չենք կարող բավարարվել միայն պարտիական լուսավորության ցանցում էկոնոմիկայի հարցերի ուսումնասիրմամբ։ Այդ ուղղությամբ հարկավոր է բարելավել ուսուցումը, բայց դրա հետ մեկտեղ մեր պարտիական, սովետական և տնտեսական օրգանները պետք է կազմակերպեն կադրերի կոնկրետ էկոնոմիկայի գիտելիքների բարձրացման մի շարք դասընթացներ, սեմինարներ և այլն։ Այդ նպատակով մենք պետք է օգտագործենք ռեսպուբլիկայի լավագույն տնտեսագետներին, փորձված ու որակյալ տնտեսավարներին, որպեսզի նրանք կարողանան բարձր մակարդակով, նպատակասլաց ու կոնկրետ կերպով սովորեցնել մեր կադրերին։

Դրա հետ մեկտեղ, ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը խնդիր դրեց՝ արմատապես բարելավել բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող կադրերի պատրաստումը։ Կենսականորեն անհրաժեշտ է, որպեսզի մեր տեխնիկումները և բուհերը արդյունաբերության բոլոր ճյուղերն ապահովեն բարձրորակ տնտեսագետներով, որոնք կարողանան վճռական դեր խաղալ ձեռնարկությունների առաջընթացում։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման տվյալ էտապում անհրաժեշտ է ամենայն լրջությամբ և կոնկրետ քննարկել ու լուծել մեր ռես-

պուբլիկայում տնտեսագիտական կրթության բարելավման հարցերը. կյանքը
թելադրում է մեզ, որպեսզի այդ ուսուցումն այնպես կազմակերպվի, որ մեր
բուհերը տան իրենց մասնագիտության բնագավառում խոր գիտելիքներ ձեռք
բերած և, միաժամանակ տնտեսագիտական լայն մտահորիզոն ունեցող երի-
տասարդ մասնագետներ։ Անվիճելի է, որ նոր պայմաններում տնտեսագիտա-
կան հարցերը, արտադրությունը չհասկացող, տեխնիկական և այլ միջոցառում-
ների իրագործման տնտեսական արդյունավետությունը հաշվել չկարողացող
ինժեները և տեխնիկը չեն կարող լիարժեք մասնագետ համարվել։
Այժմ սոցիալիստական ձեռնարկությունների ղեկավարներից պահանջվում
է հմտորեն զուգակցել տեխնիկական և տնտեսավարման հարցերը։ Երբ նո-
րագույն տեխնիկան տվյալ արտադրաճյուղում դանդաղ է ներդրվում, ապա
դրա պատճառը տեխնիկայի առավելությունների թերագնահատումը չէ միայն,
այլև այն, որ տնտեսության անարդյունավետ վարման հետևանքով տվյալ ձեռ-
նարկությունը չի կուտակել այնքան արժեքներ, որոնք անհրաժեշտ են ար-
տադրամիջոցներն ու արտադրության տեխնոլոգիան արմատապես նորոգելու
համար։ Էկոնոմիկայի ու տեխնիկայի արագ զարգացման շահերի սերտաճման
պայմաններում, տնտեսավարների նեղ, միակողմանի գիտելիքները չեն կարող
մեր առաջխաղացման դրական ազդակ հանդիսանալ։ Ահա թե ինչու տնտեսա-
վարական կադրերի ուսուցման հիմքում պետք է դրվի տնտեսագիտության և
տեխնիկագիտության սերտ զուգակցման սկզբունքը։
Չկա լավ տնտեսավար առանց տեխնիկական լուրջ գիտելիքների, չկա
լավ տեխնիկական ղեկավար, առանց ձեռնարկության էկոնոմիկայի կառա-
վարման խոր իմացության։ Այսպես, միայն այսպես է հիմա դրվում հարցը։
Երկրի զարգացման ներկա շրջանում հիմնովին փոխվում է տնտեսավարի հա-
սարակական կերպարը, նա հանդես է գալու որպես տնտեսական և տեխնիկա-
կան գիտությունների լավագույն գիտակ, որի հետ հաշվի պետք է նստեն պար-
տիական ու պետական ղեկավար օրգանները, քանի որ նա իրեն հանձնարար-
ված գործի լավագույն վարողն ու հասկացողն է։
Սակայն սրանով հարցը չի սպառվում։ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան
պլենումն իր հասակով մեկ մեր առջև դրեց մասսաների տնտեսագիտական
կրթության խնդիրը։ Սոցիալիստական տնտեսավարման դեմոկրատական բնույ-
թը պահանջում է տնտեսական շինարարության խնդիրների լուծմանը մասնա-
կից անել աշխատավորական լայն զանգվածներին։ Իսկ այդ մասնակցությունը
մեծագույն արդյունքներ կտա, երբ նրանք օժտված լինեն լուրջ գիտելիքներով։
Այստեղ արդեն հսկայական անելիքներ ունեն ռեսպուբլիկայի հրատարակչու-
թյունները, մամուլի օրգանները, ռադիոն և հեռուստատեսությունը։
Ցավոք սրտի պետք է ասել, որ տնտեսագիտական մեր բանավոր ու գրա-
վոր պրոպագանդան տակավին բավականին գորշ է։ Այդ նպատակով հրապա-
րակված գրքերի ու բրոշյուրների զգալի մասը չի հրապուրում և, որ կարևորն
է, չի համոզում ընթերցողին։ Օգտակար և ճիշտ մտքերն ընկղմված են ընդհա-
նուր ֆրազների հորձանուտում։ Տնտեսության ու տեխնիկայի առաջավոր փոր-
ձի պրոպագանդայով պետք է զբաղվեն ռեսպուբլիկայի շնորհալի գիտնական-
ները, ժուռնալիստները ու տնտեսավարները։ Որևէ խոտան այս բնագավառում
կվանի ընթերցող և ունկնդրող մասսաներին և հոնքը շինելու փոխարեն՝ աչքը
կհանի։
Ինչպես մամուլի, այնպես և ռեսպուբլիկայի ռադիո-կոմիտեն առաջիկա-



յում պետք է արմատական բեկում մտցնեն տնտեսական գիտելիքների ու առա-
ջավոր փորձի պրոպագանդման գործում։ Ինչո՞ւ «Հայաստան» հրատարակչու-
թյունը ընթերցողներին չի մատուցում ՍՍՌ Միության լավագույն ձեռնար-
կությունների կուտակած առաջավոր փորձը։ Չէ՛ որ նման օգտավետ քայլ
կատարելու համար մեզ նյութական միջոցները չէ որ պակասում են, այլ
բանիմացությունն ու ձեռներեցությունը։ Մի՞թե հնարավոր չէ յուրաքանչյուր
տարի մի մատչելի մատենաշարով ծանոթացնել մեզ եղբայրական ժողովուրդ-
ների առաջավոր ձեռնարկությունների, իսկ նրանց՝ Հայաստանի աշխատա-
վորների փորձի հետ։ Հնարավոր է և խիստ անհրաժեշտ նման մտահղացման
իրագործումը։ Պետք է հուսալ, որ մամուլի կոմիտեն և մյուս օրգանները առա-
ջիկայում նոր բարձրության վրա կդնեն տնտեսագիտության պրոպագան-
դայի գործը։
Ինքնին հասկանալի է, որ ձեռնարկությունների ինքնուրույնության ընդ-
լայնմամբ և կոլեկտիվների ու անհատների շահագրգռվածության բարձրաց-
մամբ անհամեմատորեն մեծանում են պարտիական օրգանների ու սկզբնա-
կան կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը։ Պարտիայի
կողմից առաջադրված նոր, բարդ խնդիրները, հատկապես, պահանջում են բո-
լոր օղակներում բարձրացնել պարտիական ու պետական կարգապահությունը։
Նոր խնդիրների լուծման հաջողությունը կախված կլինի այն բանից, թե մենք
որքանով ճիշտ կընտրենք կադրերը, ինչպիսի՞ մակարդակի վրա կգտնվի կար-
գապահությունը։ Ահա թե ինչու կազմակերպական-քաղաքական աշխատանքում
այժմ պարտիական կազմակերպությունների գլխավոր խնդիրներից է՝ վճռա-
կանորեն ամրապնդել կարգապահությունը և կադրերին դաստիարակել հանձ-
նարարված գործի համար բարձր պատասխանատվության ոգով։
ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումները հնարավորություն
են ստեղծում արդյունաբերության ավելի հաջող զարգացման, նրա քանակա-
կան, որակական ցուցանիշների բարելավման համար և այդպիսով բացում նոր
հեռանկարներ։ Ամեն ինչ կախված կլինի մեզնից, այն բանից, թե մենք ինչ-
պիսի՞ հմտությամբ ու հաստատակամությամբ կկենսագործենք այդ որոշում-
ները։
Կասկածից վեր է, որ տնտեսական շինարարության մեր թվարկած նոր
խնդիրների լուծումը մի շարք էական պահանջներ է ներկայացնում պարտիա-
կան կազմակերպություններին ու օրգաններին՝ ղեկավարության մակարդակը
բարձրացնելու առումով։ Իսկ ի՞նչ է նշանակում պարտիական գործունեու-
թյան բարձր մակարդակ։
Դա նախ և առաջ պայմանավորված է պարտիական գործիչների գաղա-
փարական-քաղաքական և կոնկրետ գիտելիքների հարուստ պաշարով։ Պար-
տիական աշխատողները, որոնք կոչված են գլխավորելու ձեռնարկությունների
կոլեկտիվների նորմալ գործունեությունը, չեն կարող գործը հաջողությամբ
առաջ մղել, եթե իրենց մտահորիզոնով ու գիտելիքներով բարձր չեն կանգնած
միջին մակարդակի տնտեսավարներից։ Երբ պարտիական գործչի գիտելիքներն
աղքատիկ են, նա կընթանա իր ղեկավարության ոլորտում գտնվող առավել
շատ գիտելիք ու հեղինակություն ունեցող տնտեսավարի խորհուրդներով։ Այլ
կերպ ասած, նա ոչ թե ղեկավարում, այլ ղեկավարվում է, որը փաստորեն
պարտիական ղեկավար օրգանին զրկում է իր քաղաքական-հասարակական
լուրջ ֆունկցիաներից։

Այստեղից հետևում է, որ պարտիական ղեկավար կադրերը պետք է դա-
սավորել և ընտրել միայն նրանց գաղափարական, ինտելեկտուալ և գործարա-
րական կարողությունից ելնելով։ Այլ նկատառում կադրերի տեղադրման
բնագավառում, ի վերջո, կհանգեցնի բացասական արդյունքների. իսկ եթե
հարցը վերաբերում է տնտեսության ղեկավարմանը՝ լուրջ վնասների։ Այժմ
արդեն չի կարելի այս կամ այն պարտիականին գործի դնելիս գերադանցապես
առաջնորդվել նրա անցյալի ծառայություններով։ Այդ ծառայություններն ունե-
ցող ընկերոջը պետք է կարգել ղեկավար աշխատանքի, եթե նրա ծառայու-
թյունները զուգակցված են նորագույն գիտության ու տեխնիկայի, հումանի-
տար և ճշգրիտ գիտությունների հիմնական նվաճումների խոր իմացությամբ։
Բայց սա ամենը չէ։ Տվյալ դեպքում մենք պետք է առաջնորդվենք լենին-
յան ցուցումներով, ըստ որոնց, պատասխանատու գործիչը ո՛չ միայն օժտված
պիտի լինի խոր գիտելիքներով և կազմակերպական կարողություններով, այլև
ունենա հեղինակություն վայելելու ակնհերև ունակություն։ Այստեղ արդեն հար-
ցը բարդանում է, որովհետև հաճախ գիտելիքներ ունեցող ընկերների շրջա-
նում լինում են և հեղինակազուրկ մարդիկ։ Ինչպես ցույց է տալիս կյանքը,
հեղինակության գլխավոր նախապայմանը տվյալ ընկերոջ խելքն ու գործու-
նեությունն են՝ շաղկապված կիրթ վարվեցողության, տակտի, բարոյական կեր-
պարի հետ։

Մեծ խելք պետք չէ հասկանալու, որ նոր, սոցիալիստական հասարակու-
թյան մարդկանց ղեկավարման համար, այսօր անբավարար են հին գիտելիք-
ները և առանձնապես վնասակար՝ հին գործելաոճը։ Վարչարարությունը, մանր
խնամակալությունը, մի կերպ յոլա գնալը մեր աշխատավորության հակա-
կրանքն են հարուցում։ Գործունեության նոր, կենդանի ոճը պետք է տոգոր-
ված լինի նորի, այսօրվա կյանքի պահանջների ռիթմի խոր ընկալմամբ։
Առանց նորի, առաջավորի ըմբռնման, ղեկավար գործիչը հեղինակազրկվում
է, նրան մնում է մի կերպ գլուխ հանել և ոչ թե ընթանալ առջևից։ Եվ
այժմ, երբ տնտեսավարներն ու արդյունաբերական ձեռնարկությունները
ինքնուրույն գործելու լայն հնարավորություններ են ստանում, դա բարդաց-
նում է պարտիական կազմակերպությունների ու օրգանների ղեկավար գոր-
ծունեությունը։

Պարտիական գործունեության բարձր մակարդակը միաժամանակ են-
թադրում է, որ կադրերը տեղադրելիս պետք է խստորեն պահպանվեն երկու
սկզբունքներ. ա) գործի գլուխ կանգնող ընկերն օժտված պետք է լինի տվյալ
բնագավառում հետագայում առաջ գնալու սուբյեկտիվ տվյալներով (գիտելիք-
ներ, գործունակություն, հեղինակություն). բ) իր ունակություններով և գոր-
ծելաոճով նա կոչված է լրացնելու այդ կոլեկտիվում աշխատող ընկերների
պակասությունները, որից ընդհանուր գործը մեծապես կշահի։

Այստեղից բխում է մարդկանց, գործիչներին լավ ճանաչելու արվեստը,
առանց որի հնարավոր չէ նրանց նպատակահարմար օգտագործումը։ Որքան
զարգանա մեր երկիրը, այնքան բարդ ու պատասխանատու կլինի կադրերի
ընտրության և տեղադրման հարցը։ Դա կարելի է ապացուցել թեկուզ մեր ռես-
պուբլիկայի փորձով։ Ամեն տարի մեզ մոտ գործարկվում են արդյունաբերա-
կան նոր ձեռնարկություններ, որոնք պետք է կոմպլեկտավորվեն որակյալ աշ-
խատողներով։ Առայժմ ուսումնական հաստատությունները չեն բավարարում
մեր ամբողջ պահանջն այդ ասպարեզում։



Վերջին տարիներում Հայաստանում ստեղծվեցին արդյունաբերության
միանգամայն նոր ճյուղեր, ինչպիսիք են՝ ռադիոէլեկտրոնային և էլեկտրոնա-
յին, սարքաշինական, գործիքաշինական ճյուղերը, էլեկտրոնային-մաթեմա-
տիկական հաշվիչ մեքենաների արտադրությունը և այլն։ Մենք այժմ ունենք
բազմաճյուղ և տեխնիկապես զարգացած արդյունաբերություն։ Վերջին տարի-
ներս յուրացվեց մի շարք բարդ մեքենաների, կարգավորող և կառավարող սար-
քերի արտադրությունը։

1966 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերությունը պետք է յուրացնի
130 նոր կարևորագույն առարկաների՝ ծրագրային կառավարում ունեցող
էլեկտրակայծային հաստոցների, բազմահարկ շենքերի ժամանակակից մար-
դատար վերելակների, էլեկտրոնային-մեխանիկական ժամացույցների և ար-
տադրանքի այլ տեսակների արտադրությունը։

Արդեն վերջնականապես լուծված է Երևանում ավտոմոբիլի գործարան
ստեղծելու հարցը։ 1966 թվականին այդ գործարանի երիտասարդ կոլեկտիվը
պետք է յուրացնի ավտոսայլակի արտադրությունը և տա իր առաջին արտա-
դրանքը։ Երևանի ավտոմոբիլի գործարանի առաջին հերթի նախագծային կա-
րողությամբ նախատեսված է տարեկան թողարկել հազարավոր ավտոմեքենա։

Այս և բազմաթիվ այլ ձեռնարկությունները պարտիական կազմակերպու-
թյուններից պահանջում են բանիմաց և մեծ թվով պատասխանատու աշխա-
տողներով ապահովել իրենց նորմալ գործունեությունը։

Իսկ որտեղի՞ց վերցնենք մեծ թիվ կազմող կադրերը։ Ո՛չ միայն ուսում-
նական հաստատություններից, այլև արդյունաբերությանն սպասարկող
կրտսեր և ավագ կադրերի շարքերից։ Դրա համար էլ այսօրվա աշխատող
արդյունաբերական կադրերի վերապատրաստումը դառնում է մեր առաջնա-
հերթ խնդիրը։ Պարտիական ղեկավար օրգանների պարտականությունն է՝
պատշաճ բարձրության վրա դնել արդյունաբերության հրամանատարական
կադրերին տնտեսագիտությամբ զինելու գործը, դարձնել այն տևական ու սիս-
տեմատիկ։ Երևանի պարտիական կազմակերպության՝ այս ասպարեզում ձեռք
բերած ուշագրավ փորձը պետք է արմատավորել Ալավերդում, Ղափանում, Ար-
թիկում, Հրազդանում և այլուր։

ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը պարտավորեցնում է բոլոր
պարտիական օրգաններին ու կազմակերպություններին՝ չփոխարինելով տըն-
տեսավարներին, օգնել նրանց գիտական սկզբունքներով կազմակերպելու ար-
տադրության բոլոր պրոցեսները. հենված մասսաների ակտիվության վրա, բա-
ցահայտել ու գործադրել տնտեսության հարուստ ռեզերվները, հետևողական
պայքար ծավալել խնայողության ռեժիմի արմատավորման համար։

Սակայն այս կարևոր խնդիրների լուծումը պարտիական կազմակերպու-
թյուններից պահանջում է ապահովել կոմունիստների առաջավոր դերն ինչպես
արտադրության մեջ, այնպես և հասարակական կյանքում։ Կենտկոմի սեպ-
տեմբերյան պլենումի որոշումները թղթի վրա կմնան, եթե արդյունաբերա-
կան ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները չհասնեն
նրան, որ չխախտվի աշխատանքային կարգապահությունը։ Յուրաքանչյուր
ժամն ու րոպեն պետք է տրամադրվեն բարիքների արտադրությանը։ Մինչդեռ
մի շարք գործարաններում և ֆաբրիկաներում հազարավոր ժամեր անցնում են
ապարդյուն, որովհետև հասարակական կազմակերպություններն ու մարմին-
ները դեռևս տուրք են տալիս անօգուտ նիստարարությանը։ Հսկել, որպեսզի

արտադրության մեջ ամեն մի աշխատող պատշաճ լարվածությամբ անցկացնի
իր աշխատօրը, որպեսզի տրանսպորտի կամ այլ պատճառով որևէ պարապուրդ
չլինի՝ սա պարտիական կազմակերպության հոգսերի հոգսն է: Անհրաժեշտ է
այդ նպատակով ամենօրյա աջակցություն ցույց տալ տնտեսավարներին, չխու-
դել նրանց նախաձեռնության թևերը:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման և կարգապահության
ամրապնդման խնդիրների հաջող լուծումը բազմաթիվ թելերով լծորդվում է
աշխատավորների կյանքի պայմանների բարելավման հետ: Մանկամսուրի ու
մանկապարտեզի, պոլիկլինիկայի ու ճաշարանի, բնակարանի ու մանուկների
կրթության հարցերը հուզում են աշխատավորներին, ազդում նրանց արտադրա-
կան գործունեության վրա: Ուստի, պարտիական կազմակերպությունն իր ուժե-
րի առավելագույն լարումով և ամենօրյա հոգատարությամբ պարտավոր է օգ-
նել տնտեսավարներին և մյուս աշխատողներին՝ օրինական լուծում տալու այդ
հարցերին: Որքան արագ և ճիշտ լուծվեն այդ «մանր-մունր» հարցերը, այն-
քան արդյունավետ կլինի ամենավճռական արտադրաուժի՝ բանվորի աշխա-
տանքը: Չպետք է մոռանալ, որ այն, ինչ այս կամ այն չափով շոշափում է
արտադրող մասսաների կյանքի հոգսերի զարկերակը, էականորեն ներգործում
է աշխատանքի արտադրողականության վրա:

Եվ, վերջապես, մեր առջև ծառացած մեծ խնդիրների լուծման հաջողու-
թյունն անմիջականորեն կախված է աշխատավոր զանգվածների աշխատանքա-
յին էնտուզիազմից, սոցիալիստական մրցությանը նրանց ունեցած մասնակ-
ցությունից: Հանդիսանալով կոմունիզմի կառուցման սոցիալիստական լավա-
գույն մեթոդներից մեկը, աշխատանքային մրցումը կարող է հրաշքներ գործել,
եթե պարտիական կազմակերպությունները ինչպես հարկն է գլխավորեն մաս-
սաների աշխատասիրական ու հայրենասիրական ձգտումները: Պարտիական
կազմակերպությունների անելիքն այս դեպքում անսպառ է, որովհետև մեր
աշխատավորական կոլեկտիվները զարգանում են և աճում: Մի հանգամանք,
որը պահանջում է կոմերիտական և պրոֆմիութենական կազմակերպություն-
ներից՝ առանձնահատուկ ուշադրություն դարձնել երիտասարդ բանվորների
հասարակական ու աշխատանքային դաստիարակության վրա:

ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումից հետո, ռեսպուբլիկայում
արդեն ավարտվել է նոր կազմակերպված արդյունաբերական մինիստրություն-
ների և գերատեսչությունների գործող ապարատի կոմպլեկտավորումը: Դրա
հետ միաժամանակ նշանակալի չափով նորոգվել է ձեռնարկությունների ղե-
կավար ու մասնագիտական կադրերի կազմը: ՀԿՊ Կենտկոմը և ռեսպուբ-
լիկայի Մինիստրների սովետը մշակել ու հաջողությամբ կիրառում են մի ամ-
բողջ շարք միջոցառումներ, արդյունաբերական բոլոր ձեռնարկությունների ու
նրանց ղեկավար օրգանների արդյունավետ գործունեության ապահովման,
կադրերի տնտեսագիտական կրթության բարելավման ու ծավալման, տնտեսա-
գիտության պրոպագանդման գործը բարձր աստիճանի վրա դնելու համար:

Ինչպես միշտ, այս անգամ ևս Հայաստանի պարտիական կազմակերպու-
թյուններն անշեղորեն կենսագործելով պարտիայի գլխավոր շտաբի՝ ՍՄԿՊ
Կենտկոմի պլենումի որոշումները, գլխավորելով ռեսպուբլիկայի աշխատա-
վորների ստեղծագործական ձեռներեցությունը, նորանոր հաջողություններով
կդիմավորեն Հայաստանի կոմունիստական պարտիայի և ՍՄԿՊ առաջիկա
համագումարները:

Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ ԵՎ ՆՈՐ ԶԱՐԳԱՑՈՂ ԵՐԿՐՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ԱՊԱՀՈՎՈՒՄԸ

Դեռ առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին Վ. Ի. Լենինը
նշում էր, որ հանձին քաղաքակրթված երկրների պրոլետարիատի, Ասիայի ու
Աֆրիկայի ճնշված ժողովուրդներն ունեն վստահելի դաշնակից: «...ամբողջ
երիտասարդ Ասիան,— գրում էր նա,— այսինքն՝ Ասիայի հարյուր միլիոնա-
վոր աշխատավորները հանձին բոլոր քաղաքակիրթ երկրների պրոլետարիատի
ունեն հուսալի մի դաշնակից: Աշխարհում ոչ մի ուժ չի կարողանա կասեցնել
նրա հաղթությունը, որը կազատագրի թե՛ Եվրոպայի ժողովուրդներին, թե՛
Ասիայի ժողովուրդներին» (Երկեր, հ. 19, էջ 102):

Լենինյան այս կանխատեսությունն իրականություն դարձավ: 1917 թվա-
կանի հոկտեմբերին Ռուսաստանի պրոլետարիատի հաղթանակը բացեց ճնշված
ժողովուրդների ազատագրման դարագլուխը: Երկրորդ համաշխարհային պա-
տերազմից հետո եվրոպական ու ասիական մի շարք երկրներում պրոլետա-
րիատի հաղթանակի շնորհիվ սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկրի շրջանակնե-
րից և վերածվեց համաշխարհային սոցիալիստական սիստեմի: Համաշխարհա-
յին պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժման և նրա ծնունդ՝ համաշխարհային
սոցիալիստական սիստեմի ազդեցությամբ ծավալված ազգային-ազատագրա-
կան շարժումների հարվածների տակ փլվեց գաղութային սիստեմը:

Չնայած այդ ամենին ազգային-ազատագրական շարժումները ոչ միայն
չեն ավարտվել, այլև թևակոխել են զարգացման երկրորդ ու ավելի վճռական
էտապը, որի գլխավոր խնդիրն է ապահովել տնտեսական անկախությունը և
հնարավորության դեպքում երկիրը տանել զարգացման ոչ կապիտալիստական
ուղիով:

Հանրահայտ է, որ բառիս լայն իմաստով իսկական ազգային-անկախու-
թյուն ձեռք բերելը անհնար է առանց տնտեսական անկախության: Դեռ 1912
թվականի հոկտեմբերի 7-ին Վ. Ի. Լենինը նշում էր, որ «...բուրժուական գա-
ղափարախոսները բարբառում են ազգային ազատության մասին... ստվերի
տակ թողնելով տնտեսական ազատությունը: Իսկ իրականում հենց այս վեր-
ջինն է գլխավորը» (Երկեր, հ. 18, էջ 503):

Տնտեսական անկախության վճռական նշանակության մասին լենինյան

իդեաներն այսօր իրենց պրակտիկ արտահայտությունը գտնում են նոր զարգացող երկրների քաղաքականության և տնտեսական գործունեության մեջ։

Ազգային-ազատագրական շարժման երկրորդ էտապում տնտեսական անկախության հարցը առաջին պլանի վրա դնելը պատահական չէ, այն բխում է այդ երկրների ռեալ վիճակից, որովհետև դարերի ընթացքում գտնվելով օտարերկրյա կապիտալի լծի տակ՝ Աֆրիկայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի բազմամիլիոն բնակչությունը քաղաքական անկախություն ստանալուց հետո այսօր էլ չունի կյանքի համար ամենաանհրաժեշտը։

Տնտեսական այդպիսի ցածր մակարդակի պայմաններում հատուկ կարևոր նշանակություն է ստանում նոր զարգացող երկրներին տնտեսական օգնություն ցույց տալու հարցը։

Թույլ զարգացած երկրներին տնտեսական օգնություն ցույց տալու հարցում միանգամայն հակառակ դիրքերից են ելնում կապիտալիստական և սոցիալիստական երկրները։ Իմպերիալիստական երկրները ոչ միայն քիչ են մտահոգված թույլ զարգացած երկրներին իսկական օգնություն ցույց տալու հարցով, այլև ամեն կերպ ձգտում են նոր մեթոդներով ու ձևերով պահպանել ժողովուրդների գաղութային շահագործումը, այդ նպատակով օգտագործելով բոլոր միջոցները (գաղութային պատերազմներ, ռազմական և տնտեսական բլոկներ, դավադրություններ, տեռոր, քայքայիչ գործունեություն, տնտեսական ճնշում, կաշառք և այլն)։ Գաղութային սիստեմը խորտակվել է, բայց գաղութատիրությունը գոյություն ունի, որովհետև նա փոխում է իր կերպարանքը, ձևափոխում է իր տակտիկան՝ հարմարվելով գաղութային սիստեմի կործանման հետևանքով առաջացած նոր իրադրությանը։

Ազգային-ազատագրական շարժման արդի էտապում սոցիալիստական երկրների տնտեսական հզորության աճը ստեղծում է լայն հնարավորություններ թույլ զարգացած երկրներին ավելի մեծ և բազմակողմանի օգնություն ցույց տալու համար։ Հակառակ իմպերիալիստական պետությունների, Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական պետությունները թույլ զարգացած երկրներին ցույց են տալիս անշահախնդիր օգնության փայլուն օրինակ։

Որո՞նք են Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների կողմից թույլ զարգացած երկրներին ցույց տրվող տնտեսական օգնության բնորոշ կողմերը։ Ի՞նչ նկատառումներով են Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները օգնում երիտասարդ պետություններին։

Առաջին հերթին պետք է ասել, որ այդ օգնությունը կազմակերպվում է ելնելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից։ Այդպիսի օգնությունը օգուտ է համաշխարհային սոցիալիստական սիստեմին և միջազգային ռևոլյուցիոն շարժմանը, քանի որ այն թուլացնում է իմպերիալիզմի ճակատը, արագացնում է համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսը։

Տնտեսական համագործակցությունը ազատագրված երկրների հետ հիմնըված է փոխադարձ շահավետության սկզբունքի վրա։ ՍՍՌՄ-ը և սոցիալիստական մյուս երկրները, ի տարբերություն կապիտալիստական տերությունների, թույլ զարգացած երկրներին օգնելիս, չեն ձգտում կոնցեսիաների և շահույթների, չեն առաջարկում այնպիսի պայմաններ, որոնք անհամատեղելի են օգնություն ստացող երկրների ազգային շահերի և արժանապատվության հետ, չեն պահանջում, որ նրանք հատուցեն ռազմական կամ քաղաքական բնույթի պարտավորություններով։



Մինչև 1965 թ. սոցիալիստական երկրների ֆինանսական ու տեխնիկական օգնությամբ Ասիայի և Աֆրիկայի նոր զարգացող երկրներում կառուցվել ու կառուցվում են 1170 արդյունաբերական օբյեկտներ։ Միայն 1955—1962 թվականների ընթացքում տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների օգնությամբ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի 40 երկրներում կառուցվել և կառուցվում են ավելի քան 900 արդյունաբերական և այլ խոշոր օբյեկտներ։

Նոր զարգացող երկրներին ցույց տրվող օգնության գործում հատկապես մեծ է ՍՍՌՄ-ի դերը։ Սովետական Միության օգնությամբ ավելի քան 20 երկըրներում նախատեսվում է կառուցել 500 օբյեկտներ։ Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների օգնությամբ Հնդկաստանում կառուցվում են 166 օբյեկտներ, Ինդոնեզիայում՝ 50, ՄԱՌ-ում՝ 178, Մալիում՝ 17, Մարոկկոյում՝ 9 և այլն։



Սովետական Միությունը Հնդկաստանում կառուցել և կառուցում է մետալուրգիական, ծանր մեքենաշինության, հանքային սարքավորումների գործարաններ և մեծ ջերմաէլեկտրակայան։ Արդեն 1960 թվականի վերջին ՍՍՌՄ-ի օգնությամբ կառուցված Բհիլայիի մետալուրգիական գործարանի առաջին հերթի շինարարության ավարտման շնորհիվ, տարեկան արտադրվում է մեկ միլիոն տոննա պողպատ, իսկ Հնդկաստանի տնտեսության զարգացման երրորդ հնգամյակի ընթացքում, 1966 թվականին, Բհիլայիի գործարանի հզորությունը կհասցվի տարեկան մինչև 2,5 միլիոն տոննայի, այսինքն՝ ամբողջ երկրի պողպատի արտադրանքը կավելանա մոտ 60 տոկոսով։

Հնդկաստանի զարգացման երրորդ հնգամյա պլանի (1961—1966 թթ.) համաձայն ՍՍՌՄ-ի օգնությամբ Հնդկաստանում կառուցվում են նաև ծանր մեքենաշինության, լեռնահանքային սարքավորումների գործարաններ։

Սովետական մասնագետների օգնությամբ Բոմբեյի շրջանում հայտնաբերվել են նավթի արդյունաբերական պաշարներ։ Եթե ի նկատի ունենանք, որ Հնդկաստանը ներկայումս երկրում օգտագործվող նավթի և նավթամթերքների 90 տոկոսը ներմուծում է արտասահմանից, ապա պարզ կլինի այդ հայտնագործության խոշոր նշանակությունը Հնդկաստանի համար։

Արդյունավետ համագործակցության լավագույն օրինակ են հանդիսանում նաև ՍՍՌՄ-ի և ՄԱՌ-ի միջև եղած տնտեսական կապերը։ Ըստ համաձայնագրերի՝ Սովետական Միությունը Միացյալ Արաբական Ռեսպուբլիկային օգնելու է կառուցելու և ընդարձակելու 100-ից ավելի օբյեկտներ, այդ թվում 6 մետալուրգիական, 6 մեքենաշինական, 12 նավթի և քիմիական արդյունաբերության ձեռնարկություններ, նավաշինական օբյեկտներ և այլն։ Այսպիսով ՄԱՌ-ը կազատվի նավթ ներմուծելու անհրաժեշտությունից և Ալեքսանդրիայում հիմք կդրվի հայրենական նավաշինությանը։ Սովետական Միությունը օժանդակում է Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի Ասուանի բարձրաբերձ ամբարտակի շինարարության ավարտման գործին։

Սովետական Միության կողմից թույլ զարգացած երկրներին ցույց տրված օգնությունը ունի նաև այլ առավելություններ, որն արտահայտվում է վարկային քաղաքականության մեջ։

Հակառակ իմպերիալիստական պետությունների, Սովետական Միությունը ոչ միայն առաջին հերթին ելնում է այն սկզբունքից, որ յուրաքանչյուր պետություն ինքը պետք է վճռի թե ստացված վարկը ինչ նպատակով օգտագործել,

այլև վարկը տրամադրում է ավելի ցածր տոկոսով, քան կապիտալիստական պետությունները։ Դրանում համոզվելու համար բավական է հիշել, որ եթե վերակառուցման ու զարգացման միջազգային բանկի տոկոսները հասնում են 4-ից մինչև 7-ի, ապա սովետական վարկերի տոկոսները երկու և կեսից չեն անցնում։ Բացի դրանից, ՍՍՌՄ-ը և սոցիալիստական մյուս երկրները վարկ են տալիս ոչ թե կարճ, այլ երկար ժամանակով՝ 10—12 տարով, որը, անկասկած, հեշտացնում է վարկի հատուցման գործը։

Երրորդ առավելությունն այն է, որ վարկը կարելի է մարել ոչ միայն վալյուտայով, այլև նրանով, ինչ արտադրում ու արտահանում է տվյալ երկիրը։ Այսպիսի վարկավորումը օգտակար է ոչ միայն թույլ զարգացած երկրների, այլև սոցիալիստական երկրների համար։ Ահա թե ինչու թույլ զարգացած երկրների զգալի մասը ձգտում է վարկեր ստանալ սոցիալիստական երկրներից։ Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրները Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներին միայն 1955—1962 թթ. նպաստավոր զեղչով տվել են 3,5 միլիարդ ռուբլու վարկ։

Զարգացող երկրների համար սոցիալիստական երկրների կողմից ստեղծված նպաստավոր պայմանները ստիպում են իմպերիալիստական պետություններին վերանայել նրանց ցույց տրվող իրենց օգնության հանգամանքները։ Մասնավորապես վերջին տարիներին երիտասարդ պետությունները կապիտալիստական երկրներից ստանում են վարկեր, որոնց տոկոսները քիչ թե շատ մատչելի են նրանց և օգնում են երկրի էկոնոմիկայի զարգացմանը։

Տնտեսապես թույլ երկրների զարգացման համար կարևոր նշանակություն ունի նրանց գիտատեխնիկական օգնություն ցույց տալու հարցը։ Այս դեպքում ևս միանգամայն տարբեր մոտեցում ունեն կապիտալիստական և սոցիալիստական երկրները։ ԱՄՆ-ը և մյուս կապիտալիստական երկրները, ելնելով շահադիտական նկատառումներից, չեն ցանկանում իրենց գիտատեխնիկական նոր փորձը տալ թույլ զարգացած երկրներին։ Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրներն, ընդհակառակը, տնտեսական օգնություն կազմակերպելու հետ միասին, հատուկ ուշադրություն են դարձնում թույլ զարգացած երկրներում բարձրորակ ազգային մասնագետներ պատրաստելու և մեր արտադրության առաջավոր փորձը նրանց հաղորդելու վրա, որովհետև ազգային կադրերի պատրաստումը այն բանալին է, առանց որի անհնար է լուծել տնտեսական զարգացման պրոբլեմները։ Այդ նպատակով 1960 թվականի հոկտեմբերի 1-ին Մոսկվայում բացվեց Պատրիս Լումումբայի անվան ժողովուրդների բարեկամության համալսարանը։

Որպեսզի պատկերացնել, թե այդպիսի կադրերի ինչպիսի մեծ պահանջ կա, բավական է ասել, որ 500 տեղի համար Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներից ստացվել էր ավելի քան 35 հազար դիմում, այսինքն՝ 70 դիմում մեկ տեղի համար։ Համալսարանը 1965 թվականի հունիսին տվեց իր առաջին շրջանավարտները՝ 228 մարդ։ Առաջին շրջանավարտների միտինգում, համալսարանի պատմաբանասիրական ֆակուլտետի շրջանավարտ Ճեգունա Օդունգան (Նիգերիա) հայտարարեց, որ «Սովետական Միությունը համալսարանի հիմնադրման փաստով ցույց տվեց, որ նա ոչ թե խոսքով, այլ գործով է իր համերաշխությունն ու աջակցությունը հայտնում իմպերիալիզմի դեմ պայքարող՝ նոր զարգացող երկրների ժողովուրդներին, որ նա նյութական մեծ



ավանդ է մուծում այդ պայքարում և ըստ արժանվույն կատարում իր ինտերնացիոնալ պարտքը»։

Ազգային կադրերի պատրաստման գործում ՍՍՌՄ-ի օգնությունը նոր զարգացող երկրներին չի սահմանափակվում ժողովուրդների համալսարանի ստեղծումով։ Ներկայումս ՍՍՌՄ-ի միայն բուհերում ու միջնակարգ մասնագիտական ուսումնարաններում այդ երկրներից սովորում են ավելի քան 20 հազար երիտասարդներ։ Բացի այդ, ՍՍՌՄ-ի օգնությամբ այդ երկրներում (Հնդկաստան, Եթովպիա, Կամբոջա, Մալի, Ալժիր և այլն) կառուցվել և կառուցվում են 90-ից ավելի ուսումնական հաստատություններ։

Ազգային կադրերի պատրաստման գործին մեծ չափով նպաստում է այն հանգամանքը, որ մի կողմից հարյուրավոր հնդկացիներ, արաբներ, աղվաններ և այլ երկրների ներկայացուցիչներ սովորել և սովորում են Սովետական Միության արդյունաբերական ձեռնարկություններում, իսկ մյուս կողմից, սովետական հարյուրավոր լավագույն տեխնիկական մասնագետներ ուղարկվում են նոր կառուցվող ձեռնարկություններում ժամանակավոր աշխատելու և իրենց հարուստ փորձը տեղի կադրերին հաղորդելու համար։ Միայն Հնդկաստանում Բհիլայիի մետալուրգիական կոմբինատի առաջին հերթի կառուցման ժամանակ պատրաստվեցին 5 հազար տեխնիկներ և որակյալ բանվորներ։

Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների տնտեսական կապերն Արևելքի երկրների հետ տարեցտարի ամրապնդվում ու ավելի լայն ծավալ են ընդունում։ Տնտեսական փոխօգնության երկրների և երիտասարդ անկախ պետությունների միջև 1962 թվականին ապրանքաշրջանառությունը, 1955 թվականի համեմատությամբ, աճեց 3 անգամ։

Այն դեպքում, երբ իմպերիալիստական պետությունները իրենց մաքսային սիստեմի միջոցով տարեկան ստանում են 800—900 միլիոն դոլար եկամուտ, 1965 թվականի հունվարի 1-ից ՍՍՌՄ-ը վերացրել է թույլ զարգացած երկրներից ներմուծվող ապրանքների վրա տարածվող մաքսային կարգը։ Պլանավորվում է մինչև 1980 թվականը այդ երկրներից ներմուծվող ապրանքների ծավալը ավելացնել ավելի քան 8 անգամ։

* * *

Նոր զարգացող երկրներին Սովետական Միության կողմից ցույց տրվող տնտեսական օգնության մեջ իր համեստ բաժինն ունի նաև Սովետական Հայաստանը, որն այսօր աշխարհի 64 պետություններ է ուղարկում ժամանակակից մեքենաներ։ Այս փաստն նոր զարգացող երկրների համար ունի օրինակի մեծ ուժ։

Ուշագրավ է նաև այն, որ արտասահման ուղարկվող ապրանքները արտադրվում են ոչ միայն ռեսպուբլիկայի մայրաքաղաքի, այլև Լենինականի, Կիրովականի, Ալավերդու, Ղափանի, Քաջարանի, Գորիսի, Էջմիածնի, Արզնու, Ջերմուկի և նույնիսկ Սպիտակի, Սիսիանի, Շամշադինի, Կամոյի, Մարալիկի, Մեղրու, Ապարանի ձեռնարկություններում։ Եթե 1957 թվականին արտահանվում էր ռեսպուբլիկայի միայն 15 ձեռնարկությունների արտադրանքը, ապա 1964 թվականին դրանց թիվը հասավ 54-ի։

Ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկությունները 1957 թվականին արտասահման են ուղարկել 38, 1960 թվականին՝ 57 և 1964 թվականին՝ 121 տե-

սակի արդյունաբերական ապրանքներ, այդ թվում՝ շարժական էլեկտրակայաններ, էլեկտրագեներատորներ, ուժային տրանսֆորմատորներ, կառավարման վահաններ, պոմպեր, կոմպրեսորներ, մետաղահատ հաստոցներ, ավտոպահեստամասեր, ալյումին, պղնձարջասպ, ժամացույցներ, հաշվիչ մեքենաներ, կոնյակ, տեքստիլ ապրանքներ և այլն: Ռեսպուբլիկայից արտահանվող ապրանքների զգալի մասը ուղարկվում է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրները. այդ թվում՝ Հնդկաստան, Բիրմա, ՄԱՌ, Ալժիր, Գանա, Մալի, Սիրիա, Իրաք և այլ երկրներ:

Սովետական Հայաստանում արտադրվող մեքենաներն ու սարքավորումներն ուղարկվում են արտասահմանում ՍՍՌՄ-ի օգնությամբ կառուցվող այնպիսի խոշոր ձեռնարկություններին, ինչպիսիք են Հնդկաստանի Բհիլայիի մետալուրգիական կոմբինատը, Աֆղանստանի Բահրամի օդանավակայանը, Եմենի ծովային նավահանգիստը, ՄԱՌ-ի Ասուանի ամբարտակը և այլն:

ՍՍՌՄ-ի և Իրաքի միջև կնքված պայմանագրի համաձայն, Հայկական ՍՍՌ-ի էլեկտրատեխնիկական ձեռնարկությունների վրա է դրված Իրաքում (Բաղդադում) կառուցվող Մերձավոր արևելքի ամենախոշոր էլեկտրատեխնիկական գործարանի կառուցումը, որը կարտադրի գեներատորներ, տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ, էլեկտրաշարժիչներ:

Այժմ ռեսպուբլիկայի ձեռնարկությունները զգալի չափով ընդարձակում են արևադարձային պայմաններում աշխատող սարքերի արտադրանքը, որոնց մեծ մասը ուղարկվելու է արտասահմանյան երկրներին:

Մեր ռեսպուբլիկան զգալի օգնություն է ցույց տալիս նոր զարգացող երկրներին նաև գիտատեխնիկական կադրերի պատրաստման գործում: Այդ նպատակով Սովետական Հայաստանի արդյունաբերական ձեռնարկություններում իրենց պրակտիկան են անցկացրել և անց են կացնում հազարավոր արտասահմանյան երիտասարդ մասնագետներ: Բուհերում սովորել և ավարտել են հարյուրավոր երիտասարդներ:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի լայն տնտեսական օգնությունը նոր զարգացող երկրներին հնարավորություն է տալիս ոչ միայն աստիճանաբար ապահովել երկրի տնտեսական անկախությունը, այլև կատարել խոր սոցիալական փոփոխություններ և երկիրը տանել ոչ կապիտալիստական ուղիով:

Գ. ԽՌԼՈՊՅԱՆ

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Այժմ սովետական հասարակության առջև ծառացած ամենակարևոր խնդիրներից մեկը նոր մարդու, առանձնապես երիտասարդության դաստիարակման հարցն է, որը գնալով ավելի է բարդանում ու դժվարանում: Ո՞րն է պատճառը: Դրան ճիշտ պատասխանելու համար անհրաժեշտ է ուսումնասիրել երիտասարդության կյանքի ու գործունեության հետ կապված մի շարք հարցեր: Փորձենք համառոտակի բացահայտել ու վերլուծել այդ հարցերից մի քանիսը:

Մարդու էությունը պատմական-հասարակական բնույթ ունի: Նա իր ժամանակաշրջանի ծնունդն է: Սակայն նրա հոգևոր ու մտավոր կերտվածքը հազար ու մի թելերով կապվում է նաև անցյալի հետ: Յուրաքանչյուր սերունդ նորը կերտում է որոշակի ժառանգության, ավանդության հիման վրա: Այս պատճառով էլ յուրաքանչյուր սերնդի հաստատած արժեքների և նրա զարգացման ընթացքի վրա զգալի (երբեմն վճռական) ազդեցություն է ունենում այն, թե նա ի՞նչն է ժառանգում, ինչպե՞ս է ժառանգում և ինչպե՞ս է զարգացնում, լրացնում հինը:

Այս կապակցությամբ ծագում է շատ կարևոր մի հարց. անցյալից ժառանգած դրական արժեքների, կենսունակ հայացքների ու տարբեր պայմաններում դրանց կոնկրետ դրսևորման, արտահայտման փոխհարաբերության հարցը: Սոցիալիստական ազգերը ժառանգում են անցյալում ստեղծված կուլտուրայի դեմոկրատական տարրերը, այն ամենը, ինչ օգնում է նրանց նոր հասարակարգ կերտելու համար: Պրակտիկան ցույց է տալիս, որ սոցիալիզմի կառուցման տարբեր էտապներում, փոփոխվում են անցյալի արժեքների օգտագործման չափերը: Չպետք է մոռանալ, որ անցյալի ժառանգության ճիշտ օգտագործումը խոշոր նշանակություն ունի երիտասարդ սերնդի աշխարհզգացման ձևավորման համար: Ամեն մի սենտիմենտալություն այս բնագավառում վնասում է գործի հաջողությանը:

Մեր երիտասարդությունը հիանում ու խանդավառվում է իր նախորդների հերոսությամբ: Նա ուզում է նմանվել իր սիրած շատ հերոսներին: Բայց այժմ փոխվել են պայմանները:

Անցյալ շրջանի իրադրությունները լարված, արտակարգ պայմաններ ու հարաբերություններ են ենթադրում: Այդ ժամանակները մեր զարգացման «անհանգիստ» փուլերն էին, որտեղ մարդկանց գործունեությունն այլ էր, վեհ իդեալների ու սկզբունքների իրականացման եղանակները՝ ուրույն: Այժմ երի-

տասարդությունն ապրում է զարգացման ավելի հանգիստ, խաղաղ ու համաչափ շրջան։ Փոխվել են մեր խնդիրները և դրանց լուծման պայմաններն ու եղանակները։ Այդ պատճառով էլ հաճախ երիտասարդը դժվարանում է գտնել բարձր սկզբունքներն իրականացնելու, իր հավատը դրսևորելու համապատասխան ձևեր։ Նա հավատում է իր դավանած հայացքներին, սակայն երբեմն չկարողանալով դրանք նոր պայմաններում իրականացնել, նրա հոգին փոթորկվում է։ Նա նույնիսկ կարող է դառնալ թերահավատ, մի հանգամանք, որն զգալի չափով կարող է դժվարացնել նրա ղեկավարման ու ճիշտ դաստիարակման գործը։

Մեր կարծիքով, հեղափոխական ավանդություններ ներարկելու ընթացքում անհրաժեշտ է առաջին հերթին ուշադրություն դարձնել հարցի այդ կողմի վրա։ Մեր հիմնական խնդիրներից մեկը պետք է լինի ցույց տալ, թե այդ արժեքներն ու սկզբունքները ինչպես կարելի է մարմնավորել արդի պայմաններում։ Ինչպես ցույց է տալիս փորձը, հնարավոր չէ հեղափոխական ավանդություններ արմատավորել պարզապես հուշեր պատմելով ու հրատարակելով։ Դրանք շատ կարևոր ու անհրաժեշտ են, բայց ոչ բավարար։ Միաժամանակ գործին քիչ է նպաստում նաև այն ընդհանուր հայտարարությունը, որ այժմ այդ սկզբունքներն արտահայտելու միջոցը աշխատանքն է։

Սոցիալիզմի հաղթանակը մեր իրականության մեջ մարդկանց և, հատկապես, երիտասարդության միջավայրում ստեղծեց ուժեղ հեղափոխական տրամադրություն։ Այդ տրամադրությունն առաջին հերթին առաջացնում է ինքնամփոփություն, հավատ կյանքի վերընթաց զարգացման ու նորի անհաղթահարելիության նկատմամբ։ Նոր սերնդի բնավորության բնորոշ գծերից են դառնում նորասիրությունը, պայքարը հնամոլության, միապաղաղության ու շաբլոնի դեմ։ Նրա հոգու մեջ արմատավորված այդ զգացմունքը, որը նրա ամենադրական հատկություններից մեկն է, անհրաժեշտորեն պահանջում է, որպեսզի նրա համար կազմակերպված միջոցառումներն ու դրանց անցկացման մեթոդները միշտ փոփոխվեն, նորացվեն։ Այս կապակցությամբ ուշագրավ է Կիրովականի երիտասարդական կազմակերպությունների փորձը։ Մի քանի տարի առաջ նրանք հանդես եկան նոր ու հետաքրքրական նախաձեռնություններով, որոնց մասին դրվատանքով գրվեց միութենական մամուլում։ Ուշագրավ էր նրանց կազմակերպած հասարակական հիմունքներով գործող տեխնիկումը, երաժշտական դպրոցը, «Սիրիր արվեստը» ակումբը և այլն։ Սկզբնական շրջանում դրանք մեծ դեր խաղացին շրջանի երիտասարդության ղեկավարման գործում։ Սակայն մնալով թերավարտ, չկատարելագործվելով, դարձան շաբլոն, սովորական երևույթ ու կորցրին իրենց հետաքրքրականությունն ու նշանակությունը։

Մյուս կողմից, երբ նորասիրության զգացումը ճիշտ չի ղեկավարվում, այն կարող է նաև հակառակ արդյունքի հասցնել։ Օրինակ, երիտասարդությունն առանձին դեպքերում կարող է հնացած համարել այն, ինչ դեռևս չի սպառել իրեն։ Ինչպես գիտենք, երիտասարդությունը լայն պայքար ծավալեց հին մնացուկների դեմ։ Սակայն նա միաժամանակ դեն շպրտեց ժողովրդական այն սովորություններն ու տոնակատարությունները, որոնք դեռևս կարող են հետաքրքրական և ուրախ դարձնել կյանքը։ Այժմ մենք մեծ ջանքեր ենք թափում, որպեսզի ուղղվեն այդ սխալները և վերականգնվեն օգտակար սովորությունները։



Որոշ դեպքերում երիտասարդությունը կարող է նաև որպես նորություն ընդունել այն, ինչ իսկապես նախորդից կամ այժմեականից տարբերվում է, բայց իր էությամբ նոր չէ։ Օրինակ, որոշ երիտասարդներ երբեմն կյանքի նկատմամբ նոր (կամ նույնիսկ նորագույն) վերաբերմունք են համարում նեղ պրակտիցիզմը, ուտիլիտարիզմը և հաճախ այն նույնացնում են երևույթների նկատմամբ գործնական կոնկրետ մոտեցման հետ։ Նեղ ուտիլիտարիզմը (օգտապաշտությունը), որը, թերագնահատում ու նույնիսկ ժխտում է վեհ իդեալների, համընդհանուր շահերի դերն ու նշանակությունը, էապես տարբերվում է պրոլետարական ու սովետական ավանդություններից։ Ուտիլիտարիզմը նոր երևույթ չէ։ Այն բուրժուական էգոիզմի և միակողմանիության արտահայտություններից մեկն է։ Ձախ ֆրազեոլոգիայի, դեկլարատիվ, վերամբարձ հայտարարությունների դեմ ծավալվող պայքարը երբեք չպետք է տանի դեպի նեղ պրակտիցիզմ, որը նույնքան վնասակար է։

Ի հակադրություն այդպիսի մոտեցման, մեր երիտասարդությունն այժմ ձեռնարկում է այնպիսի նոր գործողություններ, որտեղ իսկապես համադրված են երևույթների նկատմամբ գործնական կոնկրետ մոտեցումը, անհատական ու համընդհանուր շահը։ Այդպիսի նոր միջոցառումներից է, օրինակ, բժշկական ինստիտուտի ուսանողների նախաձեռնած հասարակական հիմունքներով գործող օրդինատուրան։ Ինստիտուտի բարձր կուրսերի ուսանողները քաղաքի մի շարք հաստատություններում հասարակական կարգով ղեկավարում են բուժկետեր և այդպիսով զգալի օգնություն ցույց տալիս իրենց համաքաղաքացիներին, միաժամանակ խորանալով իրենց մասնագիտության մեջ։

Սովետական իրականությունը լայն հնարավորություններ տվեց երիտասարդության մտավոր ու ֆիզիկական զարգացման համար։ Նա բարձրացրեց մարդու արժանապատվությունը, ինքնասիրության զգացումը, մտավոր ու բարոյական մակարդակը։ Այս բոլորի շնորհիվ զգալիորեն բարձրացավ նաև մեր երիտասարդության քննադատական մոտեցումը, պահանջկոտությունը, ճաշակը։ Անկասկած, այդպիսի երիտասարդության ստեղծումը մեր սիստեմի մեծագույն նվաճումներից մեկն է։ Սակայն միաժամանակ զգալիորեն դժվարանում է պահանջկոտ, բազմակողմանի զարգացած երիտասարդության ղեկավարման ու դաստիարակման գործը։ Չպետք է մոռանալ, որ սոցիալիզմի պայմաններում դեռևս երիտասարդը հասարակությունից ստանում է ոչ թե ըստ իր պահանջի, այլ, առաջին հերթին՝ ըստ իր հանրօգուտ աշխատանքի քանակի ու որակի։ Այս սկզբունքի խախտումը նույնպես դժվարացնում է երիտասարդության դաստիարակության ընթացքը։

Յուրաքանչյուր սովետական քաղաքացի և, հատկապես, երիտասարդությունը դաստիարակված է որոշակի քաղաքացիական արժանապատվության, սոցիալիստական հայրենասիրության ոգով։ Որպես այդ դաստիարակության արդյունք, սովետական երիտասարդի գիտակցության մեջ մշակվում է այն համոզմունքը, որ իր հայրենիքն աշխարհում ամենաառաջավորն է, որ այն ունի որոշակի ինտերնացիոնալ առաքելություն, որ բազմաթիվ այլ երկրներ նրանից օրինակ են վերցնում, որ նա աշխարհում հասարակական զարգացման նոր ուղիներ է հարթում։ Անկասկած այդ վկայում է մեր երիտասարդության բարձր արժանիքների մասին։

Սակայն հարցն ունի նաև մի այլ կողմ։ Այդպիսի համոզմունքների առկայության դեպքում երիտասարդը կարող է խիստ ցավագին ընկալել մեր իրա-

կանության մեջ տեղ գտած արատավոր երևույթները։ Երբ այդ զգացումները ճիշտ չեն ղեկավարվում, երիտասարդի հոգում կարող են առաջացնել խիստ մեծ տատանումներ, որոնք իրենց հերթին նորանոր բարդություններ կստեղծեն նրա ղեկավարման ու դաստիարակման գործում։ Ահա թե ինչու յուրաքանչյուր քաղաքացի, աշխատավոր (լինի շարքային թե ղեկավար) պետք է ոչ թե խոսքով, այլ իր պրակտիկ գործունեությամբ մասնակցի իրեն փոխարինող սերնդի ճիշտ պատրաստման խիստ կարևոր գործին։ Դժբախտաբար, դեռևս քիչ չէ այն մարդկանց թիվը, որոնք սիրում են խրատել երիտասարդներին, քարոզել բարձր սկզբունքներ, իսկ իրենք շարունակում են գործել ճիշտ հակառակ ոգով։

Ուսուցիչներից մեկն իր նախկին աշակերտուհուց՝ Կիմայից, ստանում է նամակ, որտեղ նա մեղադրում է իր մանկավարժներին այն բանի համար, որ նրանք աշակերտներին կյանքի համար նախապատրաստելու փոխարեն, նրանց սնում են իդեալներով ու վեհ գաղափարներով։ Ինչո՞ւմն էր բանը։ Կիման լավ սովորող, սկզբունքային աղջիկ էր, դասարանային ԼԿԵՄ կազմակերպության քարտուղար։ Ուսումն ավարտելուց հետո նա ինքնակամ գնացել էր արտադրության մեջ աշխատելու և համոզված էր, որ այդպիսով հայրենասիրական գործ է կատարում։ Սակայն գործարանում նրան ընդունել էին սառը, անտարբեր, իսկ առանձին մարդիկ նույնիսկ աշխատել էին նրան խաբել։ Անհրաժեշտ եղավ համապատասխան կազմակերպությունների միջամտությունը, որպեսզի դրությունը փոխվի։ Այդպիսի անհոգի և անպատասխանատու վերաբերմունքը բացասական ազդեցություն է ունենում երիտասարդների հոգեբանության, մասնագիտացման և ընդհանրապես նրանց ամբողջ կյանքի կազմակերպման ու ղեկավարման վրա։ Ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, երիտասարդ բանվորների հոսունության պատճառներից մեկն էլ այդպիսի վերաբերմունքն է։ Այդ պատճառով էլ, մեր կարծիքով, պետք է վերջնականապես օրինականացնել և ընդունել այն տեսակետը, որ վարպետը, աշխատամասի վարիչը կամ ղեկավարը միևնույն ժամանակ նաև դաստիարակ է։ Ինչպես սովետական կրթական սիստեմում, այնպես էլ արտադրության մեջ պետք է իրականացվի ուսուցման ու դաստիարակության միասնականության սկզբունքը։ «Վարպետ» արտահայտությունը շատ պարտավորեցուցիչ է և դրան արժանացողը պետք է աշխատի արդարացնել իրեն։

Այս կապակցությամբ ուշադրության արժանի է Երևանի ալյումինի գործարանի փորձը։ Գործարանի դիրեկցիան, պարտիական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպություններն իրենց դիսպետչերական խորհրդակցություններն անցկացնում են ոչ թե դռնփակ, այլ այն հաղորդում են գործարանի ներքին ռադիոհանգույցով։ Յուրաքանչյուր աշխատակից, տեղյակ լինելով այդ բոլորին, ավելի ճիշտ է դատում անցուդարձի մասին, ակտիվ մասնակցում է գործարանի կյանքին։

Որքան սահմանափակ են մարդու հնարավորություններն ու գիտելիքները, այնքան ավելի հեշտ է երիտասարդին կողմնորոշվել և կյանքում որոշել իր տեղն ու նշանակությունը։ Օրինակ, եթե մարդ ունի 10 հնարավորություն, ապա դրանցից յուրաքանչյուրում կողմնորոշվելու ու նրանցից մեկն ու մեկն ընտրե-



լու համար ավելի քիչ դժվարություններ կան, քան ասենք 50 հնարավորությունում։ Ներկայումս, երբ խիստ ընդլայնվում են մարդու իմացության շրջանակները, մտահորիզոնը, երիտասարդության համար նույնքան դժվարանում է այդպիսի հարուստ հնարավորությունների (այլ կերպ ասած՝ անորոշությունների) մեջ կողմնորոշվելը։ Անկասկած, ինչքան անորոշությունը մեծ է, այնքան բարդ է կողմնորոշումը, հարուստ է դրա լուծումն ու դրանից ստացված ինֆորմացիայի արժեքը։

Գիտությունների, մարդկության ստեղծած արժեքների ու հաստատած իդեալների, ավանդությունների սիստեմների այդպիսի հարստացումը, տեխնիկական պրոգրեսի կապակցությամբ կյանք ներխուժող երևույթները նորանոր հարցեր են դնում դաստիարակման ու մարդկանց ղեկավարման հետ առնչվող գիտությունների առաջ. գիտություններ, որոնք լուրջ խնդիրներ ունեն երիտասարդության ղեկավարման, նրա կողմնորոշման գործում։

Անվիճելի է, որ որքան հասարակական սիստեմը դառնում է ավելի կազմակերպված ու առաջավոր, այնքան բարձրանում է նոր սերնդի դաստիարակության նշանակությունն ու բարդանում նրա ղեկավարման գործը։ Սոցիալիստական հասարակությունը մինչև այժմ գոյություն ունեցած բոլոր հասարակական սիստեմներից ամենակազմակերպվածն է, ամենաառաջավորն է, որը լուրջ կերպով զբաղվում է երիտասարդ սերնդի ղեկավարման գործով։

Սակայն այս հարցի միայն մի կողմն է։ Երբեք չի կարելի այս փաստերը հիմք ընդունելով չնկատել մեր երիտասարդության որոշ խավի հակահասարակական արարքներն ու անվայել վարքը։

Երիտասարդի բնավորության մեջ բացասական գծեր ու կողմեր նկատելով չպետք է հիասթափվել նրանից, վիրավորել նրա ինքնասիրությունն ու թերահավատ լինել նրա նկատմամբ։ Յուրաքանչյուր այդպիսի երիտասարդ միաժամանակ ունի այնպիսի դրական ու առողջ կողմեր, որոնք նկատելով ու դրանց վրա հենվելով հնարավոր է վերացնել նրա թերությունները, վերադաստիարակել նրան։

Վստահության բացակայության դեպքում անհնարին է վերափոխել մարդուն։ Օրինակ, Երևանի մետաքսի գործարանի կոմերիտական կազմակերպությունը երիտասարդ մի աղջկա ուղղելու նպատակով նրան ընդունել էր աշխատանքի ու ընդգրկել ինքնագործ երգի-պարի անսամբլում։ Սակայն գործը սահմանափակվել էր միայն դրանով։ Այդ ընկերները կարծում էին, որ աշխատանքն ինքնին, առանց նպատակասլաց գործունեության ու համապատասխան պայմանների կվերափոխի մարդուն։ Ավելին, կոլեկտիվի որոշ անդամներ ոչ միայն հաճախ աղջկան հիշեցնում էին իր անցյալը, այլև բացասական, կասկածամիտ, վիրավորական վերաբերմունք էին ցուցաբերում։ Դրա հետևանքով էլ երիտասարդ աղջիկը թողեց այդ կոլեկտիվն ու աշխատանքը։ Նա նորից զրկվեց այն ղեկավարությունից, որի կարիքը խիստ զգում էր։ Նա չվերափոխվեց, չվերադաստիարակվեց։

«Գիտելիք» ընկերության երիտասարդական հանձնաժողովը ծրագրել էր անցկացնել բանավեճ «Ինչ է երջանկությունը» թեմայով։ Որոշ ընկերներ ցույցաբերում էին ավելորդ շրջահայեցողություն և առաջարկում էին այն անցկացնել կամ նեղ միջավայրում, կամ էլ նախօրոք նախապատրաստել ելույթ ունեցողներին։ Իսկ մի խումբ ընկերներ գտնում էին, որ կարելի է վստահել մեր երիտասարդությանը և հրապարակայնորեն անցկացնել այն։ Ընդունվեց երկ-

րորդ տեսակետը։ Թերթերում տպվեց հայտարարությունը։ «Գիտելիք» ընկե-
րության դահլիճը լեփ-լեցուն էր։ Կարդացվեցին բանավեճի թեզիսները, ապա
երիտասարդությունն սկսեց ինքը վիճել։ Դա իսկապես գիտական քննարկում էր,
որը տևեց մոտ չորս և կես ժամ։ Երիտասարդների ավելի կազմակերպված ու
գիտակից խավը հիմնավորված ու շատ ճկուն կերպով քննադատում է սխալ տե-
սակետները, անհամոզեցուցիչ թեզերը։ Նրանց ելույթներն ավելի էին ազդում
իրենց հասակակիցների վրա։ Այդ իսկական բանավեճ էր և ոչ թե նախօրոք
պատրաստված ու թելադրված ելույթների հաջորդականություն։

Այս ամենն առաջին հերթին խոսում են այն մասին, որ անհրաժեշտ է վե-
րանալել երիտասարդության շրջանում տարվող աշխատանքի մեթոդներն ու
ձևերը, հրաժարվել անկենսունակներից և գտնել, մշակել ու զարգացնել նոր,
ավելի արդյունավետ ու ճկուն մեթոդներ։

Երիտասարդության ղեկավարումը ճիշտ կազմակերպելու համար, առաջին
հերթին, անհրաժեշտ է այն դնել գիտական հիմքերի վրա։ Այս նշանակում է
նախ և առաջ բազմակողմանիորեն ուսումնասիրել ղեկավարման օբյեկտը (երի-
տասարդությունը) և պարզել նրա խոհերն ու հույզերը, իրականության նկատ-
մամբ նրա վերաբերմունքն ու դրա ձևերը, այսինքն՝ գիտական հաշվառման
ենթարկել երիտասարդության հասարակական կարծիքը։ Մյուս կողմից, ան-
հրաժեշտ է ուսումնասիրել գործոնների այն սիստեմը, որի պայմաններում
ապրում, սովորում և աշխատում է երիտասարդությունը, պարզել, թե այդ գոր-
ծոններից յուրաքանչյուրն ինչպես և ինչ ձևով ու չափով է ներգործում երիտա-
սարդության կյանքի վրա։

Այս կապակցությամբ հետաքրքրական է հետևյալ փաստը, որը պարզ ցույց
է տալիս թե աննշան և չնկատված ու չհաշվառված գործոններն ինչպես կա-
րող են ազդել երիտասարդության կյանքի վրա։ Վերջերս անհրաժեշտ եղավ
պարզել երիտասարդության գրասիրության ստիճանը։ Որոշ ընկերներ գտնում
էին, որ երիտասարդների զգալի մասը դադարել է ինտելեկտուալ հետաքրքրու-
թյուններ ունենալուց և այդ պատճառով էլ գիրք չի գնում։ Իսկապես որ գրքի
վաճառքում որոշ անկում էր նկատվում։ Սակայն պարզվեց, որ դրա հիմնական
պատճառներից մեկը այն է, որ բնակարանային որոշ անհարմարությունների
պատճառով երիտասարդության մի մասը գնում է միայն խիստ անհրաժեշտ
գրականությունը։ Մյուս կողմից, սակայն, ուրախալի է, որ մասսայական գրա-
դարաններում զգալի չափով աճել է երիտասարդ ընթերցողների թիվը։

Երիտասարդության կյանքի ընթացքի վրա ազդող գործոնները հաշվի առ-
նելիս, մեր կարծիքով, կարևոր նշանակություն ունի նյութական, տնտեսական,
ինտելեկտուալ, բարոյական ու գաղափարական գործոնների փոխհարաբերու-
թյունն ու նշանակությունը ճիշտ որոշելը։ Մեր աշխատանքում հաճախ մենք
համադրող միջոցառումներ կիրառելու փոխարեն, այդ գործոններն օգտագոր-
ծում ենք առանձին-առանձին և կամ էլ գերագնահատում դրանցից որևէ մեկը։
Որոշ մարդկանց մոտ արմատավորված է այն տեսակետը, որ երիտասարդ
բանվորի երջանկությունն ապահովելու, նրան խրախուսելու համար բավական
է միայն բարձրացնել նրա աշխատավարձը, կամ բարելավել նյութական պայ-
մանները։ Անկասկած այդ գործոնն անտեսել չի կարելի, բայց միայն դրանով
սահմանափակվելը նույնպես խիստ վնասակար է։ Ոսկերչական ֆաբրիկայի
բանվորներից մեկը «Ինչ է երջանկությունը» թեմայի շուրջ վիճելիս արտահայ-
տեց հետևյալ ուշագրավ միտքը։ Նա ընդգծեց, որ երջանկությունը ոչ թե ընդ-



հանրապես աշխատանքի մեջ է, այլ նախընտրած ասպարեզում աշխատելու
մեջ։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ շատ երիտասարդ բանվոր-
ներ հանում մասնագիտական գիտելիքների խորացման անտրտունջ կրում են
որոշ նյութական դժվարություններ։ Աշխատանքային հոգեբանությունը ցույց
է տալիս, որ բանվորի ընդհանուր տրամադրության վրա զգալի ազդեցություն
է ունենում նաև նրա հետ խոսելու ու վարվելու ձևը, մեքենաների դասավորու-
թյունը, աշխատավայրի գունավորումն ու լուսավորումը, աշխատանքի ընթաց-
քի համաչափությունը և նման այլ գործոններ։ Այս նշանակում է, որ կարելի է
արդյունավետ ներգործել երիտասարդի կյանքի ու գործունեության ընթացքի
վրա, երբ գիտականորեն հաշվառվեն այդ բոլոր գործոնները և կիրառվեն հա-
մապատասխան կոմպլեքս միջոցառումներ։

Անհրաժեշտ է նաև պարզել, թե մեր կողմից կիրառված զանազան միջո-
ցառումները ինչպե՞ս են ներգործում երիտասարդության զանազան շերտերի
վրա, նրանք ինչպիսի՞ արդյունք են տալիս։ Երբ որոշակի նպատակով դիմում
ենք հասարակական կարծիքի վրա ներգործելու որևէ միջոցի օգնությանը, ապա
նկատում ենք, որ ոչ բոլոր դեպքերում է այն իր նպատակին հասնո՞ւմ։ Տար-
բեր մարդկանց մոտ այն կարող է տարբեր արձագանք գտնել և նույնիսկ որոշ
դեպքերում կարող է նախատեսվածի հակառակ արդյունքի հանգեցնել։ Մարդն
իր միջավայրի ծնունդն է, դաստիարակության արդյունքը։ Սակայն տվյալ մի-
ջավայրը և դաստիարակչական ներգործման միջոցները տարբեր ձևով են ըն-
կալվում ու իմաստավորվում, տվյալ հասարակության, ընտանիքի, գործարա-
նի, կուրսի անդամների կողմից։ Յուրաքանչյուրն այդ ամենը յուրացնում է
ըստ իր անհատականության։

Մյուս կողմից, միջոցառման առաջացրած փոփոխությունը, ներգործման
ուժը, արդյունավետությունը դեռևս չեն սահմանափակվում միջոցառմանը
հաջորդող անմիջական հետևանքներով։ Յուրաքանչյուր միջոցառում ու գործոն
ժամանակի ընթացքում աստիճանաբար յուրացվում ու իմաստավորվում են
մարդկանց կողմից։ Այսպես, օրինակ, դասախոսի ներգործման հնարավորու-
թյուններն ուսումնասիրելու համար կատարվել է հետևյալ փորձը։ Նույն դասա-
խոսին ներկայացրել են երկու տարբեր լսարանների, որպեսզի նույն նյութի
մասին նա դասախոսի։ Առաջին լսարանում նրան ներկայացրել են որպես
այդ նյութի լավագույն մասնագետներից մեկը։ Երկրորդ լսարանում նրան
ներկայացրել են որպես սովորական դասախոս։ Դասախոսությունից հետո
կատարված ուսումնասիրությունները ցույց են տվել, որ առաջին լսարանը 25
տոկոսով համաձայն է դասախոսի հարցադրումների ու լուծումների հետ, իսկ
երկրորդ լսարանը՝ 15 տոկոսով։ Մի ամսից հետո ուսումնասիրությունը կրկնվել
է և պարզվել, որ առաջին լսարանի զգալի մասը դադարել է դասախոսի հետ
համաձայնելուց, իսկ երկրորդ լսարանի ունկնդիրների համախոհների թիվը
զգալի չափով մեծացել է։ Այս նշանակում է, որ դասախոսությունների ու ընդ-
հանրապես կիրառված միջոցառումների անմիջական արդյունքը դեռևս գործի
հաջողության ու նրա արդյունավետության այնքան էլ վստահելի չափանիշ ու
միջոց չէ։

Մեր հանրապետությունում կազմակերպվում են զանազան տեսակի բազ-
մաթիվ միջոցառումներ։ Անկասկած այդ լավ է։ Սակայն մենք դեռևս չենք
կարող, թեկուզ մոտավորապես, ասել, թե դրանք որ չափով և ինչպես են ազ-
դել արտադրողականության, արտադրության կուլտուրայի, անհատի բարոյա-

կան, մտավոր ու հոգևոր զարգացման վրա։ Այդպիսի ուսումնասիրության բա-
ցակայությունն, անկասկած, բացասաբար է անդրադառնում երիտասարդության
ղեկավարման գործի գիտական, արդյունավետ, նպատակասլաց ու ճկուն կազ-
մակերպման վրա։

Դեռևս Վ. Ի. Լենինն իր ժամանակին ընդգծում էր, որ մասսաներին ճիշտ
ղեկավարելու համար, նրանց ներգործության ոլորտում պահելու և դաստիա-
րակման ճիշտ միջոցներ կիրառելու համար, առաջին հերթին, անհրաժեշտ է
լավ ճանաչել մարդուն, հասկանալ նրա մտքերն ու տրամադրությունները, հա-
վատալ ու վստահել նրան և, վերջապես, պարզել, թե ինչպե՞ս է նա ցանկա-
նում ռացիոնալ կերպով ղեկավարվել։

Այս հանգամանքներից ելնելով մեր Միության որոշ կենտրոններում գոր-
ծում են սոցիոլոգիական կոնկրետ ուսումնասիրության հանձնաժողովներ։ Ելնե-
լով Լենինգրադի հանձնաժողովի փորձից, ՀԼԿԵՄ Կենտկոմին կից այժմ ստեղծ-
ված է այդպիսի հանձնաժողով, որի հիմնական նպատակն է նպաստել երի-
տասարդության արդյունավետ ղեկավարմանը։

Փորձը ցույց է տալիս, որ երիտասարդության շրջանում տարվող աշխա-
տանքները կազմակերպելիս անհրաժեշտ է ձգտել այն բանին, որ օգտակարը
դառնա հաճելի, իսկ հաճելին՝ օգտակար:

«Գիտելիք» ընկերության երիտասարդական հանձնաժողովը բազմաթիվ
դասախոսություններ էր կազմակերպել սիրո, ընտանիքի, ամուսնության և
նման թեմաների շուրջ։ Դրանց մեծ մասն անցնում էր հետաքրքիր և օգտա-
կար։ Սակայն կյանքն արդեն թելադրում է, որ անհրաժեշտ է գտնել նոր ձևեր
ու եղանակներ՝ երիտասարդ ամուսիններին օգնելու համար։ Որոշվեց ստեղծել
«Նորապսակների ակումբ»։ Այդ ակումբի պարապմունքներում երիտասարդ
զույգերը ոչ միայն ստանում էին անհրաժեշտ գիտելիքներ, կոնսուլտացիաներ,
այլև ուրախանում էին պարելով, երգելով, դերասաններին ունկնդրելով և կա-
տակաբանություններ լսելով։ Այսպիսով, հնարավոր է ամրապնդել նորաստեղծ
ընտանիքը, այն պահել հասարակության հոգատարության ոլորտում, կազմա-
կերպել նրա հանգիստն ու բարձրացնել նրա մտավոր ու հոգևոր կուլտուրան։
Համանման հետաքրքրական միջոցառումներ են անցկացվում նաև Լենինակա-
նում, Հոկտեմբերյանում, Իջևանում և այլուր։

Փորձը ցույց է տալիս, որ ավելի արդյունավետ են լինում այն միջոցառում-
ները, որոնց իրականացման ընթացքում երիտասարդներն ավելի ակտիվ են ու
կարողանում են դրսևորել իրենց ինքնուրույնությունն ու անհատականությունը։
Պատահական չէ, որ դասախոսական պրոպագանդայի ձևերից ամենահետա-
քըրքրականն ու արդյունավետը բանավեճերն ու հարց ու պատասխանի երե-
կոներն են։ Դրանով պետք է բացատրել նաև Լենինականի հասարակական կար-
ծիքի ինստիտուտի և Իջևանի ինտերնացիոնալ ակումբի հաջողությունները։
Լենինականի այդ ինստիտուտում յուրաքանչյուր մասնակից իր կարծիքն է ար-
տահայտում հայրենի քաղաքի կյանքի զանազան կողմերին վերաբերող հար-
ցերի շուրջ և նշում դրանց իրականացման ուղիները։

Որոշ դեպքերում, սակայն, ընկնելով մյուս ծայրահեղության մեջ, մեր
միջոցառումները սահմանափակում ենք միայն հաճելիությամբ։ Կաֆեներում
կազմակերպված առանձին երեկոներում, օրինակ, երբեմն նույնիսկ խախտվում
են վայելուչ վարքի կանոնները, քաղաքավարության նորմերը։ Երեկոն վեր
է ածվում պարզ կերուխումի։ Զվարճանալը, մեր կարծիքով, որոշակի նպա-



տակ պետք է ունենա։ Այն կարող է պրոֆիլակտիկ նպատակներով ձեռնարկ-
վել, նրա նպատակը կարող է լինել արմատավորել համակեցության ու վայե-
լուչ վարքի կանոնները, մշակել խմբովին ուրախանալու ունակություններ։
Ուրախանալ կարողանալն ինքնին մեծ արվեստ է, կապված անհատի կազմա-
կերպվածության, գիտակցականության ու նրա բարոյական արժանիքների հետ,
հետևաբար, ուրախանալ սովորեցնելը շատ շնորհակալ գործ է։

Այս կապակցությամբ ցանկանում ենք բարձրացնել հոբբիների, անմիջա-
կան աշխատանքի հետ ուղղակիորեն կապ չունեցող որևէ մի բան սիրելու, որևէ
մի բանով հետաքրքրվելու հարցը. օրինակ, նամականիշներ, ինքնագրեր, զա-
նազան տեսակի կտրոններ հավաքելը, սոցիալական ու դաստիարակչական
նշանակությունը։ Մեզ մոտ անհիմն կերպով հոբբիների հարցն ու պրոպագան-
դումը տասներորդական պլանի վրա է մղված։

Ինչպես գիտենք, մեզ մոտ լայն տարածում ունեն մարզասիրությունն ու
երաժշտասիրությունը։ Մենք բոլորս էլ նկատում ենք, թե ինչպես շախմատով,
ֆուտբոլով, ձայնապնակներ, նամականիշներ հավաքելով տարվելն ու հրա-
պուրվելը, կինո և ֆոտո-նկարչությամբ զբաղվելը դրական ազդեցություն են
ունենում մարդու կյանքի վրա, նորանոր հետաքրքրասիրություններ ստեղծում
նրա մեջ, ապրումներ ու մտքեր առաջացնում։ Անկասկած, երիտասարդության
շրջանում այդպիսի բազմազան հոբբիների պրոպագանդումը և այդ սիրողներին
օգնելու և միավորելու համար հատուկ հասարակական կազմակերպություններ
ստեղծելը կնպաստեն երիտասարդության հաջող ղեկավարման գործին։

Տարօրինակ կերպով անտեսվել է նաև սեռական դաստիարակությունը։
Սեռի ու սիրո պրոբլեմը սոցիալական լուրջ հարց է, որն զգալի դեր է խաղում
երիտասարդի զարգացման գործում։ Սեռական դաստիարակության հարցերն
անուշադրության մատնելը շատ վնասակար երևույթներ է հարուցում։ Յուրա-
քանչյուր պատանի հասունանալով ակամա կարիք է զգում բացատրել այն սե-
ռական փոփոխություններն ու երևույթները, որոնք ազդում են իր ֆիզիոլո-
գիայի, հոգեբանության ու նույնիսկ մտավոր կարողությունների վրա։ Ո՞վ
պետք է նրան օգնի դրանց ճիշտ բացատրությունը գտնելու։ Եթե համապա-
տասխան կազմակերպությունները չզբաղվեն դրանով, ապա նա ստիպված
պետք է հավատա այն խիստ հակագիտական ու վնասակար բացատրություն-
ներին, որոնք նա ստանում է դեսից-դենից, պատահական մարդկանցից ու
նույնիսկ փողոցից։ Ինչպես դատական ու բժշկական վիճակագրությունն է
ցույց տալիս, ընտանեկան դժվարությունների և ապահարզանների որոշ մասը
նույնպես կապված է սեռական հարցերի ոչ ճիշտ, թերի կամ մակերեսային
պատկերացման հետ։ Փաստերով ապացուցված է, որ սեռական սանձարձակու-
թյան, բարոյական անկման և հանցագործության միջև գոյություն ունի օրգա-
նական կապ։ Ամուսնական հիգիենայի հարցերի լուսաբանությունը, սեռական
դաստիարակության հարցերին լուրջ ուշադրություն նվիրելը, անկասկած,
կնպաստեն երիտասարդության ղեկավարման գործին։

Երիտասարդության ղեկավարման գործը բարելավելու համար անհրաժեշտ
է նաև կոորդինացնել երիտասարդական կազմակերպությունների աշխատանքը՝
ստեղծելով երիտասարդական կազմակերպությունների գործունեությունը կոոր-
դինացնող հասարակական հանձնաժողով։

ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ հիմունքների դպրոց

# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ՕՍՈՍԿՈՎ

Կոմունիստական պարտիան մշտապես ներգործում է սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի, բոլոր ոլորտների վրա: Դրանցից գլխավորը, ինչպես մատնանշվում է ՍՄԿՊ ծրագրում, արտադրությունն է, էկոնոմիկան, այսինքն՝ այն ոլորտը, որտեղ անմիջականորեն ստեղծվում են նյութական արժեքները, որտեղ դրվում է կոմունիզմի հիմքը՝ նրա նյութա-տեխնիկական բազան: Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը մեր պարտիայի և սովետական ժողովրդի գլխավոր տնտեսական խնդիրն է: Ուստի, բնական է, որ պարտիան առաջնահերթ նշանակություն է տալիս տնտեսական շինարարության, արտադրության զարգացման հարցերին: Պարտիան ամենասևեռուն ուշադրությունն է դարձնում ժողովրդական տնտեսության ղեկավարումը բարելավելու պրոբլեմներին, անդադրում հոգ է տանում նրա է՛լ ավելի աճման ու կատարելագործման մասին: ՍՄԿՊ Կենտկոմի՝ վերջերս տեղի ունեցած սեպտեմբերյան պլենումը դրա ցայտուն օրինակն է:

Այն արմատական միջոցառումները, որոնք քննարկվեցին ու հաստատվեցին Կենտկոմի պլենումի կոլեկտիվ ջանքերով, կոչված են ապահովելու ոչ միայն մեր արդյունաբերության, այլև ամբողջ տնտեսության հետագա արագընթաց բարգավաճումը, աշխատավորների կենսամակարդակի նշանակալի բարձրացումը:

Ինչպես է պարտիան ներգործում արտադրության վրա, ուղղություն տալիս սոցիալիստական էկոնոմիկայի զարգացմանը անհրաժեշտ հունով: Այդ կապակցությամբ ի՞նչ խնդիրներ են ծառանում սկզբնական կազմակերպությունների, յուրաքանչյուր կոմունիստի առաջ:

## ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

Տնտեսական շինարարության բնագավառում պարտիայի ամբողջ պրակտիկ գործունեությունը հիմնվում է տնտեսությունը լենինյան սկզբունքներով ղեկավարելու վրա: Քննարկենք դրանցից կարևորագույնները:

Նախ և առաջ՝ դա գիտական, մարքսիստական մոտեցում է տնտեսական շինարարության, ժողովրդական տնտեսության կառավարման հարցերի լուծմանը: Որոշելով էկոնոմիկայի զարգացման հեռանկարները, վճռելով տնտեսական շինարարության գործնական հարցերը, պարտիան ղեկավարվում է մարքսիստական-լենինյան տեսությամբ, հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափություններով: Պարտիան իր տնտեսական քաղաքականության մեջ հաշվի է առնում և աշխատում է ավելի լավ ու ավելի լիակատար արտահայտել մեր հասարակության մեջ գործող տնտեսական օրենքների պահանջները, կյանքի հասունացած պահանջմունքները: Պարտիան վճռական պայքար է մղում սուբյեկտիվիզմի, արտադրության ղեկավարման նկատմամբ մարքսիստ-լենինյաններին խորթ վոլյունտարիստական մոտեցման դեմ:

Մշակելով տնտեսական շինարարության հարցերը, պարտիան ամփոփում և բազմակողմանիորեն հաշվի է առնում սոցիալիստական տնտեսավարման փորձը ՍՍՌՄ-ում և մյուս եղբայրական սոցիալիստական երկրներում, համաշխարհային գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները: Եվ այդ արտացոլվում է երկրի ժողովրդական տնտեսության զարգացման պլաններում: Պարտիան ջանում է պրակտիկայում արմատավորել արտադրության վերելքին նպաստող ամեն լավագույնը, ամեն առաջադիմականը: Յուրաքանչյուր ձեռնարկությունում, կառույցում, կոլտնտեսությունում, սովխոզում, հիմնարկում սկզբնական կազմակերպությունները, կոմունիստները ևս կոչված են իրենց ամենօրյա գործունեության մեջ ղեկավարվելու հենց այդ սկզբունքով:

Կոմունիստական պարտիան, ուղղություն տալով երկրի արտադրողական ուժերի զարգացմանը, մշտապես ելնում է, ինչպես սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, աշխատավորների արմատական շահերից, հաշվի է առնում նրանց կարիքներն ու պահանջմունքները, կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարի ընդհանուր շահերը: Պարտիայի համար բնորոշը քաղաքական մոտեցումն է տնտեսական, արտադրական և գիտա-տեխնիկական հարցերի լուծմանը: Մեր երկրում կառավարման կազմակերպական ձևերի ու մեթոդների հիմքում ընկած է քաղաքական ու տնտեսական ղեկավարման անխախտ սկզբունքը:

Պարտիայի և նրա բոլոր կազմակերպությունների կողմից տնտեսական շինարարությունը ղեկավարելու տարբերիչ առանձնահատկությունն այն է, որ նրանք արտադրության բնագավառում իրենց վրա վարչա-տնտեսական, կարգադրիչ ֆունկցիաներ չեն վերցնում: Նրանք արտադրության վրա ներգործում են համապատասխան պետական և տնտեսական մարմինների միջոցով, կադրերի հետ աշխատանք տանելու ճանապարհով: Պարտիան դեմ է այդ մարմինները պարտիական մարմիններով փոխարինելուն, ֆունկցիաները խառնելուն: Իսկ պարտիան ինչպե՞ս է գործնականում ուղղություն տալիս տնտեսական շինարարությանը, ներգործում արտադրության վրա:

Առաջին հերթին նա հասարակական զարգացման պահանջմունքների, ռեալ իրականության բազմակողմանի վերլուծության հիման վրա մշակում և որոշում է արտադրության ընդհանուր հեռանկարները, այն գլխավոր ճանապարհներն ու ուղղությունները, որոնցով պետք է ընթանա սոցիալիստական էկոնոմիկայի զարգացումը, դիրեկտիվներ ու ցուցումներ է տալիս տնտեսական շինարարության արմատական հարցերի վերաբերյալ: Այնուհետև պարտիայի կենտրոնական ու տեղական կազմակերպությունների միջոցով, կոմունիստների միջոցով սովետական, տնտեսական մարմինների, հասարակայնության, աշխատավորական լայն մասսաների գործունեությունն ուղղում է այն բանին, որ գործնականապես իրականացվեն մշակված տնտեսական քաղաքականությունը, իր դիրեկտիվները, հետևողականորեն հասնում է դրանց կենսագործմանը:

Արտադրության զարգացման ու կատարելագործման ուղղությամբ տարվող ամբողջ աշխատանքը, առանց բացառության, բոլոր մարմինների կող-

միջ ժողովրդական տնտեսության կառավարումը մեր երկրում տեղի է ունենում պարտիայի և կառավարության դիրեկտիվների և ղեկավար ցուցումների հիման վրա: Շատ կարևոր է, որ կոմունիստները լավ գիտենան դրանք, խորապես ըմբռնեն ՍՄԿՊ-ի և սովետական կառավարության տնտեսական քաղաքականության իմաստը և կոլեկտիվում իրենց ամբողջ աշխատանքը կառուցեն այնպես, որպեսզի պարտիայի և կառավարության դիրեկտիվների կատարումն ապահովվի բոլոր տնտեսական մարմինների, ամեն մի աշխատողի կողմից:

Կոմունիստական պարտիան տնտեսական շինարարությունում հետևողականորեն կենսագործում է դեմոկրատական ցենտրալիզմը: Դա նշանակում է երկրի էկոնոմիկայի կենտրոնացած, պլանային ղեկավարության զուգակցում տեղերի լայն նախաձեռնության հետ:

Վ. Ի. Լենինը դա համարում էր սոցիալիստական շինարարության կարևորագույն առանձնահատկությունը:

«Այժմ,— գրում էր նա,— մեր խնդիրն է՝ հատկապես դեմոկրատական ցենտրալիզմ կիրառել տնտեսության ասպարեզում, ապահովել գործունեության բացարձակ համերաշխություն և միասնություն այնպիսի տնտեսական ձեռնարկություններում, ինչպիսիք են՝ երկաթուղիները, փոստը, հեռագրատունը, տրանսպորտի այլ միջոցներ և այլն, և միևնույն ժամանակ իսկական դեմոկրատական իմաստով հասկացված ցենտրալիզմը նախատեսում է ո՛չ միայն տեղական առանձնահատկությունները, այլև տեղական ձեռներեցությունը, տեղական նախաձեռնությունը, ընդհանուր նպատակին հասնելու ուղիների, պրիոմների և շարժման միջոցների բազմազանությունը լրիվ և անարգել զարգացնելու պատմության մեջ առաջին անգամ ստեղծված հնարավորությունը» (Երկեր, հատ. 27, էջ 244):

Դեմոկրատական ցենտրալիզմը զարգանում է պարտիայի և սովետական պետության պրակտիկ գործունեության ընթացքում, տնտեսական շինարարությունում:

ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումներին համապատասխան արդյունաբերության տարբեր ճյուղերի կենտրոնացված կառավարումը ապահովում է միասնությունը արդյունաբերության ղեկավարման գործում, ուժեղացնում պլանային սկզբունքը, հնարավորություն է տալիս հետևողականորեն կիրառելու միասնական, արտադրողական ուժերի զարգացման շահերից բխող տնտեսական և տեխնիկական քաղաքականություն:

Մյուս կողմից, պլանավորումը կատարելագործելու, ղեկավարման տնտեսական մեթոդները լայնորեն արմատավորելու ուղղությամբ պարտիայի և կառավարության նախատեսած միջոցառումները է՛լ ավելի են դեմոկրատացնում արտադրության կառավարումը, նոր հնարավորություններ են բացում աշխատանքային ակտիվության, բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների ստեղծագործական նախաձեռնության զարգացման բուռն աճի համար՝ զանազան տնտեսական հարցերի լուծման, արտադրության կառավարման բնագավառում:

Այսպիսով, պետության կողմից էկոնոմիկայի, արտադրության կենտրոնացված ղեկավարումը մեր երկրում օրգանապես զուգակցվում է տեղական մարմինների ինքնուրույնության ու նախաձեռնության զարգացման, տնտեսական կյանքին լայն մասսաների գիտակցական մասնակցության, ներքևից եկող



մշտական վերահսկողության հետ: Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը է՛լ ավելի է զարգանում:

Իսկ դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքից ի՞նչ գործնական հետևություններ են բխում սկզբնական կազմակերպության, կոլեկտիվում նրա աշխատանքի համար: Ամենից առաջ՝ այն բանի անհրաժեշտությունը, որ նա իր տրամադրության տակ գտնվող բոլոր միջոցներով հասնի պետական պլանային կարգապահության խիստ պահպանմանը ադմինիստրացիայի, յուրաքանչյուր աշխատողի կողմից: Պարտիական կազմակերպությունը մոբիլիզացնում է կոլեկտիվին՝ կատարելու պետական պլանային առաջադրանքները, հետևում է, որ դրանք բոլոր ցուցանիշներով կենսագործվեն սահմանված ժամկետներին: Նա աշխատողներին դաստիարակում է այն ոգով, որ նրանք անշեղորեն պահպանեն պետական կարգապահությունը, ճշտորեն կատարեն պարտիայի ու կառավարության, վերադաս տնտեսական ու պլանային մարմինների բոլոր ցուցումներն ու կարգադրությունները: Պարտկազմակերպությունը, կոմունիստները վճռական պայքար են մղում թափթփվածության, տեղայնության, գերատեսչական ամեն տեսակ երևույթների դեմ:

Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր դարձնում աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը տնտեսական շինարարությունում: «Այժմ ամենագլխավոր խնդիրներից մեկն է, եթե ոչ ամենագլխավորը,— գրում էր նա 1917 թ. դեկտեմբերին,— ինչքան կարելի է լայն չափով զարգացնել բանվորների և ընդհանրապես բոլոր աշխատավորների ու շահագործվողների այդ ինքնուրույն նախաձեռնությունը ստեղծագործական կազմակերպական աշխատանքի բնագավառում» (Երկեր, հատ. 26, էջ 497):

Մեր պարտիան իր գործունեության մեջ անշեղորեն ղեկավարվում է լենինյան այդ դրույթներով: Պարտիայի՝ տնտեսական շինարարության ղեկավարման կարևորագույն, բնորոշ գծերից մեկը միշտ եղել և մնում է մասսաների ստեղծագործական նախաձեռնության մեջ աշխատանքային ակտիվություն արթնացնելու, նրանց վրա հենվելու, աշխատավորների մոբիլիզացման բոլոր ձևերն ու միջոցները տնտեսական կենսական խնդիրների լուծմանը ներարկելու հմտությունը: Այդպես վարվել պետք է սովորի նաև յուրաքանչյուր պարտիական կազմակերպություն: Կոմունիստները, սկզբնական պարտկազմակերպությունները կոչված են առավելագույն չափով օգտագործելու այն հարստագույն հնարավորությունները, որոնք ձեռնարկությունների իրավունքներն ընդլայնվելու, արտադրության զարգացումը պլանավորելու և տնտեսապես խթանելու նոր մեթոդներ ու ձևեր մտցվելու կապակցությամբ բացվում են նրանց առաջ՝ հանուն ընդհանուր բարիքի աշխատողներին ոգեշնչված և անձնուրաց աշխատանքի մոբիլիզացնելու և այդ հիման վրա ժողովրդա-տնտեսական պլանների անշեղ կատարումն ու գերակատարումը ապահովելու:

### ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆԵՐՆ ԵՆ

Արտադրությունն անմիջականորեն կազմակերպում ու կառավարում են ձեռնարկությունների ղեկավարները: Նախ և առաջ՝ նրանց վրա է ընկած պատասխանատվությունը արտադրության վիճակի, կոլեկտիվի աշխատանքի կազմակերպման ու դրա արդյունքների համար: Եվ պարտիական կազմակերպությունները, կոմունիստները կոչված են ակտիվ աջակցել տնտեսավարներին, օգնելու

նրանց՝ վերացնելու ծագող դժվարությունների ու թերությունները, կենսագոր-
ծելու բոլոր օգտակար նախաձեռնությունները:
Բայց նրանք կարո՞ղ են դրանով սահմանափակվել: Իհարկե, ո՛չ: Պարտ-
կազմակերպությունը, կոմունիստները պատասխանատվություն են կրում ար-
տադրության վիճակի համար, սեփական կոլեկտիվի ամբողջ տնտեսական գոր-
ծունեության համար: Նրանք կոչված են գործելու ակտիվ, նախաձեռնություն ու
հաստատակամություն դրսևորելու տնտեսական գործերում, աշխատանքում
ավանգարդային դեր խաղալու, աշխատավորների իսկական կազմակերպիչներ
լինելու, հանդես գալու որպես մրցության առաջամարտիկներ, ամեն մի նորի,
առաջադիմականի նախաձեռնողներ:

Դա բխում է այն վճռական դերից, որ ունեն արտադրությունը, էկոնոմի-
կան հասարակության կյանքում, կոմունիստական շինարարությունում: Երբ
մեր պարտիան իշխանության գլուխ անցավ, Վ. Ի. Լենինն ասում էր, որ այժմ
«...տնտեսական գործը մեր ընդհանուր գործն է: Մեզ համար ամենահետաքրքը-
րական քաղաքականությունն է այդ» (Երկեր, հատ. 32, էջ 554): Ուստի, այն
ամենը, ինչով զբաղվում է պարտկազմակերպությունը, վերջին հաշվով պետք
է նպաստի կոլեկտիվ տնտեսական գործունեության բարելավմանը, արտա-
դրության կատարելագործմանը, դրա կառավարմանը, եթե դա կառավարման
ապարատի հիմնարկության կոլեկտիվ է:

Կոմունիստներից, պարտկազմակերպություններից այդ է պահանջում նաև
ՍՄԿՊ կանոնադրությունը: Կանոնադրության համաձայն պարտկազմակերպու-
թյունը հոգ է տանում կոմունիստների ավանգարդային դերը բարձրացնելու
մասին, հանդես է գալիս որպես կազմակերպիչ կոմունիստական շինարարու-
թյան խնդիրները վճռելու գործում, գլխավորում է պետական պլանների ու
աշխատավորների պարտավորությունների կատարման համար ծավալվող մըր-
ցությունը, մասսաներին մոբիլիզացնում է ձեռնարկությունների ու սովխոզ-
ների ներքին ռեզերվները հայտաբերելու և ավելի լավ օգտագործելու, գիտու-
թյան, տեխնիկայի նվաճումներն ու առաջավորների փորձը արտադրության մեջ
լայնորեն արմատավորելու նպատակով, ձգտում է հասնել աշխատանքային
կարգապահության ամրապնդմանը, աշխատանքի արտադրողականության ան-
շեղ բարձրացմանը, արտադրանքի որակի բարելավմանը, հոգ է տանում հա-
սարակական հարստությունը պահպանելու և բազմապատկելու մասին:

Իսկ գործնականապես նա ինչպե՞ս է այդ անում:

Ամեն մի արտադրական պարտիական կազմակերպության, կոմունիստ-
ների հոգսն է ապահովել պետական պլանի՝ տնտեսական բոլոր ցուցանիշներով
կատարումը կոլեկտիվի կողմից: Զգտելով դրան, պարտիական կազմակերպու-
թյունը խորամուխ է լինում արտադրության հարցերում, ձեռնարկության, կա-
ռույցի, սովխոզի, կոլտնտեսության տնտեսական գործունեության բոլոր կող-
մերի մեջ: Բայց նա գործում է քաղաքական կազմակերպությանը հատուկ մե-
թոդներով, արտադրության արդյունքների վրա ազդում մարդկանց միջոցով,
կոլեկտիվում տարվող կազմակերպական և դաստիարակչական աշխատանքի
օգնությամբ: Զբաղվելով տնտեսության հարցերով, նա չի կարող ծայրահե-
ղությունների մեջ ընկնել: Պարտիական կազմակերպություններին նախազգու-
շացնելով այդպիսի վտանգից, դեռևս պարտիայի XVIII համագումարը իր բա-
նաձևում մատնանշում էր, որ «...այնտեղ, որտեղ պարտիական կազմակեր-
պությունները մի կողմ էին քաշվել տնտեսությունից, իրենց խնդիրները սահ-



մանափակելով ագիտացիայով, կամ այնտեղ, որտեղ պարտիական կազմա-
կերպությունները ստանձնել էին տնտեսության ղեկավարման՝ իրենց ոչ հա-
տուկ ֆունկցիաներ, փոխարինելով ու դիմազրկելով տնտեսական օրգաններին,
այնտեղ աշխատանքն անխուսափելիորեն ընկնում էր փակուղու մեջ
(«ՍՄԿՊ-ն... բանաձևերում», մաս III, էջ 471—472): Պարտիական կազմա-
կերպությունը միայն այն դեպքում կապահովի գործի հաջողությունը, եթե նա
կոլեկտիվում աշխատանքը տանի ճիշտ, այն հմտորեն ենթարկի արտադրության
զարգացման և կատարելագործման շահերին: Դրա համար նա հոգ է տանում
պարտիական ուժերը ճիշտ տեղաբաշխելու մասին, ամրապնդում է արտադրու-
թյան վճռական տեղամասերը, այնտեղ ստեղծում արտադրամասային պարտ-
կազմակերպություններ ու պարտխմբակներ:

Պլանի կատարումն ապահովելու ուղղությամբ տարվող իր աշխատանքում
պարտիական կազմակերպությունը միշտ և ամեն ինչում նախ և առաջ ելնում
է համաժողովրդական շահերից, հետևում է այն բանին, որպեսզի բոլոր տե-
ղամասերում գործի նկատմամբ պետական մոտեցում լինի, որպեսզի գործը
տարվի այն ընդհանուր խնդիրներին համապատասխան, որոնք ծառացած են
արտադրության բնագավառում և ձևակերպված են ՍՄԿՊ ծրագրում, պար-
տիայի և կառավարության դիրեկտիվներում: Եթե, ասենք, պարտկազմակեր-
պությունը տեսնում է, որ ամբողջությամբ վերցրած տնտեսության բարեհա-
ջող արդյունքների հետև թաքնված է պլանի չկատարելը բնեղենով, կամ ար-
տադրանքների արտադրությունը ձգձգվում է միախառնված մատակարարում-
ների հաշվին, նա անպայման խառնվում է գործին, ոտքի է հանում ադմի-
նիստրացիային, հասարակայնությանը, ամբողջ կոլեկտիվին՝ թերությունները
վերացնելու համար: Պարտիական կազմակերպությունների դերը հատկապես
բարձրանում է յուրաքանչյուր ձեռնարկությունում հնգամյա պլանները մշա-
կելու կապակցությամբ: Իրենց արտադրության զարգացման հեռանկարները
ծրագրելիս կոմունիստները մտածում են կոլեկտիվի բարգավաճման, նրա ակ-
տիվությունն ու նախաձեռնությունը բարձրացնելու, կոմունիզմի շինարարու-
թյան ընդհանուր գործում նրա ավանդը մեծացնելու մասին:

Պարտկազմակերպությունը, կոմունիստները ձգտում են հասնել այն բա-
նին, որ պետական պլանների կատարման ընթացքում անշեղորեն աճի աշ-
խատանքի արտադրողականությունը: Այդ պատճառով էլ պարտկազմակերպու-
թյունը հանդես է գալիս տեխնիկական պրոգրեսի, արտադրության կոմպլեք-
սային մեքենայացման և ավտոմատացման, արտադրության մեջ գիտության ու
տեխնիկայի նորագույն նվաճումների, առաջավոր փորձի լայն արմատավոր-
ման, մասսայական նորարարության ու գյուտարարության շարժման զարգաց-
ման համար մղվող պայքարի նախաձեռնող, վճռականապես հաղթահարում է
տեխնիկական հետամնացության, հնամոլության, քարացածության ամեն մի
երևույթ:

Կարևորագույն համապետական խնդիր է արտադրանքի որակի սիստեմա-
տիկ բարձրացումը: «Սովետական ձեռնարկությունների արտադրանքի որա-
կը,— ասվում է ՍՄԿՊ ծրագրում,— պետք է զգալիորեն բարձր լինի կապի-
տալիստական լավագույն ձեռնարկությունների արտադրանքի որակից»: Առա-
ջավոր կոլեկտիվները նպատակ են դրել առաջիկա տարիներին արտադրանքի
որակի մակարդակով հասնելու համաշխարհային լավագույն նմուշներին:

Այդ հանդամանքը պարտկազմակերպություններից պահանջում է բա-

ցատրական ու կազմակերպական մեծ աշխատանք կոլեկտիվներում: Նրանք
ձգտում են հասնել այն բանին, որ արդյունաբերական ձեռնարկություններում
հոգ տանեն արտադրությունը վերակառուցելու, սարքավորումը թարմացնելու,
ավելի կատարելագործված տեխնոլոգիական պրոցեսներ արմատավորելու մա-
սին, ավելի լավ սովորեցնեն մարդկանց նոր ձևով կազմակերպել աշխատանքը:
Այսուհետև այդպիսի աշխատանքը պլանային բնույթ է ընդունում: Ձեռնար-
կությունների պլանում մտցվում են տեխնիկական մակարդակի և արտադրան-
քի որակի ցուցանիշները, անհրաժեշտ միջոցներ են նախատեսվում, ինչպես
նաև արտադրանքի որակի պետական տեսակավորում է մտցվում:

Պարտկազմակերպությունները տնտեսական ղեկավարների, հասարակայ-
նության հետ միասին, ամենասևեռուն ուշադրությունն են դարձնում արտա-
դրության կազմակերպման, աշխատանքի և աշխատավարձի հարցերին, աշ-
խատանքի բարոյական ու նյութական խթաններ են զարգացնում: Օպերատիվ-
արտադրական պլանավորման մեթոդի արմատավորումը շատ կոլեկտիվների
օգնեց՝ վերացնելու գրոհայնությունը և հասնելու ձեռնարկությունների ռիթմիկ
աշխատանքին: Ուրալցիները հանդես եկան որպես աշխատանքի գիտական
կազմակերպման սկզբունքների արմատավորման նախաձեռնողներ, և այդ նա-
խաձեռնությունը աջակցություն գտավ: Սովխոզներում և կոլտնտեսություննե-
րում իրեն արդարացրեց աշխատանքի պրոգրեսիվ վարձատրությունը՝ ըստ
նրա վերջնական արդյունքի: Եվ շատ կարևոր է, որ այդ և մյուս նոր ձևերը
լայնորեն արմատավորվեն ամենուրեք, հասկանալի է, գործնականում, կոնկ-
րետ պայմաններում ստուգելուց հետո:

Պարտկազ-
մակերպությունների, յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվի հիմնական
խնդիրն է: Բայց արդյո՞ք այդ նշանակում է, թե պլանը կարելի է կատարել
ամեն գնով: Հասկանալի է՝ ո՛չ: Մեր պարտիան ձգտում է, որ տնտեսավարու-
թյունը տարվի հմտորեն, նյութական, աշխատանքային և ֆինանսական մի-
ջոցներն առավել ռացիոնալ և արդյունավետ օգտագործվեն: «Հանուն հասա-
րակության շահերի առավել շատ արդյունքներ՝ առավել քիչ ծախսեր կատա-
րելով — այդպիսին է տնտեսական շինարարության անխախտելի օրենքը»,—
ասվում է ՍՄԿՊ ծրագրում: Եվ պարտկազմակերպությունները, կոմունիստները
յուրաքանչյուր ձեռնարկությունում, յուրաքանչյուր կառույցում, կոլտնտեսու-
թյունում և սովխոզում հոգ են տանում, որ այդպես էլ լինի: Դրա համար տըն-
տեսավարների և մասնագետների հետ միասին նրանք ձգտում են ամրապնդել
տնտհաշվարկը, նվազեցնել արտադրության արտադրանքի վրա կատարվող
նյութական, դրամական և աշխատանքային ծախսերը, բարձրացնել տնտեսու-
թյան եկամտաբերությունը, խստորեն պահպանել խնայողության ռեժիմը:

Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի համար այժմ
սկզբունքային նշանակություն ունեն պարտիայի և կառավարության ձեռնար-
կած միջոցները: Դրանք ընդլայնում են ձեռնարկությունների տնտեսական
ինքնուրույնությունը՝ արտադրության պլանավորումը կատարելագործելու և
տնտեսական խթանումն ուժեղացնելու հիման վրա: Նոր պայմաններում խնա-
յողության ռեժիմը կդառնա տնտեսավարման իսկական արդյունավետ մեթոդ:
Եվ այդ բոլոր միջոցառումների առաջին կենսագործողները պետք է լինեն
պարտկազմակերպությունները, կոմունիստները:

Հենց նույն ձևով էլ իրենց պրոգրեսիվ ներգործությունն են ունենում գյու-



ղատնտեսական արտադրանքի վերելքի միջոցառումները, որոնք մշակվում են
կոլեկտիվներում՝ ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումների հիման
վրա: Այդպիսի միջոցառումների օգնությամբ պարտկազմակերպություններն
ավելի հաջողությամբ են մոբիլիզացնում աշխատավորներին՝ արտադրության
զարգացման գործում:

Կոլեկտիվների ջանքերն ուղղելով արդյունաբերական և գյուղատնտեսա-
կան արտադրության խնդիրների լուծմանը, պարտիական կազմակերպություն-
ները դրանք կոնկրետացնում են այն ձեռնարկության կամ տնտեսության
պայմաններին, առանձնահատկությանը համապատասխան, որտեղ այդ կազ-
մակերպությունները գործում են: Այսպես, օրինակ, կառույցներում, զբաղվե-
լով արտադրության հարցերով, պարտկազմակերպությունները կոլեկտիվներին
ուղղություն են տալիս՝ շինարարության արդյունավետությունը բարձրացնելու,
արագ իրացնելու կապիտալ ներդրումները և օբյեկտները շահագործման հանձ-
նելու համար: Տրանսպորտում պարտկազմակերպությունների ուշադրության
կենտրոնում են գտնվում այնպիսի հարցեր, ինչպես լոկոմոտիվային պարկի
վերահագեցվածությունն է, անցումը ջերմաքարշին և էլեկտրաքարշին, ապ-
րանքաշրջանառության մեծացումը և արագացումը, բեռնման-բեռնաթափման
մեքենայացումը և այլն:

Կոլտնտեսությունների կոմունիստներն իրենց ջանքերն ուղղում են հողա-
գործության ու անասնաբուծության ինտենսիֆիկացմանը, հողերն ու հանդակ-
ները ռացիոնալ օգտագործելուն, կոլտնտեսային դեմոկրատիան զարգացնելուն
և այլն:

Արտադրության զարգացումը, պլանների կատարումը ապահովում են մար-
դիկ, կադրերը: Ուստի պարտիական կազմակերպությունը մասնակցում է կադ-
րերի ընտրությանն ու դասավորմանը, հետևում է այն բանին, որպեսզի նրանց
պատրաստականության մակարդակը համապատասխանի արտադրության պա-
հանջմունքներին: Պարտկազմակերպությունն օգնում է՝ կոլեկտիվում ճիշտ
հիմքերի վրա դնելու կադրերի ուսուցումն ու դաստիարակությունը, ձգտում է
նրանց մեջ մշակել բարձր պատասխանատվության զգացում հանձնարարված
գործի, իր պարտականությունների բարեխիղճ կատարման, բարձր աշխատան-
քային արտադրական կարգապահության համար: Ինչպես հայտնի է, Վ. Ի.
Լենինը բազմիցս ընդգծում էր բոլոր աշխատողներին գիտակցական ընկերա-
կան կարգապահության ոգով դաստիարակելու անհրաժեշտությունը: Նա մատ-
նանշում էր, որ միայն այն ժամանակ, երբ սոցիալիստական կարգապահու-
թյուն ստեղծվի, կոմունիզմն իրոք անպարտելի կդառնա:

Պարտկազմակերպությունը աշխատավորներին լայնորեն ներգրավում է
արտադրության բոլոր հարցերի լուծման գործում: Այժմ, երբ տնտեսությունը
կառավարելու, արտադրության զարգացումը խթանելու ոլորտում տնտեսա-
կան լծակների դերը զգալիորեն աճում է, առանձնապես կարևոր է այդ: Պարտ-
կազմակերպությունները պետք է խորապես շահագրգռված լինեն արտադրու-
թյան կառավարմանը աշխատավորների լայն և անմիջական մասնակցությանն
ապահովող բոլոր հասարակական ձևերի՝ մշտապես գործող արտադրական
խորհրդակցությունների ու բանվորական ժողովների, նորարարների ու գյու-
տարարների միությունների և տնտեսական վերլուծության նորմավորման գի-
տա-տեխնիկական, հասարակական բյուրոների լավագույն օգտագործման
հարցում: Նրանք կոչված են՝ բարձրացնելու արհմիութենական և կոմերիտա-

կան կազմակերպությունների դերը արտադրության հարցերի լուծման բնագավառում, կոլեկտիվի ամբողջ կյանքում։ Դա ամենաճիշտ ուղին է՝ տնտեսական-քաղաքական խնդիրների կենսագործման նպատակով մասսաների ստեղծագործական ակտիվությունը զարգացնելու, նրանց հաջողությամբ մոբիլիզացնելու համար։

Գլխավորելով և հունի մեջ դնելով կոլեկտիվի պայքարը արտադրության զարգացման և կատարելագործման, բարձր տնտեսական ցուցանիշների նվաճման համար, պարտկազմակերպությունները լայնորեն օգտագործում են ադմինիստրացիային վերահսկելու իրենց վերապահված իրավունքը։ Դա մի հզոր լծակ է, որի օգնությամբ նրանք ներգործում են արտադրական կոլեկտիվի ամբողջ կյանքի ու գործունեության վրա, և այն հմտորեն օգտագործելը կարևոր է։ Իսկ ի՞նչ իրավունք է այդ։ Ի՞նչ դեր է խաղում ներքևից եկող վերահսկողությունը, կոմունիստների վերահսկողությունը, մասսաների վերահսկողությունը արտադրության նկատմամբ։

### ՄԻԱՆՁՆՅԱ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆԸ

Տնտեսությունը ղեկավարելու կարևորագույն սկզբունքներից մեկը միանձնյա ղեկավարությունն է։ Միանձնյա ղեկավարության անհրաժեշտությունը բխում է հենց արդի արտադրության բնույթից։ «... անառարկելի ենթարկումը միասնական կամքին՝ խոշոր մեքենայական ինդուստրիայի տիպով կազմակերպված աշխատանքի պրոցեսների հաջողության համար՝ անպայման անհրաժեշտ է»,— մատնանշում էր Վ. Ի. Լենինը (Երկեր, հատ. 27, էջ 323)։ Այն ձեռնարկությունում, ուր չկա միանձնյա ղեկավարություն, չի կարող լինել ամենատարրական կարգ, որը նորմալ արտադրական գործունեության հիմնական պայմանն է։ Այդ պատճառով էլ Կենտրոնական կոմիտեի որոշումներում բազմիցս ուշադրություն էր նվիրվում այն բանին, որ պարտիական կազմակերպությունները պարտավոր են ամեն կերպ ամրապնդել միանձնյա ղեկավարությունը, բարձրացնել տնտեսական ղեկավարների հեղինակությունը, ապահովել ամուր արտադրական կարգապահություն ձեռնարկություններում։

Եվ ՍՄԿՊ կանոնադրությունը, միևնույն ժամանակ, սկզբնական պարտկազմակերպություններին իրավունք է վերապահում վերահսկելու ադմինիստրացիայի գործունեությանը։ Մեկը մյուսին չի՞ հակասում արդյոք։

Ո՛չ, չի հակասում, և ահա թե ինչու։ Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծում էր, որ տնտեսության կառավարման սովետական սկզբունքների հիմքում ընկած է պարտադիր միանձնյա ղեկավարության զուգորդումը ներքևից եկող մասսայական վերահսկողության կենսագործման բնագավառում ամենալայն դեմոկրատիայի հետ։ «Որքան ավելի վճռականորեն մենք պետք է պաշտպանենք այժմ անողոք, կայուն իշխանությունը, առանձին անձերի դիկտատուրան աշխատանքի որոշ պրոցեսների համար, զուտ գործադիր ֆունկցիաների որոշ մոմենտներում, այնքան ավելի բազմազան պիտի լինեն վերահսկողության ձևերն ու եղանակները ներքևից, որպեսզի սովետական իշխանության խեղաթյուրման հնարավորության ստվերն անգամ վերացվի, որպեսզի կրկնակի և անխոնջ կերպով պոկոտվի բյուրոկրատիզմի մոլախոտը» (Երկեր, հատ. 27, էջ 331)։ Եվ մեր պարտիան զարգացնում ու կատարելագործում է մասսաների վերահսկողությունը տնտեսական գործունեության նկատմամբ, վերահսկողությունը ներ-



քևից։ Այդ վերահսկողության կենսագործման կոնկրետ ձևերն ու եղանակները սոցիալիստական շինարարության տարբեր էտապներում փոփոխվել, հարթվել և կատարելագործվել են։ Բայց այդպիսի հսկողության ոգին, նրա կազմակերպիչները մշտապես եղել են նախ և առաջ կոմունիստները։ Եվ դա լիովին արդարացրել է իրեն։

Երբ նկատելիորեն ամրապնդվեցին սկզբնական պարտկազմակերպությունները, զգալիորեն ամրացավ նրանց կապը մասսաների հետ, աճեցին կոմունիստների դերն ու հեղինակությունը աշխատավորների շրջանում, պարտիայի XVIII համագումարում (1939 թվական) նրանց վերապահվեց ձեռնարկության, սովխոզի կամ կոլտնտեսության գործերի վիճակի նկատմամբ վերահսկողության իրավունք կամ, ինչպես մենք այն անվանում ենք՝ ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունք (տե՛ս «ՍՄԿՊ»-ն... բանաձևերում...», մաս III, էջ 472)։ Պարտիայի հետևյալ՝ XIX համագումարում (1952 թվական), այդպիսի իրավունք վերապահվեց նաև առևտրական ձեռնարկությունների, անմիջականորեն արտադրության հետ կապված նախագծային կազմակերպությունների, կոնստրուկտորական բյուրոների, գիտա-հետազոտական ինստիտուտների պարտիական կազմակերպություններին։

Պարտիական կազմակերպություններին ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունք վերապահելը ամենևին էլ չի նսեմացնում միանձնյա ղեկավարության սկզբունքը, այլ, ընդհակառակը, զարգացնում է այն, հարստացնում նոր բովանդակությամբ։ Ինչպես մատնանշվել է պարտիայի XVIII համագումարում, սովետական միանձնյա ղեկավարությունն ամենևին էլ արտադրական կոլեկտիվին հրամայելը չէ՝ առանց հիմնվելու ակտիվի, մասսայի վրա։ Այդ ղեկավարության էությունը գործը կազմակերպելու, կադրեր ընտրելու, ճիշտ կարգադրություն անելու, դրա կատարումը պահանջելու, անպատասխանատվությունն ու դիմազրկությունը վերացնելու հմտությունն է։ Այն նշանակում է՝ կարողանալ այդ աշխատանքում հիմնվել ձեռնարկության պարտկազմակերպության, ակտիվի, ամբողջ կոլեկտիվի վրա։

Վերջին հաշվով նույն նպատակներն է հետապնդում նաև ադմինիստրացիայի գործունեության պարտիական վերահսկողությունը։ Կենսագործելով այդ վերահսկողությունը, պարտկազմակերպությունը, կոմունիստները տնտեսական ղեկավարներին օգնում են ճիշտ, ավելի խելացի օգտագործել իրենց լիազորությունները, ավելի լավ կատարել արտադրության կառավարման գծով նրանց վրա դրված պարտավորությունները, ապահովել պետական պլանների, առաջադրանքների և պատվերների կատարումը։ Ուստի սովետական տնտեսավարը նախ և առաջ ինքն է խորապես շահագրգռված, որպեսզի ներքևից եկող վերահսկողությունը կենսագործվի լայնորեն և մշտապես, որովհետև այդպիսի վերահսկողությունը նպաստում է, որ թերությունները բացահայտվեն ժամանակին և դրանց վերացման համար մղվող պայքարում ներգրավվեն ո՛չ միայն մեծ թվով մարդիկ, այլև այնպիսի հեղինակավոր, հզոր ուժ կոլեկտիվում, ինչպիսին պարտկազմակերպությունն է, կոմունիստները։

Իսկ ինչո՞ւմ է ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքը։ Դա սկզբնական պարտկազմակերպության, որպես ամբողջ կոլեկտիվի առաջավոր մասի, իրավունքն է՝ տնտեսական ղեկավարներից պահանջել անշեղորեն կատարել պարտիայի և կառավարության դիրեկտիվները, խստորեն պահպանել սովետական օրենսդրությունը։ Դա՝ ադմինիստրացիայի հաշվե-

տվությունները լսելու, գործը տեղում ստուգելու, անհրաժեշտ փաստաթղթերին ծանոթանալու, որոշակի հետևություններ անելու և իր նկատառումներն արտահայտելու, իր հանձնարարականները տալու իրավունքն է՝ հենվելով համապատասխան պարտիական փաստաթղթերի և գոյություն ունեցող օրենքների վրա։ Տնտեսական գործունեության մասին ճիշտ դատողություններ անելու, այդ գործունեությունը բարելավելու, սխալները վերացնելու և կանխելու համար կոմունիստները պետք է խորամուխ լինեն արտադրության, էկոնոմիկայի հարցերում։

Պարտկազմակերպության վերահսկողության ներքո, կոմունիստների տեսադաշտում են գտնվում ձեռնարկության ամբողջ գործունեությունը, նրա կյանքի բոլոր կողմերը՝ սկսած արտադրական պլանների կատարումից՝ մինչև յուրաքանչյուր աշխատավորի մասնակցությունը կոլեկտիվի կյանքին։ Բայց նրանք գլխավոր ուշադրությունը կենտրոնացնում են առավել կարևոր հարցերի վրա, որոնց լուծումից էլ, առաջին հերթին, կախված է արտադրական-տնտեսական կենսական խնդիրների հաջող կենսագործումը։ Այժմ, երբ արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ անսահման աճում է տնտեսավարման՝ տնտեսական մեթոդների, կոլեկտիվ և անձնական նյութական շահագրգռվածության դերը, զգալիորեն լայնանում է ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունը, պահանջվում է ուժեղացնել պարտիական վերահսկողությունը ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, այն ավելի արդյունավետ դարձնել։

Տնտեսական գործունեության այս կամ այն հարցն ավելի խորազնին և բանիմաց ուսումնասիրելու նպատակով, սովորաբար, կոմունիստներն իրենց շարքերից առանձնացնում են առավել հեղինակավոր և ձեռնհաս ընկերների, ստեղծում հանձնաժողովներ։ Նրանք վերլուծում են գործերի վիճակը և իրենց հետևություններն ու առաջարկությունները ներկայացնում պարտիական ժողովների կամ գործադիր մարմնի (պարտկոմի, պարտբյուրոյի) քննարկմանը։ 1959 թվականին ՍՄԿՊ Կենտկոմի որոշմամբ արտադրական և առևտրական ձեռնարկությունների սկզբնական կազմակերպություններում ստեղծվեցին մշտական հանձնաժողովներ ադմինիստրացիայի գործունեության վերահսկողությունն իրականացնելու համար։ Թե ինչպիսի և քանի հանձնաժողովներ են հարկավոր ստեղծել յուրաքանչյուր կազմակերպությունում, որոշում են իրենք՝ կոմունիստները, այդ հանձնաժողովների կազմն ընտրելով բաց քվեարկությամբ, իրենց ժողովներում ու կոնֆերանսներում։ Այդպիսի հանձնաժողովները չեն սահմանափակվում թերություններ հայտաբերելով և առաջարկություններ կազմելով, այլև ակտիվ մասնակցում են ճեղքվածքներ ու թերություններ ծնող պատճառների վերացմանը, աշխատում մեծաթիվ մարդիկ ներգրավել արտադրությունը բարելավելու ուղղությամբ ձեռնարկվող միջոցների կենսագործմանը։

Երկրում պարտիական, պետական վերահսկողության սիստեմի, ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկներում, ուսումնական հաստատություններում, տնային կառավարչություններին կից պարտիական-պետական վերահսկողության մարմիններին օժանդակող խմբերի ու կետերի ստեղծումը հնարավորություն տվեց աշխատավորների մի հսկայական բանակ ներգրավելու արտադրության կառավարման գործում։



Պարտիական կազմակերպություններն ուղղություն են տալիս պարտիական-պետական վերահսկողությանն օժանդակող խմբերի և կետերի գործունեությանը, իսկ կոմունիստները, մյուս հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչների հետ միասին, ակտիվ մասնակցում են նրանց աշխատանքին։ Կոմունիստները խմբերի ու կետերի կազմում աշխատելու համար ուղարկում են իրենց ընկերներին, վերջիններիս ընտրելով ժողովներում, բաց քվեարկությամբ։ Օժանդակող խմբերի կազմում հաճախ ստեղծվում են մշտական կամ ժամանակավոր հանձնաժողովներ, սեկտորներ։ Նրանք հենվում են ակտիվի վրա, ստուգումներին ներգրավում են գործին քաջատեղյակ մարդկանց։

Օժանդակող խմբերն ու կետերը օգնում են պարտիական ու պետական մարմիններին՝ սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման, պարտիայի և կառավարության դիրեկտիվների փաստական կատարման սիստեմատիկ և պատշաճ ստուգման ուղղությամբ տարվող նրանց աշխատանքում։ Նրանք կազմակերպում են ստուգումներ, ռեյդեր, զննություններ, փաստաթղթային ռևիզիաներ, որոնց հիման վրա հետևություններ ու առաջարկություններ են մշակում։ Ձեռնարկության ղեկավարը քննության է առնում դրանք և միջոցներ ձեռնարկում դրանց կատարման համար։ Բոլոր դեպքերում, եթե ադմինիստրացիան ժամանակին միջոցներ չի ձեռնարկում հայտաբերված թերությունները վերացնելու ուղղությամբ, հարցը մտցվում է պարտկոմի, պարտժողովի քննարկմանը, կամ ներկայացվում է վերադաս կազմակերպության հայեցողությանը։

Ինչպես հայտնի է, արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում, տրանսպորտային, առևտրական և կոմունալ-կենցաղային կազմակերպություններում արտադրության նկատմամբ հասարակական վերահսկողության այլ ձևեր ևս կան։ Դրանք աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի գծով արհմիութենական հանձնաժողովներն են, «Կոմերիտական լուսարձակը», արշավային բրիգադները և այլն։ Դրանք գործում են խմբերի ու կետերի հետ սերտորեն համագործակցված։ Վերահսկողության բոլոր ձևերի գործունեությունը յուրաքանչյուր կոլեկտիվում համաձայնեցվում է պարտիական կազմակերպության հետ և ուղղություն է տրվում նրա կողմից։ Պարտկազմակերպությունը հասնում է վերահսկողության բարձր արդյունավետության։

### ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ ՈՉ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Բնակչության սպասարկման և պետական կառավարման ոլորտի կոլեկտիվների աշխատանքային գործունեությունն իր նշանակությամբ, խնդիրներով և պայմաններով էականորեն տարբերվում է այն կոլեկտիվների աշխատանքից, որոնք զբաղված են նյութական արտադրության ոլորտում։ Այդ հանգամանքն էլ հենց պայմանավորում է պարտիական աշխատանքի յուրատեսակ առանձնահատկությունները այդպիսի կազմակերպություններում։ Բայց այստեղ ևս կոմունիստները կոչված են ավանգարդային դեր խաղալու բոլոր գործերում, համառորեն հասնելու կոլեկտիվի առաջ ծառացած խնդիրների հաջող կատարմանը, ձեռնարկության կամ հիմնարկի վրա դրված ֆունկցիաների հստակ կենսագործմանը։

Առևտրի, հասարակական սննդի, կենցաղ-սպասարկման ձեռնարկությունների պարտկազմակերպությունները, կոմունիստները իրենց հիմնական ջանքերն ուղղում են այն բանին, որպեսզի կարգավորվի աշխատավորների կեն-

սական կարիքների ու պահանջմունքների անխափան բավարարումը, ձգտում
են հասնելու ապրանքաշրջանառության պլանի կատարմանը, արտադրության
ծախքերի կրճատմանը, բնակչության սպասարկման բարձր կուլտուրայի։ Կեն-
սագործելով ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրենց իրա-
վունքը, պարտկազմակերպությունները, առաջին հերթին, հետևում են, որպեսզի
այդպիսի կազմակերպություններում աշխատանքի ընդունվեն բարեխիղճ, ազ-
նիվ մարդիկ, որպեսզի նրանք մշտապես բարձրացնեն իրենց գործարար որա-
կավորումը, խնամքով վերաբերվեն վստահված նյութական արժեքներին, ար-
մատախիլ անեն հափշտակություններն ու յուրացումները։ Կոմունիստները կոչ-
ված են աշխատավորներին զգայուն վերաբերվելու օրինակ ցույց տալ և բո-
լոր աշխատողներին համառորեն դաստիարակել նույն ոգով։
Ի տարբերություն արտադրական տիպի պարտկազմակերպությունների,
ինչպես տեղական, այնպես էլ կենտրոնական սովետական պետական հիմ-
նարկների ու գերատեսչությունների պարտկազմակերպությունները ադմի-
նիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունքից չեն օգտվում։ Այն
հանգամանքը, որ այդ կազմակերպություններն օժտված չեն վերահսկողու-
թյան իրավունքով, պայմանավորված է պետական հիմնարկների՝ որպես կա-
ռավարման մարմինների, աշխատանքի առանձնահատկություններով։ Եթե,
ասենք, մինիստրության կամ մարզգործկոմի պարտկազմակերպությունը օգտ-
վեր ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունքից, ապա
այդ կազմակերպության կոմունիստներին կվիճակվեր խորամուխ լինել ո՛չ
միայն սեփական հիմնարկության ապարատի, այլև մի ամբողջ շարք այլ կո-
լեկտիվների աշխատանքի մեջ։ Այդ իրավունքը նրանք չունեն, մյուս կոլեկ-
տիվներն ունեն իրենց պարտկազմակերպությունները։ Հիմնարկներին, կառա-
վարման ապարատին ղեկավարում են շրջանային, քաղաքային, մարզային և
այլ պարտիական կոմիտեները։
Հիմնարկի պարտկազմակերպության՝ ադմինիստրացիայի գործունեությա-
նը վերահսկելու իրավունք չունենալը չի նշանակում, թե նա չի կարող խորա-
մուխ լինել տվյալ հիմնարկի ապարատի աշխատանքի վիճակի մեջ, ազդել աշ-
խատանքի վրա։ Ընդհակառակը, հիմնարկների կոմունիստները, պարտկազ-
մակերպությունները ո՛չ միայն կարող են, այլև պարտավոր են ապահովել
պարտիայի և կառավարության դիրեկտիվների կատարումը, ապարատի հըս-
տակ աշխատանքը, ծառայողներին դաստիարակել հանձնարարված գործի
նկատմամբ բարձր պատասխանատվության ոգով, ամրապնդել աշխատանքա-
յին և պետական կարգապահությունը, պայքարել բյուրոկրատիզմի և քաշքշուկի
դեմ, բացահայտել հիմնարկի և առանձին աշխատողների գործունեության մեջ
եղած թերությունները, դրանց մասին ժամանակին տեղեկացնել համապատաս-
խան պարտիական և պետական մարմիններին։ Նրանք պետք է մշտապես հաշ-
վի առնեն կառավարման ապարատի հսկայական նշանակությունը արտադրու-
թյան զարգացման համար։
Պարտկազմակերպությունը իրավասու է լսելու ղեկավարի ղեկուցումը
ապարատի աշխատանքի հրատապ հարցերի մասին, քննարկել այդ ապարատի
առաջ ծառացած նոր խնդիրները։ Ամեն մի ղեկավար շահագրգռված է այն
բանում, որպեսզի կոլեկտիվում գործարար առաջարկություններ մշակվեն, քըն-
նադատական դիտողություններ արվեն ապարատի աշխատանքի վերաբերյալ։
ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի և ՍՍՌՄ Գերագույն սովետի



որոշումներին համապատասխան սկսվել է մինիստրությունների և տեղերում
նրանց ենթաբաժանմունքների ստեղծումը։ Նոր հիմնարկների պարտիական
կազմակերպությունների առաջ ծառացել է մեծ և պատասխանատու աշխա-
տանք։ Նրանք պետք է ամեն կերպ օգնեն՝ ապահովելու արտադրության կոնկ-
րետ և օպերատիվ ղեկավարությունը, հոգ տանեն ապարատի աշխատողների
դաստիարակության, նրանց գործարար որակավորումը բարձրացնելու մասին,
ապարատի հստակ աշխատանքի մասին։

## ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

Սոցիալիստական մրցությունը փորձված միջոց է ար-
տադրական խնդիրների կատարման համար մասսանե-
րին մոբիլիզացնելու, աշխատավորների ստեղծագործա-
կան նախաձեռնությունը զարգացնելու, տնտեսական շի-
նարարության մեջ նրանց ներգրավելու, աշխատանքի
նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու գործում։
Պարտկազմակերպությունը գլխավորում է մրցությունը արտադրությու-
նում։ Խորհուրդներով, կոմունիստների անձնական օրինակով, կոլեկտիվում
տարած իր բացատրական աշխատանքով ամեն կերպ օգնում է արհեստակցա-
կան կազմակերպություններին, որոնք անմիջականորեն կազմակերպում են
մրցությունը։
Կոմունիստները ձգտում են ապահովել մրցության կազմակերպման լենին-
յան սկզբունքները՝ լայն հրապարակայնություն, արդյունքների համադրելիու-
թյուն, առաջավոր փորձը գործնականում կրկնելու հնարավորություն, աշխա-
տանքում ընկերական փոխադարձ օգնություն։
Մրցության ավելի լայն հրապարակայնություն տալու համար պարտկազ-
մակերպությունը արհմիության, ամբողջ հասարակայնության հետ միասին այդ
նպատակով լայնորեն օգտագործում է ագիտացիան, պատի թերթը և բազմա-
տիրած մամուլը, ժողովները և արտադրական խորհրդակցությունները։
Պարտկազմակերպությունը բոլոր միջոցները ձեռք է առնում, որպեսզի
յուրաքանչյուր կոլեկտիվում արհմիությունը հստակորեն մշակի և իրազեկ
դարձնի մրցության բոլոր պայմաններին, որպեսզի ժամանակին մշակվեն, քըն-
նարկվեն և ընդունվեն մրցության այնպիսի կոլեկտիվ և անհատական պար-
տավորություններ ու փոխադարձ պայմանագրեր, որոնք նպաստեն արտադրա-
կան առաջադրանքների ու արտադրանքի նորմաների հաջող կատարմանը, աշ-
խատողներին նպատակամղեն բարձրացնելու աշխատանքի արտադրողակա-
նությունը, օգտագործելու ռեզերվները, հասնելու տնտեսական բարձր ցուցա-
նիշների։
Ադմինիստրացիայի և արհմիութենական կազմակերպության հետ միասին
պարտկազմակերպությունը հոգ է տանում, որպեսզի մրցողների համար ան-
հրաժեշտ պայմաններ ստեղծվեն ստանձնած բոլոր պարտավորությունները
հաջողությամբ կատարելու, կանոնավոր ամփոփվեն և քննարկվեն դրանց
կատարման արդյունքները, որոշվեն հաղթողները, իսկ առավել լավագույն ար-
դյունքների հասած աշխատողները խրախուսվեն բարոյապես և նյութապես։
Պարտիական կազմակերպությունը պարտավոր է հոգ տանել հաղթողների բա-
րոյական ու նյութական խրախուսանքի ներդաշնակ սիստեմ մշակելու մասին։
Չէ որ, ինչպես ասում էր Վ. Ի. Լենինը, «Գերազանցությունը հարվածայնության
մեջ գերազանցություն է նաև սպառման մեջ» (Երկեր, հատ. 32, էջ 14)։

նում է կանգ առնել պարտիական կազմակերպությունների աշխատանքի առանձնահատկությունների վրա, այսպես կոչված, ոչ արտադրական կոլեկտիվներում, այսինքն՝ այնպիսի կազմակերպություններում ու հիմնարկներում, ինչպիսիք են՝ խանութը, ճաշարանը, հիվանդանոցը, բնակկառավարչությունը, մինիստրությունը և այլն: Ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքի, ինչպես նաև տնտեսության ղեկավարման մեթոդները կատարելագործելու բնագավառում պարտիական-պետական վերահսկողության մարմիններին օժանդակող խմբերի ու կետերի մեծ նշանակության մասին հարկավոր է խոսել չորրորդ հարցը քննարկելիս: Զրույցի եզրափակիչ մասը նվիրվում է մրցությանը, այն բանը պարզելուն, թե մասսաների աշխատանքային ակտիվության զարգացմանն ինչպես են մասնակցում արհմիությունները, կոմերիտմիությունը, տեղական մամուլը, ինչպես են օգտագործվում բարոյական և նյութական խթանները սոցիալիստական մրցությունը ծավալելու, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու բնագավառում:

Զրույցին նախապատրաստվելու համար որպես հիմնական նյութ են ծառայում ծրագրում մատնանշված Վ. Ի. Լենինի աշխատությունները, ՍՄԿՊ ծրագիրը (մաս II, I և II նեթարաժինները), պարտիայի կանոնադրությունը (VI նեթարաժինը), ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան (1965 թ.) և սեպտեմբերյան (1965 թ.) պլենումների որոշումները, ինչպես նաև այնպիսի օժանդակ հրատարակություններ, ինչպես՝ «Սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարի տեղեկատուն» և «Ժողովրդական վերահսկիչի տեղեկատուն»: Օգտակար է նաև կարդալ Ս. Կրավչենկոյի՝ վերջերս լույս ընծայված «Զրույցներ ՍՄԿՊ սկզբնական կազմակերպությունների մասին» գրքույկի համապատասխան նեթարաժինները:

Խիստ ցանկալի է, որ ունկնդիրները լրիվ կարդան Վ. Ի. Լենինի «Սովետական իշխանության հերթական խնդիրները» աշխատությունը (Երկեր, հատ. 27, էջ 279—333), որտեղ համոզիչ կերպով ցույց է տրված, թե աշխատավոր մասսաներն ինչ դեր են խաղալու երկրի տնտեսական կյանքում՝ սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո:

Վ. Ի. Լենինի մյուս աշխատություններից ունկնդիրներին կարելի է հանձնարարել առանձին կտորներ, օրինակ, «Ինչպե՞ս կազմակերպել մրցությունը» (Երկեր, հատ. 26) աշխատության 493—502 էջերը, ուր խոսվում է հաշվառման ու վերահսկողության, որպես սոցիալիստական պետության տնտեսական խնդրի, մասին. «Մեծ նախաձեռնություն»-ում (Երկեր, հատ. 29) օգտակար է կանգ առնել 518—519 էջերի վրա, ուր խոսքը վերաբերում է աշխատանքի նոր կարգապահություն ստեղծելու, աշխատանքի նոր կազմակերպման անհրաժեշտությանը սոցիալիզմի կառուցման համար, 524—526 էջերի վրա, ուր ունկնդիրը կգտնի լենինյան նշանավոր խոսքերը կապիտալիզմի նկատմամբ կոմունիզմի հաղթանակի համար, աշխատանքի բարձր արտադրողականության համար մղվող պայքարի կարևորության մասին:

«Հոկտեմբերյան ռևոլյուցիայի չորրորդ տարեդարձի առթիվ» (Երկեր, հատ. 33, էջ 37—48) աշխատությունում ունկնդրի ուշադրությունը պետք է հրավիրել այն բանի վրա, թե Վ. Ի. Լենինը ինչպես էր գնահատում տնտհաշվարկի և նյութական շահագրգռվածության սկզբունքի նշանակությունը սոցիալիստական շինարարության գործում (էջ 46):

Զրույցը լիարժեք կլինի, երբ կարծիքների աշխույժ փոխանակություն ծավալվի այն առթիվ, թե ինչպես կարելի է ավելի լավ կառուցել ամբողջ պարտիական աշխատանքը, որպեսզի ապահովվի ՍՄԿՊ ծրագրի տնտեսական խնդիրների, ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան պլենումների որոշումների կենսագործումը:

Մտքերի նման փոխանակություն տեղի կունենա, եթե պրոպագանդիստը և ունկնդիրները խորապես ուսումնասիրեն պարտիայի վերջին որոշումները տնտեսական հարցերի մասին, եթե նրանք տեսական գրույթները կապեն իրենց կոլեկտիվի ամենօրյա կենսական խնդիրների հետ:

# ՕՐՎԱ հարցեր

## ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ, ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՁԵՎԵՐ ՈՒ ՄԵԹՈԴՆԵՐ

Ինչպես ասված է ՍՄԿՊ կանոնադրության մեջ, պարտիայի հիմքը սկզբնական կազմակերպություններն են, որոնք կազմակերպվում են կոմունիստների աշխատանքի վայրում, ֆաբրիկայում, գործարանում, սովխոզներում, կոլտնտեսություններում և մյուս հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, նաև կոմունիստների ապրելավայրում:

Սկզբնական պարտիական կազմակերպությունը ղեկավարվում է ՍՄԿՊ ծրագրով և կանոնադրությամբ: Նա կազմակերպում և անմիջականորեն ղեկավարում է բոլոր աշխատավորների արտադրական, հասարակական-քաղաքական գործունեությունը մեր երկրում կոմունիզմի կառուցման համար: Սկզբնական պարտիական կազմակերպությունները, որտեղ էլ որ նրանք լինեն, ՍՄԿՊ կանոնադրության համաձայն՝ պետք է զբաղվեն մի շարք հարցերով, որոնք հավասարապես վերաբերում են բոլոր կազմակերպություններին, չնայած այդ կազմակերպություններն իրենց աշխատանքի բնույթով ունեն տարբեր հասարակական-տնտեսական խնդիրներ, որոնք բխում են կոմունիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելու պարտիայի ծրագրից:

Սկզբնական պարտիական կազմակերպությունները ՍՄԿՊ շարքերն են ընդունում նոր անդամներ, ապահովում նրանց առաջավոր գործունեությունը կյանքի բոլոր մարզերում, դաստիարակում նրանց լենինիզմի ոգով, կազմակերպում են մարքսիստական-լենինյան թեորիայի ուսումնասիրությունը, սերտորեն կապված կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ:

Ոչ միայն տնտեսական, այլև հասարակական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառների մարդկային կոլեկտիվների կազմակերպիչն ու դաստիարակը պարտիական կազմակերպությունն է, որի գլխավոր խնդիրը պարտիայի ու պետության առաջադրանքների անշեղ իրագործումն է: Որքան ուժեղ ու նպատակասլաց լինի սկզբնական պարտիական կազմակերպության գործունեությունը, այնքան արագ կլուծվեն պարտիայի և կառավարության կողմից առաջադրված խնդիրները:

ՍՄԿՊ յուրաքանչյուր սկզբնական կազմակերպության կամ օրգանի գործունեության դիմորոշ սկզբունքը՝ կոլեգիալությունն է, որը մեր պարտիայի ղեկավարման լենինյան ոճի մարմնացումն է: Ապահովելով կոլեկտիվ ղեկավարություն, սկզբնական պարտիական կազմակերպությունը կոչված է հետևելու, որպեսզի ճշտորեն կիրառվի այդ սկզբունքի նաև մյուս կողմը՝ անհատական պատասխանատվությունը: Հարցերի համատեղ մշակումն ու քննարկումը թղթի վրա կմնան, եթե պարտիական կազմակերպությունը չապահովի իր ու վերադաս օրգանների որոշումների կիրառման անձնական պատասխանատվությունը: Գործունեության միայն այս ոճը հնարավորություն կընձեռի խույս տալու մեծ սխալներից և կամայականություններից: Ահա թե ինչու վերջին տարիներին, հատկապես ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան, մարտյան և սեպտեմ-

քերյան (1965 թ.) պլենումների որոշումների առնչությամբ, պարտիան մեծ
աշխատանք է կատարում կոլեգիալության սկզբունքի, ՍՄԿՊ կանոնադրության
դրույթներն անշեղորեն կենսագործելու համար:

Սակայն որոշ շրջաններում մերթ խախտում են կոլեգիալության սկզբունք-
քը, պլենումներ, ակտիվի ժողովներ ու բյուրոներ ժամանակին չեն հրավիր-
վում: Ազիզբեկովի շրջանի Կարմրաշենի պարտկազմակերպության բյուրոն
անցած ինն ամիսների ընթացքում չի գումարել ոչ մի նիստ, աշխատել է
առանց պլանի, այս կազմակերպությունում չի գործել կոլեկտիվ միտքը: Մի
շարք տեղերում միանձնյա ձևով որոշում են այս կամ այն ընկերոջ աշխա-
տանքի բնույթը: Քիչ չեն դեպքերը, երբ շրջկոմի բյուրոն որոշում է կազմա-
կերպության քարտուղար երաշխավորել մեկին, սակայն միանձնյա կերպով
նա փոխարինվում է ուրիշով: Այդ կարգի ղեկավարները մոռանում են, որ
պարտիական կազմակերպության ղեկավարությունը վստահված է ոչ թե մեկ
մարդու, այլ կոլեկտիվ օրգանի: Ուրեմն, չի կարելի մեկուսացնել ղեկավար
օրգանում ընտրված մարդկանց, զրկել նրանց գործելու իրավունքից ու պա-
տասխանատվությունից:

Որոշ դեպքերում թերագնահատվում է ինչպես պարտիական կոմիտեների
պլենումների, այնպես և պարտիական ժողովների դերը, հաճախ պարտիական
ժողովներ և պլենումներ են հրավիրվում ժամկետների խախտումով կամ ձևա-
կանորեն, որն իջեցնում է այդ կոլեկտիվի օրգանի դերը: Արտաշատի շրջանի
Շահումյանի անվան կոլտնտեսությունն անցած տարի ձեռք բերեց զգալի հա-
ջողություններ: Սակայն գործերն առավել լավ կընթանային, եթե պարտիական
կազմակերպությունը լիովին օգտագործեր կոլեկտիվ ղեկավարության բոլոր
լծակներն ու եղանակները:

Իհարկե, ժողովների կամ պլենումների ժամանակին հրավիրումն ինքնին
չի լուծում պարտիական կազմակերպության առջև ծառացած կնճռոտ խնդիր-
ները: Հարցի էությունն այն է, որպեսզի այդ պլենումներն ու ժողովները ար-
ծարծվող խնդիրները քննարկեն ու լուծեն բանիմացորեն, նախապես բազմա-
կողմանի հետազոտված ու կշռադատված հանգամանքների հաշվառման հիման
վրա: Երբ հարցի կոլեկտիվ քննարկումը կատարվում է ներկաների անմիջական
և ինքնաբուխ մասնակցությամբ, երբ դրական ու բացասական ըմբռնումները
դրսևորվում և գնահատվում են ինքնաքննադատության անկաշկանդ մթնոլոր-
տում, այդ դեպքում կոլեկտիվի որոշումը առավել կենսական է ու օգտակար:

Ձևական, կյանքի պահանջներին հակասող որոշումներ հանելով, տվյալ
սկզբնական պարտիական կազմակերպությունը կամ շրջկոմի պլենումը, բնավ
չեն բարձրացնի իրենց հեղինակությունը: Իսկ երբ այդ որոշումները համապա-
տասխանում են բուն իրավիճակին, յուրաքանչյուր պարտիական հաճույքով
կմասնակցի այդ ժողովներին կամ պլենումներին: Հասարակական, քաղաքա-
կան և տնտեսական հարցերի մշակման և քննարկման ոլորտից խպառ դուրս
պետք է մղվի ձևական, բյուրոկրատիկ մոտեցումը: Որպեսզի հարցի քննար-
կումը և ընդունված որոշումը լինի ճիշտ, նախապես հարկավոր է խորհրդակցել
պարտիական ակտիվի, գործիմաց մարդկանց հետ:

Կոլեկտիվ ղեկավարությունը կդառնա ձևական, եթե չլինի աշխատողների
անձնական պատասխանատվություն հանձնարարված գործի նկատմամբ և
տեղերում չկազմակերպվի ընդունված որոշումների կատարումը: Պարտիական
կազմակերպությունների ղեկավարները պետք է ցուցաբերեն պատշաճ հետևո-
ղականություն, որպեսզի ղեկավար պարտիական աշխատողները գործում լինեն
սկզբունքային, ամենօրյա կազմակերպական աշխատանքով գլխավորեն մաս-
սաների ինքնագործունեությունը:

Սոցիալիստական մեր հայրենիքի զարգացման ներկա փուլում, երբ հըս-
կայական տեղաշարժեր են կատարվում տնտեսական կյանքում, երբ պար-
տիայի կամքով արմատական փոփոխություններ են լինում արդյունաբերու-
թյան ղեկավարման մեթոդներում ու եղանակներում, հատուկ նշանակություն
է ձեռք բերում պարտիական կազմակերպությունների ու տնտեսական ղեկա-
վարների ինքնուրույն նախաձեռնության զարգացման հարցը: Տնտեսության



ղեկավարման մեթոդների ու եղանակների կատարելագործումը բարդ խնդիր-
ներ է դնում պարտիական կազմակերպությունների առջև, պահանջում է նրան-
ցից առավելագույն բանիմացությունը զուգակցել ղեկավարման առավել կեն-
սունակ ու գործնական ձևերի հետ: Խնդրի այս կողմի վրա սկզբնական պար-
տիական կազմակերպությունները հատուկ ուշադրություն պետք է դարձնեն:

Ռեսպուբլիկայի մի շարք շրջանների սկզբնական պարտիական կազմա-
կերպություններ (Արտաշատ, Վեդի, Շամշադին, Ստեփանավան, Ախուրյան,
Նոյեմբերյան և այլն) տնտեսության ղեկավարման ասպարեզում լուրջ հաջո-
ղություններ ունեն: Նշված շրջաններում սկզբնական պարտիական կազմակեր-
պությունները տնտեսության վճռական տեղամասերն ապահովել են կոմու-
նիստներով, որոնք պատվով են կատարում իրենց ավանգարդային դերը: Բրի-
գադաներում ու ֆերմաներում ստեղծված պարտիական խմբերը ջանք չեն
խնայում աշխատանքային կարգապահության ամրապնդման, եղած հնարավո-
րություններն ավելի ռացիոնալ օգտագործելու համար:

Այս առումով ուշագրավ է Եղեգնաձորի շրջանի Ելփինի կոլտնտեսության
սկզբնական պարտիական կազմակերպությունը, որն ունի 29 կոմունիստներ.
նրանցից 17-ը անմիջապես աշխատում են արտադրության մեջ, բոլորն էլ
իրենց գործի առաջավորներ են:

Պարտիական ժողովներում քննարկվում են քաղաքական և տնտեսական
այնպիսի հարցեր, որոնք էական նշանակություն ունեն տվյալ կազմակերպու-
թյան համար: Ելփինցիներն անցած տնտեսական տարին փակեցին բարձր ցու-
ցանիշներով: Կոլտնտեսության հաջողության գաղտնիքը սկզբնական պար-
տիական կազմակերպության լավ գործունեության մեջ է:

Այնտեղ, որտեղ լավ է ընթանում սկզբնական պարտիական կազմակեր-
պությունների գործունեությունը, որտեղ ճիշտ է կիրառվում ներպարտիական
դեմոկրատիան, այնտեղ էլ ուժեղ է կապը մասսաների հետ:

Առանց անպարտիական զանգվածների անմիջական ու ակտիվ մասնակ-
ցության, հնարավոր չէ լուծել այն բարդ խնդիրները տնտեսության և կուլ-
տուրայի բնագավառներում, որոնք ծառացել են տվյալ պարտիական կազմա-
կերպության առջև: Պարտիական կազմակերպության հեղինակությունը գերա-
զանցապես կախված է այն բանից, թե ինչպես է ինքը կիրառում իր և վերադաս
մարմինների որոշումները, որչափով նրա գործն ու խոսքը համապատասխա-
նում են միմյանց և թե որքան ամուր են նրա կապերը անպարտիականների
հետ: Հարցի այս կողմի վրա որոշ սկզբնական պարտկազմակերպություններ
հարկ եղած ուշադրությունը չեն դարձնում, համարելով դա «մանրուք»: Սա-
կայն դա մանրուք չէ, այլ պարտիական կազմակերպության գործունեության
չափանիշներից մեկը:

Առհասարակ պետք է ասել, որ պարտիական կազմակերպության կյան-
քում «մանր» հարցեր չկան, այլ կան առաջնակարգ, հրատապ և ընթացիկ
հարցեր: Օրինակ, եթե Հերհերի կոլտնտեսային պարտիական կազմակերպու-
թյունն ամիսներով ժողովներ չի գումարում, դա արդեն մանրուք չէ, այլ պար-
տիական կանոնադրության խախտում, որն անթույլատրելի է:

Պարտիական ժողովների բարձր քաղաքական մակարդակով անցկացումը
մեծապես կախված է այն բանից, թե ինչպիսի հարցեր են քննարկվում և ինչ-
պես են դրանք նախապատրաստվում: Այսպես, օրինակ, Սարավանի սովխոզի
(Ազիզբեկով) պարտիական կազմակերպությունը 1965 թվականի ընթացքում
ունեցել է 12 պարտիական ժողով, որտեղ քննարկվել են պարտիական կազմա-
կերպության համար կենսական նշանակություն ունեցող հարցեր, որոնց կա-
պակցությամբ մշակվել են կոնկրետ միջոցառումներ՝ սովխոզի էկոնոմիկան
առաջ մղելու համար:

Պարտիական կազմակերպության և նրա անդամների գործունեությունը
նշանակալի չափով կախված է նրա բյուրոյի քարտուղարից և բյուրոյի ան-
դամներից, որոնց այժմ պարտիան մեծ պահանջներ է ներկայացնում: Քար-
տուղարի մտավոր ու քաղաքական կարողությունը, գործունեության նրա ոճը
էական դեր են խաղում պարտիական կյանքում: Իսկ երբ շոշափելի են լինում

պարտիայի շրջկոմի գործնական օգնությունն ու ղեկավարությունը, սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարը կարող է հասուն գործիչ դառնալ: Բայց եթե սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարին ղեկավարեն միայն կարգադրություններով, ապա հազիվ թե այդ քարտուղարը քաղաքականապես աճելու հեռանկարներ ունենա:

Ղեկավարել, նախ և առաջ նշանակում է համոզել: Կարգադրության կիրառումը միշտ արդյունավետ է լինում, երբ նրա հիմքում քաղաքական ինքնագիտակցությունն է դրված: Տնտեսական շինարարության, կուլտուրայի ու գիտության զարգացման ներկա վիճակն առ առավել պահանջում է խոր գիտելիքներ, ընդարձակ մտահորիզոն և կուլտուրական վարվեցողություն: Այստեղից հետևում է, որ սուբյեկտիվիստական որևէ քայլ լրջորեն խանգարում է պարտիական կազմակերպության հաջողություններին, խախտում ծրագրված գործունեության նախադրյալները: Համոզել, ուսուցել, վարժեցնել մարդկանց ղեկավարման արվեստին: Դա պետք է լինի պարտիական շրջկոմի գործունեության ոճը, որի հեղինակության հիմքում դրված է նրա խելահաս վճիռներ կայացնելու ունակությունը, այլ ոչ թե «կարգադրությունների» ուժը:

Այս առնչությամբ ժամանակն է ասել, որ սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարի, ինչպես և առհասարակ մասսաների հետ ամեն օր շփվող պարտիական գործիչների համար կարևոր հատկանիշ է նրանց համակրելիությունը: Անձնական բնավորության հմայքը պարտիական-պետական գործչի հեղինակության նախապայմաններից մեկն է, որի անտեսումը բացասական արդյունքներ է տալիս:

Սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարներին ամենօրյա գործնական օգնություն է ցույց տալիս Արտաշատի շրջկոմը, որի լավագույն օրինակը Մխչյան գյուղի պարտկազմակերպության քարտուղար Ա. Ավետյանի գործունեությունն է: Շնորհիվ շրջկոմի քարտուղար ընկ. Մ. Դավթյանի և կազմբաժնի վարիչ ընկ. Յ. Եղիազարյանի ընկերական և սրտացավ վերաբերմունքի, Ա. Ավետյանն այժմ իր դերում է և գործերն այնտեղ լավ են ընթանում:

Այժմ այդ կազմակերպությունը շրջանում համարվում է լավագույն կազմակերպություններից մեկը: Այնտեղ ճիշտ են զուգակցվում քաղաքական ու տնտեսական հարցերը, որի շնորհիվ վերջին շրջանում կոլտնտեսությունը հասել է բարձր ցուցանիշների ինչպես անասնապահական մթերքների արտադրության, այնպես էլ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման ու պետությանը մթերքներ վաճառելու գործում:

Անհրաժեշտ է օգնել կազմակերպությունների քարտուղարներին՝ աշխատանք կազմակերպելու, ելնելով տվյալ կազմակերպության կոնկրետ խնդիրներից և պայմաններից, անհրաժեշտ է հաշվի առնել, որ յուրաքանչյուր կազմակերպություն ունի յուրօրինակ խնդիրներ, որոնց կատարումը պահանջում է ուժերի լրիվ մոբիլիզացում:

Պետք է արմատապես փոխել սկզբնական պարտիական կազմակերպությունների ղեկավարման գրասենյակային ձևը, այն դարձնել ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան և սեպտեմբերյան պլենումների որոշումներին համապատասխան:

Մի՞թե օգնություն է, երբ Ազիզբեկովի շրջկոմի հրահանգիչ ընկ. Կ. Հովհաննիսյանը, լինելով Կարմրաշենի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունում, բավարարվում է իր դիտողությունների գրանցումով և հեռանում: Իսկ մի քանի ամիս հետո պարզվում է, որ նրա գնալուց հետո ոչինչ չի փոխվել: Անհրաժեշտ է սիստեմատիկ օգնել սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներին, սովորեցնել նրանց պարտիական կազմակերպության ձևերն ու մեթոդները, հաղորդել նրանց այդ կազմակերպությունների լավ աշխատանքի փորձը: Հրահանգավորումը պարտիական ապարատի և նրա ղեկավարների կարևորագույն պարտականություններից մեկն է: Ոչ միայն հրահանգիչները, այլ նաև քարտուղարները, բաժնի վարիչները պետք է ամենօրյա օգնություն կազմակերպեն սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներին:



Մշտական աշխատանքը սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների հետ կաճեցնի և կդաստիարակի լավ կազմակերպիչներ, պարտիական աշխատանքը սիրող և գիտակցող ընկերներ: Կազմակերպությունների քարտուղարների հետ տարվող աշխատանքի ժամանակ պետք է հաշվի առնել այն հանգամանքը, որ նրանք միևնույն մակարդակի վրա չեն կանգնած, պետք է նկատի ունենալ, որ նրանցից շատերն ընտրվում են առաջին անգամ, ուրեմն հարկավոր է վարել շերտավորված աշխատանք:

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան պլենումների որոշումների կենսագործման համար կազմակերպական մեծ աշխատանք պետք է տանեն պարտիական կազմակերպությունները: Դա պահանջում է մեր գիտելիքների հարստացում, գործունեության նոր ձևերի ու մեթոդների կիրառում և մասսաների շրջանում երկարատև բացատրական աշխատանք:

ՍՄԿՊ Կենտկոմի վերջին պլենումի որոշումներով պահանջվում է բոլոր կազմակերպություններից՝ խորությամբ զբաղվել արտադրության հարցերով, հայտաբերել ռեզերվները և արտադրությունն առաջ մղել: Բայց դեռևս առանձին տեղերում շարունակում են մակերեսային մոտեցում ցուցաբերել այս կամ այն կարևոր հարցի լուծման ժամանակ, երբեմն առանձին պարտիական գործիչներ իրենց վրա են վերցնում տնտեսական ղեկավարների ֆունկցիան, փոխարինում կամ կրկնում են տնտեսական ղեկավարներին:

ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը պահանջեց ղեկավար պարտիական օրգաններից՝ կենտրոնացված ղեկավարությունը զուգակցել տնտեսավարների ինքնուրույնության ու ձեռներեցության հետ: Դա նշանակում է, որ տնտեսության ղեկավարման գործում այժմ ավելի բարդ խնդիրներ են դրվում պարտիական մարմինների առջև:

Տնտեսության ղեկավարման հարցերը չի կարելի լուծել վարչարարությամբ: Պարտիական կազմակերպությունները յուրաքանչյուր աշխատողի մոտ պետք է դաստիարակեն գիտակցական վերաբերմունք գործի նկատմամբ: Պետք է հասնել այն բանին, որ բոլոր պարտիական աշխատողները զբաղվեն քաղաքական աշխատանքով, որպեսզի մասսայական-քաղաքական աշխատանքը լինի գործարար:

Մի շարք պարտկազմակերպություններ բավարար չափով չեն մտահոգվում ղեկավար կադրերի կազմը սիստեմատիկաբար բարելավելու խնդրով: Հարկավոր է ավելի շատ զբաղվել դաստիարակչական աշխատանքով: Գործարանի, ֆաբրիկայի դիրեկտորը, արտադրամասի պետերը, ցանկացած տնտեսության ղեկավարը նաև դաստիարակ է իր ենթակա աշխատողների համար:

Կենցաղային հարցերը, աշխատավորության պահանջների բավարարումը անմիջապես կապված են տնտեսական ու քաղաքական հարցերի հետ և դրանցով պետք է մշտապես զբաղվեն պարտիական կազմակերպությունները:

Բոլոր պարտիական կազմակերպությունները և բոլոր կոմունիստները պարտավոր են ավելի կատարելագործել աշխատանքի ձևերն ու մեթոդները, է՛լ ավելի բարձրացնել ներպարտիական աշխատանքի մակարդակը, մոբիլիզացնել աշխատավորության ուժերը ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան պլենումների որոշումները մինչև վերջ և անշեղ կենսագործելու համար:

Խ. ՍԱՖԱՐՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի պարտիական-կազմակերպական աշխատանքի բաժնի տեսուչ

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԱԳՐԳՌՎԱԾՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

Նյութական խրախուսանքը որպես աշխատավորների արտադրական ակ-
տիվության և ձեռներեցության բարձրացման կարևոր ազդակ, հսկայական
նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացման և մեր
երկրում նյութական բարիքների առատություն ստեղծելու գործում։

Նյութական շահագրգռվածության դերի բարձրացման գործում կարևորա-
գույն նշանակություն ունեն ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան
(1965 թ.) պլենումի որոշումները, որոնցում նշվեցին տնտեսական խթանումն
ուժեղացնելու ուղիները։ Պլենումի որոշումների ճիշտ կիրառումը կստեղծի
այնպիսի պայմաններ, որոնք մեծ չափով կշահագրգռեն ձեռնարկություննե-
րին և աշխատողներին արտադրությունը պատշաճ տեմպերով ու մակարդակով
առաջ մղելու։

Ձնայած դրան, նյութական շահագրգռվածության պրոբլեմը, մասնավո-
րապես, նյութական խրախուսման սիստեմը այժմ չի կարելի լրիվ մշակված
համարել։ Դեռ որոշակի չեն այդ պրոբլեմի տեսական մի շարք հարցեր, պարզ
չեն դրանց՝ գործնականում կիրառվող ձևերը։ Այս հոդվածում անում ենք մի
շարք առաջարկություններ, որոնք կարող են օգտակար լինել նյութական շա-
հագրգռվածության սիստեմի որոշ հարցերի մշակման և կիրառման համար։

Նյութական շահագրգռվածության սիստեմը բաժանվում է երկու ինքնու-
րույն հիմնական մասերի՝ նյութական պատասխանատվության և նյութական
խթանման սիստեմների։ Մեր գրականության մեջ հիմնական ուշադրությունը
նվիրվում է նյութական խթանման հարցերին, իսկ նյութական պատասխա-
նատվությունը, չնայած դրա ոչ պակաս կարևորությանը, հաճախ անուշադրու-
թյան է մատնվում։ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965) պլենումը լուրջ
ուշադրություն դարձրեց նաև պատասխանատվության հարցին։ Պլենումում
Ա. Ն. Կոսիգինի զեկուցման մեջ առաջարկվում է բարձրացնել ձեռնարկություն-
ների և կազմակերպությունների նյութական պատասխանատվությունը արտա-
դրանքի մատակարարումների պայմանագրային պարտավորությունների կա-
տարման համար, որպեսզի որպես կանոն հատուցվեն պատճառված վնասները։
Պլենումի ընդունած որոշման մեջ գլխավոր խնդիրներից է նաև հանձնարար-
ված գործի համար յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվության բարձ-
րացումը։

Մեր պարտքն միշտ վարել է աշխատավորների կոմունիստական գի-
տակցականության բարձրացման, աշխատանքի նկատմամբ կոմունիստական



վերաբերմունք դաստիարակելու կուրս, քանի որ, ինչպես նշվում է սեպտեմ-
բերյան (1965 թ.) պլենումի ընդունած որոշման մեջ, իր գործի նկատմամբ
յուրաքանչյուր աշխատավորի գիտակից, ձեռներեց և ստեղծագործական մո-
տեցման, ժողովրդական ունեցվածքի նկատմամբ յուրաքանչյուրի հոգատար
վերաբերմունքի դեպքում միայն կարելի է հաջողությամբ պսակել կոմունիս-
տական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարը։ Սակայն անբա-
վարար նյութական պատասխանատվությունը ներկա էտապում պատճառ է
դառնում որոշ աշխատողների կողմից իրենց պարտականությունների վատ կա-
տարման, որը վնաս է հասցնում հասարակությանը։ Անհրաժեշտ է արտադրու-
թյան մեջ ներդնել ձեռնարկությունների ու աշխատողների նյութական պատաս-
խանատվության այնպիսի մի սիստեմ, որն, ըստ ամենայնի, օժանդակի աշ-
խատանքի արտադրողականության աճին, արդյունքի ինքնարժեքի իջեցմանը և
որակի բարձրացմանը։

Ահա, օրինակ, տարիֆային սիստեմը, ուր նախատեսված է բանվորների
վճարման չափը՝ կախված նրանց որակավորումից (կարգից)։ Այս սիստեմում
հիմնավորված է այն դրույթը, որ աշխատանքը վարձատրվում է գործը կատա-
րող բանվորի որակավորմանը համապատասխան նույնիսկ այն դեպքում, եթե
ր։անվորի որակավորումն ավելի բարձր է, քան պահանջվում է տվյալ աշխատան-
քի համար։ Սակայն ոչ միշտ է հնարավոր վճարման այսպիսի սիստեմ օգտա-
գործել։ Մենք նկատի ունենք ժամանակավարձով, մասնավորապես հաստատուն
ռոճիկով աշխատողներին, որոնց պարտականությունների շրջանակը շատ հա-
ճախ անորոշ է, և աշխատողը երբեմն ո՛չ թե զլանում է, այլ չգիտենալով, լրիվ
չի կատարում իր պարտականությունները։ Բոլոր դեպքերում, յուրաքանչյուր
պաշտոնի համար, պարտականությունների շրջանակը պետք է լինի որոշակի,
հակառակ դեպքում անհնար կլինի գործ պահանջել այդ աշխատողից։ Այս հան-
գամանքը նյութական պատասխանատվության բարձրացման անհրաժեշտ պայ-
մանն է։

Քանի որ նյութական պատասխանատվություն պետք է կրեն ո՛չ միայն
առանձին աշխատողներ, այլև բոլոր կազմակերպությունները, ապա դրանց
համար նույնպես անհրաժեշտ է ստեղծել նշված տիպի նորմատիվներ։ Շատ
ու շատ այդպիսի նորմատիվներ կան և հաջողությամբ օգտագործվում են
կյանքում, ինչպես, օրինակ, տարբեր ճյուղերում ներդրված բազմաթիվ ստան-
դարտները, տեխնիկական պայմաններն ու նորմաները և այլն։ Բայց կան շատ
բնագավառներ, որոնց համար նորմատիվներ դեռևս կազմված չեն, կամ
դրանց դիֆերենցման և ճշտման կարիք է զգացվում։ Այդպիսիներից են, օրի-
նակ, նախագծերի կազմման տևողության, առանձին ճյուղերի համար կա-
պիտալ ներդրումների արդյունավետության, ձեռնարկությունների կառուցման
և հզորությունների յուրացման տևողությունների, անավարտ շինարարության
կամ արտադրության, չտեղակայված սարքավորման, հիմնական ֆոնդերի հա-
նույթի և շատ այլ նորմատիվներ։

Դրանց հնարավորին չափ շուտ ստեղծումը մեծ չափով կօգներ մեր ար-
տադրության ավելի արագ զարգացմանը, արտադրանքի որակի բարձրացմա-
նը, նախագծման ժամանակ առաջավոր և տնտեսապես առավել ձեռնտու
կոնստրուկցիաներ, սարքավորում, նյութեր, տեխնոլոգիական պրոցեսներ և
այլն օգտագործելուն։ Օրինակ, հաճախ նույն պայմաններում աշխատող ձեռ-

նարկությունները իրենց արդյունավետությամբ զգալիորեն տարբերվում են իրարից։ Ավելի նվազ արդյունավետությունը այդպիսի դեպքում մասամբ կարելի է բացատրել ցածրորակ նախագծմամբ, իսկ վերջինից խուսափելու լավ միջոց կարող է հանդիսանալ կապիտալ ներդրումների՝ տվյալ ճյուղի համար արդյունավետության նորմա սահմանելը, դիֆերենցելով այն ըստ տեղական տարբեր պայմանների։ Նախագծող կազմակերպությունը պետք է աշխատի ձեռնարկությունը նախագծել այնպես, որ նրա արդյունավետությունը լինի նորմատիվին հավասար, կամ նրանից բարձր։ Եթե նախագծային արդյունավետությունը տարբեր է նորմատիվից, ապա դա պետք է իր ազդեցությունը թողնի նախագծային կազմակերպության աշխատանքի գնահատման վրա։

Եթե նույնանման աշխատանքը կատարվում է տարբեր որակով, ապա ըստ աշխատանքի որակի և քանակի վարձատրության սկզբունքին համաձայն, տարբեր պետք է լինի և վարձատրությունը՝ բարձրորակ աշխատանքը պետք է բարձր վարձատրվի։ Այսպես, օրինակ, եթե նույն մասնիկի մշակումը պահանջում է ամենաքիչը չորրորդ կարգի որակավորում, և այդ աշխատանքը կատարում են չորրորդ և հինգերորդ կարգի որակավորում ունեցող բանվորներ, ապա վարձատրումը կատարվում է ըստ նրանց կարգի։ Սակայն, չգիտես ինչու, այս արդարացի սկզբունքը միշտ չէ, որ օգտագործվում է ժամանակավարձով աշխատողների համար։ Մեր կարծիքով հաստատուն ռեժիմով վարձատրվող յուրաքանչյուր պաշտոնի համար անհրաժեշտ է սահմանել աշխատավարձի նվազագույն և առավելագույն չափ և հնարավորություն տալ ձեռնարկության ղեկավարին՝ ըստ պարտականությունների կատարման որակի, տրված սահմաններում փոխել աշխատավարձի չափը։ Այսպիսի միջոցառման լայն օգտագործումը (այն այժմ օգտագործվում է սահմանափակ ոլորտներում) կհանդիսանար նյութական շահագրգռման լուրջ ազդակ։

Ինչպես նշվեց վերը, եթե պարտականությունները կատարվում են ոչ լրիվ կամ ոչ պատշաճ որակով, ապա խախտվում է ըստ աշխատանքի վարձատրության սոցիալիստական սկզբունքը։ Հասկանալի է, որ այդպիսի դեպքում աշխատանքի և վարձատրության միջև համապատասխանությունը ապահովելու համար անհրաժեշտ է իջեցնել աշխատավարձը, որին շատ քիչ են դիմում գործնականում։ Այդ հանգամանքը ոչ բավականաչափ գիտակից աշխատողների մոտ պարտականությունների կատարման գործում անտարբերության և նյութական անպատասխանատվության զգացում է զարգացնում և հսկայական վնաս հասցնում ժողովրդական տնտեսությանը։ Աշխատավարձի վերը նշված որոշակի սահմանները կարող են զգալիորեն հեշտացնել պարտականությունների կատարմանը համապատասխան վարձատրության չափի փոփոխելը։ Եթե որևէ աշխատող ի վիճակի չէ, կամ գիտակցաբար չի կատարում աշխատավարձի նվազագույն սահմանին համապատասխանող իր պարտականությունները, ապա նա ոչ միայն չի կարող մնալ իր գրաված պաշտոնում, այլև՝ նման աշխատանք կատարել մի այլ տեղում։ Յուրաքանչյուր աշխատող պետք է գնահատի իր գրաված պաշտոնը, իմանա, որ իր վրա դրված պարտականությունները բարեխղճորեն չկատարելու դեպքում նա չի կարող նման պաշտոն ստանալ մի այլ տեղում։ Այն հանգամանքը, որ տեղում աշխատանքի ձախողումը և նույնիսկ տնտեսությանը հասցված նյութական վնասը որոշ դեպքերում համարյա չի ազդում նոր վայրում աշխատանքի ընդունվելու վրա, նույնպես թուլացնում է աշխատողների նյութական պատասխանատվությունը։ Եթե բանվորը



հաճախակի ներկայացնում է ցածրորակ արտադրանք, ապա նրա կարգը իջեցվում է (դժբախտաբար ոչ միշտ)։ Նույն ձևով, եթե ռեժիմով աշխատողը չի կարողանում կատարել իր վրա դրված պարտականությունները, ապա նա պետք է տեղափոխվի իր որակին և պատրաստականությանը համապատասխան այլ աշխատանքի։

Նյութական պատասխանատվության դերը բարձրացնելու գործում մեծ նշանակություն ունի յուրաքանչյուրի անցյալ աշխատանքի մասին փաստերի վավերացումը, դրանք հաշվի առնելը նոր տեղում աշխատանքի ընդունվելիս։ Այդպիսի վավերացման ձևերն են՝ հին աշխատանքի տեղից տրվող բնութագրերը, աշխատանքային գրքույկում կատարվող գրառումները և այլն։ Այդ նպատակն է հետապնդում և աշխատանքային անձնագիր ստեղծելու առաջարկությունը։ Կադրերի աշխատանքային գործունեության ամբողջական բնութագրի առկայությունը, ինչ խոսք, կօգնի ձեռնարկությունների ղեկավարներին՝ իրենց դիմող կադրերին ըստ նրանց որակի և ունակությունների աշխատանք տալու։

Մեր կարծիքով նպատակահարմար է ձևափոխել աշխատանքային գրքույկը, այնտեղ նախատեսելով այնպիսի գրառումների բաժին, որոնք իսկապես բնութագրեն յուրաքանչյուրի գործնական հատկությունները։ Ինչպիսին էլ լինի աշխատողին բնութագրող փաստաթուղթը (վերջին աշխատանքի տեղից տրվող բնութագիր, աշխատանքային գրքույկ և այլն), անհրաժեշտ է, որ այն ձևական չլինի, գրվի ամենայն պատասխանատվությամբ ու ճշտությամբ և հաշվի առնվի նոր աշխատանքի տեղում։ Այն հանգամանքը, որ հաջորդ տեղում աշխատանքի ընդունվելը կախման մեջ է դրվում նաև նախորդ աշխատանքային գործունեությունից, ինչ խոսք, որ զգալիորեն կբարձրացնի աշխատավորների պատասխանատվության զգացումը։

Աշխատանքը որակով կամ ժամանակին չկատարելու հետևանքով ժողովրդական տնտեսությունը շատ հաճախ զգալի վնաս է կրում, որը համարյա բոլոր դեպքերում չի հատուցվում, չնայած որ հասցված վնասն անպայման հատուցելու սկզբունքը նյութական պատասխանատվության սիստեմի ամենակարևոր և էական մասը պետք է հանդիսանա։ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշման համաձայն այժմ այդ հարցում նախատեսվում է կատարել արմատական փոփոխություն, այնպես որ, որպես կանոն, ձեռնարկությունները հատուցեն իրենց մեղքով պատճառված վնասը։ Այս դրույթը հսկայական նշանակություն կունենա նյութական պատասխանատվության բարձրացման գործում, սակայն, ըստ երևույթին, ոչ միշտ հնարավոր կլինի այն կիրառել, քանի որ որոշ դեպքերում վնասի չափը կարող է ավելի լինել վնաս պատճառող ձեռնարկության հնարավորություններից։ Ձեռնարկությունների նյութական պատասխանատվության բարձրացման համար նախատեսվող այդ միջոցառումը, ըստ մեզ, նպատակահարմար է օգտագործել նաև աշխատողների պատասխանատվությունը բարձրացնելու համար։ Մեր կարծիքով հասցված վնասը անպայման հատուցելու սկզբունքի կենսագործման համար անհրաժեշտ է առաջնորդվել հետևյալ հիմնական նկատառումներով։

Յուրաքանչյուր աշխատող պետք է պատասխանատու լինի իր աշխատանքի արդյունքի համար։ Այդ նպատակով վնասի հատուցումը պետք է կատարվի նրանց հաշվին, ում մեղքով հասցվել է այն։ Առանց անհատական նյութական պատասխանատվության, առանց այն բանի, որ աշխատողի աշխատավարձը իսկապես կախված լինի նրա աշխատանքի արդյունքից, չի կարող լինել

և նյութական պատասխանատվություն։ Այս կարևոր դրույթն ընդունվում է շատ շատերի կողմից, սակայն համարյա չի կիրառվում։ Այսպես, օրինակ, 1962 թվականին Հայաստանի ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկություններում վերջնականապես խոտանված շինվածքների ինքնարժեքը կազմել է 2892 հազար ռուբլի (1961 թվականի համեմատությամբ աճել է մոտ 50 տոկոսով), խոտանի շտկման ծախսերը՝ 238 հազար ռուբլի, սակայն անորակ նյութեր մատակարարելու համար այլ կազմակերպություններից գանձված գումարները կազմել են 15 հազար ռուբլի, իսկ խոտանի համար մեղավորներից պահված գումարները՝ 65 հազար ռուբլի։ Բերված թվերը չեն տալիս ամբողջ վնասի չափը, քանի որ մեզ հայտնի չէ օգտագործված ցածրորակ արտադրանքից այլ ձեռնարկություններում ստացվող վնասը վթարի, հաճախակի կատարվող նորոգումների կամ այլ պատճառներով։

Նույնպիսի դրություն է և այլ տնտեսական շրջաններում։ Օրինակ, 1964 թ. առաջին կիսամյակում Լենինգրադի մարզգործկոմի իրավարարությունում (արբիտրաժ) քննարկվել են 5389 արտադրական բնույթի վեճ, սակայն անձնական նյութական պատասխանատվության ենթարկելու ոչ մի դեպք չի եղել (իրավարարություններն այդպիսի իրավունքներ չունեն)։ Ժողովրդական տնտեսությանը հասցված վնասը, վերջին հաշվով, ծածկվում է պետական միջոցներով։ Իսկ շատ ու շատ դեպքերում նախագծողների, շինարարների և անմիջապես շահագործողների մեղքով ժողովրդական տնտեսությանը հասցվող հսկայական վնասի հատուցման մասին հարց իսկ չի բարձրացվում։ Այդպիսի շատ դեպքեր են նշված մեր մամուլում։

Եթե աշխատանքը որակով կամ ժամանակին չկատարելու հետևանքով ժողովրդական տնտեսությանը հասցվում է վնաս, ապա, մեր կարծիքով, հատուցման չափը պետք է որոշվի ոչ թե տվյալ կազմակերպության կողմից կատարվող աշխատանքին կամ մատակարարվող արտադրանքի արժեքին համեմատ, ինչպես դա նախատեսվում է ըստ տուժանքի (неустойка) ներկայումս գործող կանոնադրությամբ, այլ հասցված վնասի չափին համեմատ։ Չէ՞ որ ցածրորակ աշխատանքի հետևանքով առաջացող վնասը կարող է արտադրանքի արժեքից շատ ու շատ անգամ ավելի լինել։ Ո՞վ պետք է պատասխանատու լինի այդ վնասի համար, եթե ոչ անմիջական մեղավորը։ Սակայն կյանքում մեղավորը հատուցում է (եթե միայն հատուցում է) այդ վնասի ոչ մեծ մասը միայն, որը շատ դեպքերում չի էլ ազդում իր տնտեսական գործունեության արդյունքների վրա, այդ պատճառով չի ծառայում իր նպատակին՝ նյութական պատասխանատվության բարձրացմանը ձեռնարկությունում։ Սա, մասնավորապես, վերաբերում է խոշոր կամ ունիկալ սարքավորման համար համագործակցության (կոոպերացման) կարգով ոչ մեծ արժողության մասնիկներ կամ հանգույցներ մատակարարող ձեռնարկություններին։ Այսպես, օրինակ, Լենինականի սարքաշինական գործարանը 1964 թ. խոշոր տուրբոգեներատորների արտադրության համար Լենինգրադի «Էլեկտրոսիլա» գործարանին կոոպերացման կարգով մատակարարում էր ոչ բարդ սարքեր՝ աղաչափեր, յուրաքանչյուրը 456 ռ. արժողությամբ, իսկ խոշոր տուրբոգեներատորի արժեքը (նայած նրա հզորության), կարող է հասնել մեկ միլիոնի և նույնիսկ ավելի։ Այդ սարքերի մատակարարումը ամեն ամիս ուշացնելու համար, Լենինականի գործարանի տույժը կազմում է սարքի արժեքի 4,5 տոկոսը՝ մոտ 20 ռուբլի ամեն ամսվա համար, իսկ այդ սարքերը ժամանակին չստանալու հետևանքով «Էլեկտրոսիլան» ուշաց-



նում է տուրբոգեներատորի հանձնումը և նրա տույժը մի քանի հազար անգամ ավելի է, քան Լենինականի գործարանինը։ Այսպիսով, ըստ գործող կանոնադրության, անմիջական մեղավորը՝ Լենինականի գործարանը, «Էլեկտրոսիլա» գործարանին պետք է հատուցի հասցված վնասի մի չնչին մասը միայն, իսկ վնասի ամբողջ ծանրությունը փաստորեն ընկնում է «Էլեկտրոսիլայի» վրա, որը մեղավոր է այնքանով միայն, որ կոոպերացվում է Լենինականի սարքաշինական գործարանի հետ։ Եթե կատարվում է արտասահմանյան երկրի պատվեր, ապա «Էլեկտրոսիլայի» տույժը որոշվում է գեներատորի արժեքի 8 տոկոսի չափով և հասցված վնասի ու դրա հատուցվող մասի տարբերությունն ավելի է աճում։

Այդպիսի իրավիճակի անհիմն և անտրամաբանական լինելն ակնհայտ է. ուստի և անհրաժեշտ է այն փոխել, համարեցնել կյանքի պահանջներին. տվյալ դեպքում արտադրության անընդհատությունը ապահովելու ու նյութական պատասխանատվությունը ուժեղացնելու պահանջներին և հատուցման չափը նշանակել հասցվող վնասին համեմատ։ Որոշ դեպքերում հասցված վնասը կարող է ավելի լինել, քան վնասի պատճառ հանդիսացող կազմակերպության հնարավորությունները և ինչպիսի օրենք էլ լինի, մեղավորն ի վիճակի չի լինի ամբողջ վնասը հատուցել։ Ըստ երևույթին նպատակահարմար կլինի նշանակել հատուցման և վնասի հարաբերության որոշակի սահմաններ և յուրաքանչյուր դեպքում, ելնելով այդ սահմաններից ու տվյալ ձեռնարկության իրական հնարավորություններից, նշանակել հատուցման չափը (դա կարվի իրավարարության միջոցով)։ Հատուցման չափը որոշելիս պետք է ելնել նաև նրանից, որ այն զգալի ազդեցություն ունենա ձեռնարկության տնտեսական գործունեության արդյունքների վրա։

Եթե այն ձեռնարկությունը, որի թերացումով վնաս է եղել, ի վիճակի չէ հատուցել վնասը ամբողջովին, ապա վնասվող ձեռնարկության տնտեսական գործունեության հետևանքները, չնայած նրա լավ աշխատանքին, կարող են վատանալ։ Այս հանգամանքը, իհարկե, հակասում է նյութական շահագրգռվածության սկզբունքին և պետք է կանոնավորվի կենտրոնացված կարգով։ Մեզ թվում է, որ այդպիսի դեպքերում չհատուցված վնասը պետք է ծածկել պետական բյուջեի հաշվին, ստեղծելով վնասների հատուցման կենտրոնացված հատուկ ֆոնդ (այդպիսի ֆոնդի ստեղծումն առաջարկվեց ՍՍՌՄ 6-րդ գումարման Գերագույն սովետի վեցերորդ սեսիայում)։

Պարտականությունների ցածր որակով կամ ոչ ժամանակին կատարելը շատ հաճախ ունենում է իր օբյեկտիվ պատճառները՝ նյութերով, հումքով, սարքավորումով կամ այլ աշխատամիջոցներով ապահովված չլինելը, նրանց ցածր որակը և այլն։ Այդ հանգամանքը, սակայն, չի կարող ազատել կազմակերպություններին վնասը հատուցելու պարտականությունից, միայն թե նրանք ևս իրենց հերթին կարող են իրենց վնասի հատուցում պահանջել այն կազմակերպություններից, որոնց թերացմամբ իրենք չեն կարողացել ճշտությամբ կատարել ստանձնած պարտավորությունները։ Այսպես, օրինակ, Լենինականի սարքաշինական գործարանը աղաչափերի մատակարարումը ուշացրել է, քանի որ Լվովի ժողտնտխորհի «Մուկաչևպրիբոր» գործարանից ժամանակին կամըրջակները չեն ստացվել, ուստի նա իր վնասին համեմատ հատուցում պետք է ստանա «Մուկաչևպրիբորից»։ Այս ձևով միայն հնարավոր է իրագործել նյութական պատասխանատվության սկզբունքը, ապա թե ոչ միշտ էլ կարելի է պար-

տականությունների կատարման մեջ թերացումն այս կամ այն ձևով պատճառաբանել, հիմնավորել օբյեկտիվ պայմաններով։ Սկզբունքը պետք է լինի մեկը. պետք է հատուցեն վնասը այն ձեռնարկությունները կամ անհատները, որոնք մեղավոր են դրանում։ Այս սկզբունքը օղակից օղակ կիրառելով, վերջին հաշվով, կարելի է հասնել իսկական մեղավորին և դրանով իսկ անձնական նյութական պատասխանատվության սկզբունքը կիրառել կյանքում։ Ճիշտ է, դա կապված է դժվարությունների հետ, սակայն, մյուս կողմից՝ այդ անհրաժեշտություն է նյութական պատասխանատվության դերը արտադրության մեջ բարձրացնելու համար, որպեսզի յուրաքանչյուր կազմակերպություն և անհատ ձգտի անպայման կատարել իր վերցրած պարտավորությունները։

Հատուցման չափը ճիշտ որոշելու համար անհրաժեշտ է, նախ՝ ճիշտ գնահատել վնասի չափը։ Ցավոք, ոչ միշտ է, որ գոյություն ունեցող մեթոդները հնարավորություն են տալիս այդ կատարել բավարար ճշտությամբ։ Մեծ մասամբ գնահատվում է տեսանելի վնասը, որն զգալիորեն փոքր է իրական վնասից։ Որպես օրինակ նորից վերցնենք Լենինականի սարքաշինական գործարանի կողմից Լենինգրադի «Էլեկտրոսիլա» գործարանին աղաշափ սարքերը ոչ ժամանակին մատակարարելը։ Դրա հետևանքով խոշոր գեներատորները ժամանակին շարք չեն հանձնվում, գործարանը յուրաքանչյուր ամիս մեծ տույժ է մուծում, որով, սակայն, չի սահմանափակվում վնասը, այն շատ ու շատ ավելի է։ Գեներատորի և նրա տեղակայման համար կառուցված էլեկտրակայանի կառուցվածքների ու սարքավորման վրա ծախսված մեծ գումարները սառեցվում են, հարակից ճյուղերը, որոնց մատակարարման համար կառուցվում է տվյալ էլեկտրակայանը, չեն ստանում նախատեսված քանակի էլեկտրաէներգիա, որի հետևանքով ժողովրդական տնտեսությունը չի ստանում պլանավորվող արտադրանքի մի մասը. սա էլ իր հերթին կարող է ազդել այլ ճյուղերի աշխատանքի վրա, հասցնել ոչ փոքր վնաս։ Ինչպես տեսնում ենք, ոչ մեծ արժեք ունեցող սարքը ոչ ժամանակին մատակարարելու պատճառով կարող է անհամեմատ մեծ վնաս հասցվել ժողովրդական տնտեսությանը։ Անհրաժեշտ է կատարելագործել վնասի գնահատման մեթոդները, այնտեղ հաշվի առնելով տնտեսության բոլոր օղակներում ստացվող վնասը։

Վերը շարադրված դրույթները, մեր կարծիքով, կարող են օգտակար լինել նյութական պատասխանատվության սիստեմի մշակման և ներդրման համար։ Նույնպիսի տեսանկյունից կարելի է դիտել և նյութական շահագրգռվածության մյուս կողմը՝ նյութական խթանման սիստեմը։ Նյութական խթանման գիտականորեն հիմնավորված սիստեմի լայն կիրառումը կօժանդակի աշխատավոր զանգվածների էլ ավելի ակտիվացմանը, տնտեսական խնդիրների լուծման ժամանակ նրանց ձեռներեցության բարձրացմանը, բաց թողնվող արտադրանքի ծավալի խիստ աճին ու որակի բարձրացմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը մեծ ուշադրություն նվիրեց աշխատողների նյութական խթանման հարցերին։ Ինչպես արդարացիորեն նշվեց պլենումում, ձեռնարկության աշխատանքի ընդհանուր արդյունքների բարելավման գործում արտադրական կոլեկտիվի և յուրաքանչյուր աշխատողի շահագրգռվածությունը ներկայումս խիստ անբավարար է, շահույթի ավելացման և արտադրության շահութաբերության բարձրացման գործում ձեռնարկության ձեռք բերած հաջողություններն անմիջականորեն չեն անդրադառնում ձեռնարկության աշխատողների աշխատավարձի վրա։ Պլենումն



անհրաժեշտ համարեց փոխել այդ պրակտիկան և սահմանել այնպիսի կարգ, որ բանվորների ու ծառայողների աշխատանքի վարձատրությունը բարձրացնելու՝ ձեռնարկությունների հնարավորությունները պայմանավորվեն, ամենից առաջ, արտադրության աճով, արտադրանքի որակի բարելավմամբ, շահույթի ավելացմամբ և արտադրության շահութաբերության բարձրացմամբ։

Այդ նպատակով պլենումը գտավ, որ շահույթից կատարվող մասհանումների հաշվին յուրաքանչյուր ձեռնարկությունում պետք է ստեղծվի աշխատողների նյութական խրախուսման ֆոնդ։ Այդ ֆոնդի համար մասհանումները պետք է կատարվեն մի շարք տարիների համար սահմանվող կայուն նորմատիվներով և այնպես, որ նյութական խրախուսման ֆոնդի չափերը կախում ունենան պլանով նախատեսված արտադրանքի իրացման ծավալի կամ շահույթի աճից և շահութաբերության մակարդակից։ Ձեռնարկություններում նաև պետք է ստեղծվի սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդ։ Որքան լավ աշխատեն կոլեկտիվի անդամները, այնքան ավելի մեծ կլինի ձեռնարկության շահույթը և համապատասխանաբար բարձր կլինի աշխատողների աշխատավարձը։

Հետևաբար, նախատեսվող միջոցառումները, որոնք արժանացան ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի վեցերորդ սեսիայի հավանությանը, հիմնովին բարելավում են աշխատողների նյութական խրախուսման սիստեմն արդյունաբերության մեջ։ Սակայն նյութական խթանման նոր սիստեմը անխափան կիրառելու համար անհրաժեշտ է լուծել մի շարք խնդիրներ։ Մի հոդվածի սահմաններում հնարավոր չէ հանգամանորեն անդրադառնալ դրանց։ Սակայն նյութական խրախուսման չափը հասարակությանը տրված լրացուցիչ օգուտից կախման մեջ դնելը առաջ է քաշում ևս մեկ խնդիր։ Անհրաժեշտ է տարբերել պոտենցիալ, այսինքն՝ հնարավոր օգուտը և փաստացի օգուտը։ Խրախուսման չափը պոտենցիալ և փաստացի օգուտից պետք է տարբեր լինի, նկատի ունենալով, որ պոտենցիալ օգուտը փաստացի դառնալու համար մեծ մասամբ պահանջվում են նպատակահարմար պայմաններ, որոնք ոչ միշտ կարող են լինել (օրինակ, մի ձեռնարկության բոլոր օղակների կողմից միաժամանակ իրենց պարտականությունների ավելի լավ կատարումը, քան պլանավորված է նորմատիվներով)։

Այս տեսանկյունից նպատակահարմար կարելի է համարել, որ խրախուսումը սկզբում համապատասխանի պոտենցիալ օգուտին, սակայն ոչ լրիվ չափով, իսկ խրախուսման հիմնական մասը վճարվի միայն փաստացի օգուտն ստանալուց հետո։ Այդպիսի մոտեցում հարկավոր է կիրառել խրախուսման համարյա բոլոր դեպքերում։ Դրա համար անհրաժեշտ է սահմանել խրախուսման չափի գիտականորեն հիմնավորված նորմատիվներ պոտենցիալ և փաստացի օգուտից առանձին-առանձին, հաշվի առնելով, մի կողմից՝ այն, որ պոտենցիալ օգուտը հաճախ կարող է փաստացի օգուտ չդառնալ և, մյուս կողմից՝ այն, որ խրախուսման չափը միայն փաստացի օգուտից կախման մեջ դնելը ճիշտ չի լինի, քանի որ դա կհակասեր ըստ աշխատանքի վարձատրման սկզբունքին։

Բ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

## ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆՈՐՄԱՎՈՐՄԱՆ ԵՎ ՎԱՐՁԱՏՐՈՒԹՅԱՆ ՍԻՍՏԵՄԸ

Վերջին տարիների ընթացքում որոշ գործ է կատարվել աշխատանքի կազմակերպման, նորմավորման և վարձատրության սիստեմը կոլտնտեսություններում կատարելագործելու ուղղությամբ։ Առաջավոր կոլտնտեսություններում որոշակի փոփոխություններ են մտցվել այդ գործում։ Խոշորացվել են արտադրական փոքր բրիգադներն ու անասնաբուծական ֆերմաները։ Կազմակերպվել են տրակտորա-դաշտավարական միացյալ արտադրական բրիգադներ։ Կիրառվել են տեխնիկապես հիմնավորված բարձր արտադրական նորմաներ։ Բարելավվել է կոլտնտեսականների աշխատանքի հիմնական վարձատրությունը։ Լուրջ քայլեր են արվել աշխատանքի լրացուցիչ վարձատրության առաջավոր ձևեր և մեթոդներ կիրառելու և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու ասպարեզում։

Բայց, չնայած այդ ամենին, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում դեռևս լուրջ թերություններ կան աշխատանքի կազմակերպման, նորմավորման ու վարձատրության գործում։

Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ արտադրական փոքր միավորների՝ բրիգադների և ֆերմաների առկայությունը հնարավորություն չի տվել ռացիոնալ բաշխելու և օգտագործելու աշխատող ձեռքը և տեխնիկան, որի հետևանքով ավելացել են ընդհանուր արտադրական ծախսերը, բարձրացել է արտադրանքի ինքնարժեքը։

Աշխատանքի նորմավորման նկատմամբ կենտրոնացված ղեկավարության բացակայության, գիտականորեն հիմնավորված մեթոդով արտադրական նորմաների մշակման տեխնիկական և կազմակերպչական բնույթի դժվարությունների հետևանքով բազմաթիվ կոլտնտեսություններում արտադրական և սպասարկման նորմաները սահմանվել են աչքաչափով կամ փորձավիճակագրական տվյալների հիման վրա։ Ստեղծվել է այնպիսի վիճակ, որ նույնիսկ հողակլիմայական նույնանման պայմաններում գտնվող շատ կոլտնտեսություններում միևնույն աշխատանքի համար սահմանվել են ոչնչով չհիմնավորված, մեծ տարբերությունների հասնող արտադրական և սպասարկման նորմաներ, որոնք դասվել և գնահատվել են տարիֆային տարբեր կարգերով։ Այս-
պես, այգեփորի արտադրական մեկ նորման Էջմիածնի շրջանի Այգեշատ գյուղի կոլտնտեսությունում գնահատվել է տարիֆային ցանցի 9-րդ, Սամաղար գյուղի՝ 7-րդ, Արշալույս գյուղի՝ 5-րդ, Արագած գյուղի՝ 5-րդ, Արագած գյուղի կոլտնտեսությունում՝ 4-րդ կարգով։ Մուղան, Հայթաղ և Արշալույս գյուղերի կոլտնտեսություններում տրակտորիստին 5 աշխօր է գրանցվել 19 հեկտար



հացահատիկի ցանք, 5 աշխօր՝ 4 հեկտար խաղողի այգու միջշարային վար կատարելու համար, իսկ Մաղկունք գյուղի կոլտնտեսությունում նույնքան աշխօր գրանցվել 10 և 2,8 հեկտարի համար։

Էջմիածնի շրջանի Վ. Քյոլանլու, Արշալույս, Դաշտ, Հայթաղ, Արտաշատի շրջանի Վ. Արտաշատ, Այգեզարդ, Անիի շրջանի Քարաբերդ, Սառնաղբյուր, Իջևանի շրջանի Ռևազլու, Ուզունթալա գյուղերի կոլտնտեսություններում վերացվել են արտադրական նորմաները և տարիֆային գնահատումները, անհիմն կերպով սահմանվել են մեկ միավոր արտադրանքի գնահատումներ։

Կոլտնտեսություններում գործում է ինըկարգյա տարիֆային ցանցը, ըստ որի աշխատանքների դասակարգումն ընդունվել է ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1948 թվականի ապրիլի 19-ի որոշմամբ։ Այդ տարիֆային ցանցի համաձայն ծայրային կարգերում դասված աշխատանքները դաշտավարության մեջ գնահատվել են 5 անգամ, իսկ այգեգործության մեջ 4 անգամ պակաս չափով, քան բարձր կարգերում դասված աշխատանքները։ Ինըկարգյա տարիֆային ցանցով տարիֆավորվել են միայն բուսաբուծության մեջ ձեռքով և կենդանի քաշող ուժի միջոցով կատարվող աշխատանքները։ Անասնաբուծական և մեքենայացված աշխատանքները չեն տարիֆավորվել։ Դրա հետևանքով այդ ճյուղերում աշխատող կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության չափերի մեջ առաջ են եկել չհիմնավորված մեծ տարբերություններ։ Երբեմն ավելի բարդ, դժվար և պատասխանատու աշխատանքները դասվել են տարիֆային ավելի ցածր կարգերում, քան ավելի թեթև, ոչ բարդ և քիչ պատասխանատու աշխատանքները։ Լուրջ թերություններ կան աշխատանքի հիմնական վարձատրության գործում։

Կոլտնտեսությունների եկամուտների բաշխման կարգի համաձայն, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության մակարդակը որոշվում է տարվա վերջին, կանոնադրական հատկացումները կատարելուց հետո, կամ, ինչպես ընդունված է ասել՝ «ինչ որ մնաց»։ Մինչդեռ աշխատանքի վարձատրության ֆոնդը կոլտնտեսությունների հանրային արտադրության զարգացման համար ունի նույնպիսի նշանակություն, ինչպես արտադրության հիմնական միջոցները։ Եկամուտների բաշխման այդ կարգի հետևանքով ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների մեծ մասում չի ապահովվում կոլտնտեսականների աշխատանքի հիմնական վարձատրություն՝ երաշխավորված մինիմում չափով, որը բացասաբար է անդրադառնում հանրային տնտեսության հետագա զարգացման վրա։

1964 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 12,5 տոկոսը կոլտնտեսականներին բաշխել է դրամական միջոցների 10—30, 24 տոկոսը՝ 30—40 տոկոսը։ Կոլտնտեսությունների 20 տոկոսում մեկ մարդ-օրվա հաշվով կոլտնտեսականի հասույթը կազմել է 20 կոպեկից մեկ ռուբլի, 29 տոկոսում՝ 1 ռ.—1 ռ. 50 կոպեկ։ Այն դեպքում, երբ միջին հաշվով ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում մեկ մարդօրվա հասույթը դրանցից զգալիորեն բարձր է եղել։

Կոլտնտեսություններում խախտվում է կուտակման և ըստ աշխատանքի բաշխման ֆոնդերի համամասնությունը, աշխատանքի վարձատրության ֆոնդի աճի տեմպերը ճիշտ չեն զուգակցվում աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերի հետ։

Անհրաժեշտ աշխատանք չի տարվում կոլտնտեսականների ավանսավոր-

ման գործն արմատապես բարելավելու ուղղությամբ: Միջոցներ չեն ձեռնարկվում կոլտնտեսականների ավանսավորման (վարձատրության) փոխանցիկ ֆոնդեր ստեղծելու համար, որը բացասաբար է անդրադառնում կոլտնտեսականների աշխատանքի դիմաց ամենամսյա ավանսավորում (վարձատրություն) տալու վրա: Այդ մասին են վկայում հետևյալ տվյալները: 1964 թվականին կոլտնտեսականների կատարած աշխատանքի դիմաց տարվա ընթացքում մինչև երեք անգամ ավանսավորվել են բոլոր կոլտնտեսությունների 63,9, 4—6 անգամ՝ 26, 6, 7—9 անգամ՝ 5,1, 10 և ավելի անգամ՝ 3,1 տոկոսը:

Անբավարար աշխատանք է կատարվել լրացուցիչ վարձատրության կատարելագործման և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման ուղղությամբ:

Որպես կանոն կոլտնտեսությունները կոլտնտեսականներին նյութապես շահագրգռում են միայն պլանային առաջադրանքների գերակատարման համար, իսկ պլանների կատարման, արտադրանքի որակի բարձրացման, ինքնարժեքի իջեցման և աշխատանքի առաջավոր մեթոդների արմատավորման համար կոլտնտեսականները նյութապես չեն խրախուսվում:

Աշխատանքի կազմակերպման, նորմավորման, տարիֆավորման ու վարձատրության սիստեմը կատարելագործելու և այդ ուղղությամբ եղած թերությունները վերացնելու նպատակով ՀՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության հանձնարարությամբ գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտահետազոտական ինստիտուտը մշակեց «ՀՍՍՌ կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման, վարձատրության և տարիֆավորման սիստեմի կատարելագործման մասին» օրինակելի պայմաններ: Բացի այդ, նույն ինստիտուտը նորմատիվային հետազոտական կայանի հետ մեկտեղ մշակեց նաև «ՀՍՍՌ կոլտնտեսություններում բուսաբուծության և անասնաբուծության մեջ ձեռքով և կենդանի քաշող ուժի միջոցով կատարվող աշխատանքների» արտադրական և սպասարկման օրինակելի նորմաներ:

ՀՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության կոլեգիան քննության առավ ինստիտուտի և կայանի կողմից մշակված առաջարկությունները, հավանություն տվեց դրանց և 1965 թվականին առանձին գրքերով հրատարակեց դրանք, որոնք ուղարկվել են ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսություններին և արտադրական վարչություններին՝ արտադրության մեջ ներդնելու համար:

Խորհուրդ տրվեց կոլտնտեսություններին, ելնելով իրենց բնա-արտադրական առանձնահատուկ պայմաններից, հողի, տեխնիկայի, արտադրական այլ միջոցների, բանվորական ուժի լրիվ ծանրաբեռնվածության և արդյունավետ օգտագործման, գյուղատնտեսական մթերքների արտադրության վրա կատարվող աշխատանքային և դրամանյութային ծախսումների կրճատման անհրաժեշտությունից, առաջիկա երկու-երեք տարում 'խոշորացնել արտադրական փոքր բրիգադաներն ու անասնաբուծական ֆերմաները: Անհրաժեշտ քանակությամբ տեխնիկա լինելու դեպքում կազմակերպել տրակտորա-դաշտավարական (տրակտորա-բուսաբուծական) միացյալ արտադրական բրիգադներ, իսկ դրանց ներսում՝ տեխնիկական և մյուս շարահերկ կուլտուրաների մշակման կոմպլեքսային մեքենայացված օղակներ:

Անասնաբուծական ինքնուրույն ֆերմաներ կազմակերպել անասունների հետևյալ գլխաքանակի դեպքում՝ կաթնապրանքային ֆերմաներում՝ ոչ պակաս 400 գլուխ խոշոր եղջերավոր անասուն (բոլոր հասակի), ոչխարաբուծական



ֆերմաներում՝ ոչ պակաս 2000 գլուխ ոչխար և այծ (բոլոր տեսակի), խոզաբուծական ֆերմաներում ոչ պակաս 200 գլուխ խոզ (բոլոր տեսակի), թռչնաբուծական ֆերմաներում ոչ պակաս 5000 գլուխ հասակավոր թռչուն: Այն կոլտնտեսություններում, որտեղ ըստ անասնատեսակների նշված գլխաքանակը չի ապահովվի, կկազմակերպվեն խառը ֆերմաներ:

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում բուսաբուծության և անասնաբուծության մեջ ձեռքով, կենդանի քաշող ուժի միջոցով կատարվող աշխատանքների արտադրական և սպասարկման օրինակելի նորմաները մշակելիս հաշվի են առնվել՝ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների բնապատմական տարբեր պայմանները, այդ պայմաններում գյուղատնտեսական կուլտուրաների մշակության ագրոտեխնիկայի առանձնահատկությունները, աշխատանքների կատարման և անասունների խնամքի, կերակրման ու պահպանման պայմանները, անասնաբուծական և անասնաբուժական կոմպլեքս միջոցառումների կիրառման առանձնահատկությունները, մթերատվության մակարդակը և աշխատատար պրոցեսների մեքենայացման աստիճանը:

Ներկա արտադրական նորմաները մշակելիս օգտագործվել են գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտահետազոտական ինստիտուտի ու նորմատիվային հետազոտական կայանի կողմից ռեսպուբլիկայի սովխոզներում և կոլտնտեսություններում բուսաբուծության ու անասնաբուծության մեջ կատարված աշխատանքների խրոնոգրաֆիական դիտարկումների արդյունքները, ռեսպուբլիկայի մոտ 220 կոլտնտեսությունների և սովխոզների գործող արտադրական նորմաները, առավել կարևոր և մասսայական աշխատանքների փաստացի կատարողականները, միութենական մի շարք ռեսպուբլիկաների և մարզերի կոլտնտեսությունների համար մշակված օրինակելի արտադրական նորմաները:

Առաջարկվող նորմաներն օրինակելի են և նպատակ ունեն օգնելու կոլտնտեսություններին, դրանց հիման վրա, իրենց հողակլիմայական և արտադրական պայմաններին համապատասխան, բուսաբուծության մեջ արտադրական և անասնաբուծության մեջ անասունների ու թռչունների սպասարկման տեխնիկապես հիմնավորված նորմաների մշակմանը: Բուսաբուծության բաժնում արտադրական օրինակելի նորմաները մշակվել են ըստ առանձին կուլտուրաների, հաշվի առնելով յուրաքանչյուր կուլտուրայի ցանքի (տնկման, սածիլման), մշակության, բերքահավաքի և պահեստավորման բոլոր աշխատանքները, ելնելով դրանց հաջորդականությունից:

Անասնաբուծության բաժնում առանձնակի տեղ է հատկացված անասնաբուծական ֆերմաներում աշխատող կոլտնտեսականների հիմնական պարտականություններին: Տարբեր ֆերմաների անասունների և թռչունների սպասարկման օրինակելի նորմաները սահմանվել են ըստ առանձին սեռահասակային խմբերով:

Բուսաբուծության մեջ արտադրական, անասնաբուծության մեջ սպասարկման օրինակելի արտադրական նորմաների արմատավորումը հնարավորություն կտա վերացնելու նորմավորման գործում գոյություն ունեցող թերությունները, չհիմնավորված տարբերություններն ու գնահատումները: Այն միաժամանակ կբարձրացնի կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը և աշխատանքի արտադրողականությունը: Աշխատանքային և դրամա-

նյութային նվազագույն ծախսումներով ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ կարտադրվեն և նկատելիորեն կիջնի արտադրանքի ինքնարժեքը։

Աշխատանքի տարիֆավորումը կատարելագործելու նպատակով նախատեսվում է կոլտնտեսություններում բուսաբուծության և անասնաբուծության մեջ զբաղված կոլտնտեսականների վարձատրությունը (ձեռքով և կենդանի քաշող ուժի միջոցով) կատարել վեցկարգյա տարիֆային ցանցի միջոցով, մինչև այժմ գոյություն ունեցող ինըկարգյա տարիֆային ցանցի փոխարեն, հետևյալ կերպ.

| | Տարիֆային կարգերը | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | առաջին | երկրորդ | երրորդ | չորրորդ | հինգերորդ | վեցերորդ |
| Տարիֆային գործակիցները . . . . . . . | 1,0 | 1,15 | 1,30 | 1,50 | 1,75 | 2,0 |
| Տարիֆային գնահատումները աշխօրերով . . . | 1,0 | 1,15 | 1,30 | 1,50 | 1,75 | 2,0 |
| Ժամանակավարձային գնահատումները աշխօրերով . . . . . . . . . . . . . . | 0,9 | 1,0 | 1,15 | 1,35 | 1,55 | 1,80 |

Առաջարկվող վեցկարգյա տարիֆային ցանցի կիրառման շնորհիվ կվերանան աշխատանքի տարիֆավորման գործում թույլ տրված սխալներն ու խախտումները, ծայրակարգերում դասված աշխատանքների գնահատման չհիմնավորված մեծ տարբերությունները։ Տարիֆային ցանցի վերջին կարգում դասված աշխատանքները, առաջին կարգում դասված աշխատանքների համեմատությամբ, ավելի են վարձատրվելու 1 : 2 հարաբերությամբ, կամ այլ կերպ ասած՝ վերջին կարգի աշխատանքները երկու անգամ ավելի են վարձատրվելու առաջին կարգի աշխատանքներից։ Այսպիսով աշխատանքը վարձատրվելու է ըստ քանակի ու որակի. այդ հանգամանքը դրականորեն կանդրադառնա կոլտնտեսականների աշխատանքային ակտիվության և հանրային արտադրության բարձրացման վրա։

Արտադրական և սպասարկման նորմաների, տարիֆային գնահատումների մշակման և նրանց կենսագործման վրա հսկողություն սահմանելու և տնտեսագիտական աշխատանքը բարելավելու նպատակով խոշոր կոլտնտեսություններին խորհուրդ է տրվում ունենալ տնտեսագետ-նորմավորողի հաստիք։ Մնացած կոլտնտեսություններում այդ պարտականությունները կարելի է դնել գյուղատնտեսական կրթություն ունեցող համապատասխան մասնագետների վրա։

Նախատեսվում է առանձնահատուկ ուշադրություն դարձնել աշխատանքի հիմնական վարձատրության վրա, որը հանդիսանում է կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման վճռական պայմանը։ Պետք է միջոցներ ձեռք առնել կուտակման և կոլտնտեսականների աշխատանքի դիմաց բաշխվող ֆոնդերի համամասնությունը ճիշտ պահպանելու համար։ Խորհուրդ է տրվում կոլտնտեսություններին՝ տարվա ընթացքում ստացված դրամական միջոցների (եկամուտների) ոչ պակաս 50 տոկոսը բաշխել կոլտնտեսականներին, հասնել այն բանին, որ կոլտնտեսականներն իրենց աշխատանքի դիմաց ստանան երաշխավորված մինիմում վարձատրություն։ Վերջ տալ այն արատավոր պրակտիկային, երբ համաձայն աշխատանքի վարձատրության մակարդակը որոշվում էր միայն տարեվերջին, հատկացումները կատարելուց հետո՝ «ինչ որ մնաց»։



Կոլտնտեսականներին ամենամսյա վարձատրություն տալու և ավանսավորելու նպատակով խորհուրդ է տրվում յուրաքանչյուր ամիս տնտեսության բոլոր ճյուղերից ստացված դրամական եկամուտների 40—45, իսկ մթերող կազմակերպություններից ստացված ավանսների 50 տոկոսը փոխանցել վարձատրության հատուկ ընթացիկ հաշվին և օգտագործել միայն վարձատրության (ավանսավորման) համար։ Բացի դրամական ավանսներից, կոլտնտեսականներին տալ նաև բնամթերային (հացահատիկ, բանջարեղեն, անասնաբուծական մթերքներ) ավանսներ։ Ստեղծել վարձատրության (ավանսավորման) դրամական փոխանցիկ ֆոնդեր, որոնց չափերը յուրաքանչյուր կոլտնտեսությունում չպետք է պակաս լինեն առաջիկա երեք ամսվա երաշխավորված վարձատրության մակարդակից։

Հանրային արտադրության զարգացման, այդ գործում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման համար կարևոր նշանակություն ունի աշխատանքի լրացուցիչ վարձատրության սկզբունքների ճիշտ կիրառումը։ Նախատեսվում է կոլտնտեսականների աշխատանքի դիմաց լրացուցիչ վարձատրություն տալ գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանների կատարման և գերակատարման, արտադրանքի որակի, պլանային ինքնարժեքի իջեցման, գյուղատնտեսական կարևորագույն աշխատանքների ժամանակին և որակով կատարման (նախորդ 3—5 տարվա ընթացքում բերքատվության և մթերատվության գծով ձեռք բերված փաստացի միջին մակարդակի նկատմամբ) տվյալ տարում ձեռք բերված ցուցանիշների գծով ստացված հավելյալ արտադրանքի համար (վերջին պայմանը կիրառելու դեպքում առաջին պայմանը չի կիրառվելու)։

Աշխատանքի լրացուցիչ վարձատրությունը կոլտնտեսականներին տրվում է ըստ նրանց վաստակած աշխօրերի, յուրաքանչյուր մթերքի արտադրության համար, անկախ մյուս մթերքների արտադրության պլանների կատարումից։ Յուրաքանչյուր աշխատողին հասանելիք լրացուցիչ վարձատրության ընդհանուր չափը, դրամական արտահայտությամբ, չպետք է գերազանցի տվյալ կուլտուրայի և անասնաբուծական մթերքների գծով հասանելիք հիմնական վարձատրության 50 տոկոսը։

Լրացուցիչ վարձատրությունը կոլտնտեսականների ցանկությամբ կարող է վճարվել դրամով կամ տրվել բնամթերքով։

Աշխատանքի կազմակերպման, նորմավորման, տարիֆավորման և վարձատրության սիստեմի կատարելագործումը և նախատեսված միջոցառումների ճիշտ և ժամանակին կենսագործումը վճռական նշանակություն կունենա, կոլտնտեսությունների արտադրական բրիգադներին, անասնաբուծական ֆերմաներին և յուրաքանչյուր աշխատողին նյութապես կշահագրգռի ոչ միայն իրենց առաջադրանքների կատարման, այլև կոլտնտեսության աշխատանքի ընդհանուր արդյունքների նկատմամբ։ Անհրաժեշտ է կոլտնտեսության ամբողջ գործունեությունը նպատակամղել՝ ուղիներ որոնելու արտադրության էկոնոմիկան բարելավելու, եկամուտները և արդյունավետությունը բարձրացնելու համար։

Ս. ՄԱՐԴՈՅԱՆ
ՀՍՍՌ գյուղատնտեսության մինիստրության կոլտնտեսությունների և սովխոզների գործերի գլխավոր վարչության պետ

# ՆՈՐ ԳՅՈՒՂԻ ՀԻԳԻԵՆԱՆ

Մեծ նշանակություն տալով գյուղական շրջանների բնակչության սանիտարական կուլտուրային, մեր գյուղում (Արմաշում) կազմակերպեցինք «Սանիտարական կուլտուրայի թանգարան», որն առաջինն է ՍՍՌ Միությունում։ Թանգարանի բազայի վրա կազմակերպելով սանիտարական կուլտուրայի համալսարան և մայրերի ուսուցման դպրոց, ինչպես նաև ցուցադրական այլ միջոցներով ուժեղացնելով սանիտարական պրոպագանդան, զգալի հաջողությունների հասանք մեր գյուղերի սանիտարական կուլտուրայի բարձրացման ասպարեզում։ Մտադիր ենք մոտ ապագայում կազմակերպել նաև բժշկասանիտարական տաղավար։ Այդտեղ, համաձայն հիգիենայի կանոնների, պետք է կառուցվեն բոլոր այն բնակարանային-կենցաղային օբյեկտները, որոնք անհրաժեշտ են ժամանակակից գյուղի բնակչության պահանջները բավարարելու համար՝ տիպային բաղնիք, դաշտային ծածկոցներ, տիպային զուգարաններ, աղբարկղներ, կաթնախոհանոց, մսուր-մանկապարտեզ և այլն։ Տաղավարում կկառուցվի նաև կոլտնտեսականի տիպային բնակարան իր բոլոր հարմարություններով։

Մեր կարծիքով սանիտարական լուսավորության տարածումը գյուղական վայրերում պետք է տարվի հանրամատչելի, նպատակասլաց ձևերով։ Անհրաժեշտ է նկատի ունենալ տեղի բնակիչների կենցաղը, կուլտուրական մակարդակը, գյուղական արտադրության սպեցիֆիկան։

Ակնհայտ է, որ անցած 45 տարիների ընթացքում անհամեմատ փոխվել են սովետական գյուղը, նրա կենցաղը, արտաքին տեսքն ու կուլտուրան։ Անցյալում խղճուկ, կեղտոտ, հիմնականում հողաշեն տների փոխարեն, որոնց հետքերը մինչև օրս էլ մնում են, կառուցվել են նոր բնակավայրեր՝ քարաշեն, հարմարավետ ու լուսավոր բնակարաններով, երկհարկանի, տիպային հասարակական շենքերով, լայն, ասֆալտապատ փողոցներով, արտադրական տեղամասերով։ Գյուղերում ամենուրեք կարելի է տեսնել տիպային դպրոցներ, հիվանդանոցներ, ակումբներ, գրադարաններ, մսուր-մանկապարտեզներ, խանութներ և այլն։ Մեր գյուղերն այժմ էլեկտրիֆիկացված, ռադիոֆիկացված են։ Չնայած այդ մեծ փոփոխություններին, այժմ էլ շարունակվում են գյուղերի վերակառուցումը, նրանց հետագա աճն ու բարեկարգումը։ Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ այժմ կոլտնտեսականի կենցաղային պայմանները շատ բանով նմանվում են քաղաքային ապրելակերպին։

Խոսելով գյուղի աննախընթաց աճի, բարեկարգման, սանիտարա-հիգիենիկ պայմանների մասին, անհրաժեշտ է նշել, որ դեռ շատ բան կա անելու, որպեսզի ամենուրեք այսօրվա գյուղը համապատասխանի սանիտարա-հիգիենիկ այն պահանջներին, որոնք անհրաժեշտ են մարդկանց առողջության պահպանման, նրանց ֆիզիկական ու հոգեկան ուժերի ծաղկման համար։ Ժամանակակից գյուղի սանիտարական բարեկարգման, առողջարար, հիգիենիկ պայմաններ ստեղծելու համար, պետք է ճիշտ տեղադրվեն հիմնական թաղամասերն ու շենքերը, այսինքն՝ գյուղը պետք է կառուցվի կամ վերակառուցվի ըստ



նախագծի, ունենա իր բնակավայրի պլանը, լրիվ բավարարված լինի որակյալ ջրով, անհրաժեշտ չափով կանաչապատվի, ժամանակին ազատվի կեղտից ու թափթփուկներից։

Գյուղի նախագիծը պետք է կազմվի նկատի ունենալով բնակավայրի առանձնահատկությունները։ Այնտեղ պետք է հաշվի առնվեն ինչպես կոլտնտեսության կամ սովխոզի ներկայիս պահանջները, այնպես էլ նրա հետագա աճի հեռանկարային հնարավորությունները։ Հիգիենայի տեսակետից լավագույն հողամասերում բնակավայրերը կառուցելուց բացի, պետք է հոգալ նաև, որ գյուղի ծայրամասից 25—30 մետրի վրա 15—20 մետր լայնությամբ ձգվեն անտառաշերտերը, ինչպես գյուղամիջյան, այնպես էլ մայրուղիները լինեն բնակավայրից որոշ հեռավորության վրա՝ գյուղը փոշուց և աղմուկից հեռու պահելու նկատառումով։ Գյուղամիջի ճանապարհները պետք է լինեն լայն, ասֆալտած և կանաչապատ։

Յուրաքանչյուր գյուղի պլանավորման, նրա հեռանկարային նախագծերը կազմելու ժամանակ անհրաժեշտ է այն բաժանել 2 զոնայի։ Առաջինը՝ դա բնակելի զոնան է, որտեղ տեղավորված են բնակելի շենքերը, կուլտուր-կենցաղային և ադմինիստրատիվ-հասարակական հիմնարկները, երկրորդում՝ արտադրա-տնտեսական շինությունները։ Բնակելի տները պետք է լինեն արևահայաց, բավարար լինի օդափոխությունը։ Հարկ է, որ գյուղամիջի փողոցներն ունենան մայթեր։ Բնակելի զոնայի կենտրոնում պետք է տեղադրվեն ադմինիստրատիվ, հասարակական շենքերը՝ գյուղական սովետը, կոլտնտեսության վարչությունը կամ սովխոզի դիրեկցիան, խանութները, փոստը, կուլտուր-լուսավորչական հիմնարկները և այլն։

Դպրոցը, մանկական և բուժ-պրոֆիլակտիկ հիմնարկները պետք է տեղադրվեն հասարակական կենտրոնից որոշ հեռավորության վրա, սանիտարական տեսակետից լավագույն տեղերում։ Յուրաքանչյուր գյուղական բնակավայր պետք է ունենա սպորտ հրապարակ, ֆուտբոլի, վոլեյբոլի և բասկետբոլի դաշտեր, լողի ջրավազան և այլն։ Ոչ մի բարեկարգ գյուղ չպետք է մնա առանց բաղնիքի։ Լավ կլինի բաղնիքին կից կազմակերպել լվացքատուն, որը կթեթևացնի աշխատավոր կանանց գործը։ Մեր գյուղերը պետք է ունենան վարսավիրանոցներ՝ տեղավորված գյուղի կենտրոնում, ինչպես և բաղնիքում։ Ինչպես լողանալը, այնպես էլ ժամանակին մազերը խնամելը պարտադիր է մարդու անձնական հիգիենայի համար։

Այդպե՞ս են կառուցվում մեր գյուղերն ու ավանները, լրիվ հաշվի՞ են առնվում այդ հանգամանքները։ Դեռևս ոչ։ Ինչպես նոր բնակավայրեր կառուցելիս, այնպես էլ հները վերակառուցելիս հաճախ անտեսվում են այդ ընդհանուր և անհրաժեշտ կանոնները։ Այսպես, օրինակ, դեռևս 1953 թվականին ըստ Արմաշ գյուղը վերակառուցողների, այստեղ ավարտված էին շինարարական բոլոր աշխատանքները։ Իսկ ի՞նչ էր ներկայացնում իրենից այդ ավարտված գյուղը։ Հին շինությունների մոտ կառուցվել էին 200-ից ավելի բնակելի տներ և գործը համարելով ավարտված, սկսվեց մեծ քանակությամբ վերաբնակիչների ընդունումը։ Հին գյուղը կարծես թե մեծացավ, աշխուժացավ, ավելացավ մարդկանց թիվը, բազմապատկվեցին նրանց տնտեսությունները, սակայն, ինչպես նախկինում, այդ բնակավայրը չուներ ճաշարան, բաղնիք, մսուր-մանկապարտեզ, գեղատուն և այլն։ Երեխաները շարունակում էին սովորել դպրոցին հատկացված նույն հողաշեն շենքերում, բնակիչներն իրենց երեկոյան հանգիստն էին անցկացնում խարխուլ ակումբում, տնային տնտեսուհիները ջուր էին բերում գյուղից 2 կմ. հեռավորության վրա գտնվող միակ աղբյուրից, իսկ երեկոյան նորից նավթի լամպերն էին նրանց լույսի աղբյուրը։ Չկար ոչ մի բարեկարգ կուլտուր-կենցաղային օբյեկտ, մինչդեռ նոր մարդիկ էին հրավիրվել այստեղ ապրելու և աշխատելու։

Մի՞թե հնարավոր չէր մի քանի բնակելի շենքեր ուշ ավարտել, կամ բոլորովին չկառուցել և դրանց փոխարեն հենց սկզբից, բնակելի շենքերի հետ մեկտեղ հիմնադրել ու նախագծի համաձայն կառուցել նաև այդ գյուղի բաղնիքը, մսուր-մանկապարտեզը և այլն, որպեսզի մարդիկ, նրանց ընտանիքի անդամ-

ները, տեղափոխվելով նոր միջավայր, զուրկ չլինեին ամենատարրական հարմարություններից։ Նույնը, դեռ ավելին, կարելի է ասել մեր շրջանի Ս. Սպանդարյանի սովխոզի մասին, որը նույն տարիներին կառուցվեց բոլորովին նոր տեղում, նույն ձևով. հետագայում որքա՜ն տարիների համառություն ու ջանք պահանջվեցին և այժմ էլ պահանջվում են, որպեսզի կառուցվեն մյուս անհրաժեշտ հասարակական օբյեկտները։ 200-ից ավելի երեխա ունեցող այդ բնակավայրը միայն այս տարի շահագործման հանձնեց մսուր-մանկապարտեզի շենքը, իսկ բաղնիքի կառուցման աշխատանքները դեռ շարունակվում են։ Ժամանակն է, որ նոր բնակավայրերը կառուցվեն և շահագործման հանձնվեն միայն այն ժամանակ, երբ պատրաստ լինի բնակարանային-կենցաղային ողջ կոմպլեքսը։

Կոլտնտեսությունների և սովխոզների համար կարևոր նշանակություն ունի տնտեսական-արտադրական զոնան, ուր տեղադրվում են անասնապահական ֆերմաները, պահեստները, մեքենայական պարկը և այլն։ Այդ ամենը պետք է տեղադրվեն բնակելի մասից որոշակի հեռավորության վրա՝ մեքենայական պարկը և այլ պահեստներ 100, անասնապահական ֆերմաները՝ 300 մետր հեռու։ Այդ նույն հեռավորության վրա պետք է գտնվեն անասնապահությանն սպասարկող անասնաբուժական բոլոր հիմնարկները։ Յուրաքանչյուր բնակավայր պետք է ունենա իր սպանդանոցային կայանը՝ բնակելի զոնայի ծայրամասից 300 մետր հեռու և անասնագերեզմանոցը՝ գյուղից մեկ կիլոմետր հեռավորության վրա։ Ամենուրեք անհրաժեշտ է մշտական սանիտարական հսկողություն։ Գյուղական վայրերում գերեզմանները պետք է տեղադրվեն բնակելի զոնայի ծայրամասից 300 մետրից ոչ մոտ, բարձրադիր վայրում և խմելու ջրի աղբյուրներից հեռու։ Ժամանակակից բնակավայրի համար երկրորդ կարևոր հարցը նրա ջրամատակարարման պրոբլեմն է, որը մեծ նշանակություն ունի սանիտարական բարեկարգման համար։ Մարդու բոլոր կարիքները բավարարելու համար 24 ժամվա ընթացքում պահանջվում է 40—60 լիտր ջուր, իսկ այնտեղ, ուր կա կոյուղի, այդ պահանջը հասնում է 100—150 լիտրի։ Բայց այն պետք է ո՛չ միայն ունենալ, այլև պահպանել տարբեր աղտոտություններից, այլապես կարող է դառնալ վարակի աղբյուր։ Ուրեմն, պետք է ջանալ ո՛չ միայն բավարար չափով ջուր ստանալ, այլև մտածել այն մասին, որ ջուրը տեղ հասցվի համապատասխան սանիտարական վիճակում, իսկ դրա համար մեզ մոտ այժմ կան բոլոր անհրաժեշտ պայմանները։

Գյուղական վայրերի սանիտարական պահպանության համար նշանակություն ունի բնակավայրերից կեղտն ու թափթփուկները ժամանակին դուրս բերելը և գոմաղբի կոմպոստացումը։ Այս ամենը շատ լավ հայտնի է, մնում է, որ տեղերում ճշտապահորեն կատարվեն դրանք։

Մեզ մոտ, Արմաշ և Սուրենավան գյուղերում, շաբաթը 2 անգամ աղբը դուրս է բերվում հատուկ մեքենաներով, որը շատ է օգնում գյուղը սանիտարական պատշաճ վիճակում պահպանելու գործին։ Սակայն նույնը չի կարելի ասել Արազափի և մեր շրջանի շատ այլ գյուղերի մասին։ Գյուղական վայրերի սանիտարական բարեկարգման, գեղեցկացման, առողջ միկրոկլիմա ստեղծելու առումով մեծ է շրջապատի կանաչապատման դերը՝ հատկապես Արարատյան դաշտավայրերում։ Նկատի ունենալով այդ, շատ կարևոր է, որ յուրաքանչյուր գյուղում ծառաշատ լինեն ոչ միայն տնամերձներն ու փողոցները, այլև բնակավայրերը շրջապատվեն ծառաշերտերով, ունենան զբոսայգիներ, պուրակներ, ծաղկանոցներ։

Շարադրելով հիգիենայի տեսակետից ժամանակակից գյուղին ներկայացվող մի քանի անհրաժեշտ պահանջներ, մենք կցանկանայինք, որ այդ ամենը լավ հիշեն բոլոր նրանք, ումից կախված են մեր գյուղերի, ինչպես ներկայիս սանիտարա-հիգիենիկ վիճակը, այնպես էլ նրա հեռանկարային վերակառուցումները։ Ինչ խոսք, ոչ բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները անհրաժեշտ հնարավորություններ ունեն։ Դրա պատճառները տարբեր են։ Սակայն անսահման մեծ է յուրաքանչյուր տնտեսության ղեկավարի, սովետական ու պարտիական տեղական կազմակերպությունների դերը այդ հարցերի ժամանա-



կին առաջքաշման և լուծման խնդրում։ Այժմ, երբ աճում են մարդկանց կուլտուր-կենցաղային պահանջները, երբ տարեցտարի բարելավվում են սովետական մարդու բնակարանային պայմանները, կոլտնտեսության յուրաքանչյուր նախագահ, սովխոզի դիրեկտոր պետք է ձգտի ամենօրյա պրակտիկ աշխատանքի հետ հնարավոր ամեն բան անել ներկայիս պահանջներին համապատասխան գյուղը վերակառուցելու համար։ Եվ այդ պետք է կատարվի աստիճանաբար, ըստ օբյեկտների անհրաժեշտության ու կարևորության։

Վեդու շրջանի Արարատի կոլտնտեսությունը (նախագահ Ռ. Ալեքսանյան) այսօր կարող է պարծենալ ո՛չ միայն իր արտադրական հաջողություններով, այլև լայն, ասֆալտապատ փողոցներով, շքեղ կուլտուրայի պալատով, բարեկարգ մսուր-մանկապարտեզով, հիանալի տիպային դպրոցով, սպորտ-հրապարակով և կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներով։ Գյուղատնտեսության նվաճումների հետ մեկտեղ այստեղ շարունակվում են նաև շինարարական ու բարեկարգման աշխատանքները, աշխատավորության համար նպաստավոր պայմաններ ստեղծելով ավելի գեղեցիկ ապրելու և աշխատելու համար։ Նման աշխատանքներ են կատարվում նաև Կիրովի անվան սովխոզում, Ավշար, Թայթան գյուղերում և մի շարք այլ բնակավայրերում։

Ցավոք սրտի նույնը չի կարելի ասել Վեդու շրջանի լեռնային և նախալեռնային (Ջիման, Սաղափլու, Ղադրլու, Ղարախաչ, Սովետաշեն), ինչպես և հարթավայրում գտնվող մի շարք (Այգևան, Նոր կյանք, Շիրազլու, Խալիսա, Շիդլու, Ենգիջա, Ղարալար) գյուղերի մասին։ Այսպես, Այգևանը (նախագահ Հ. Գրիգորյան) շինարարական և բարեկարգման աշխատանքների մեծ հնարավորություններ ունի, մոտավորապես այնքան, որքան Արարատի կոլտնտեսությունը։ Սակայն այդտեղ չկա բաղնիք, գյուղամիջյան փողոցներն ասֆալտապատված չեն, անմխիթար վիճակում են ծննդատունը, մսուր-մանկապարտեզը։ Կաթնամթերային մեծ ֆերմա ունեցող այս կոլտնտեսությունը մինչև այժմ չի կազմակերպել կաթնախոհանոց և ամռանը, երբ տասնյակ, հարյուրավոր մայրեր աշխատում են կոլտնտեսության դաշտերում, նրանց երեխաները չեն ապահովվում համապատասխան կաթնամթերքներով։ Պետք է շտապել ամենամոտ ապագայում անել այն, ինչ աչքաթող է արվել մինչև օրս։

Անտարակույս, մեր հանրապետությունում դժվար թե գտնվի պարտիայի գյուղական, շրջանային բյուրոյի մի որևէ որոշում, որով խիստ տույժի ենթարկվի կոլտնտեսության կամ սովխոզի ղեկավարն այդ հարցում թույլ տված անտարբերության, անպատասխանատու վերաբերմունքի համար։ Միևնույն ժամանակ չկա և այնպիսի կարգ, որ գյուղատնտեսական տարվա վերջում, մյուս ցուցանիշներն ամփոփելիս ու գնահատելիս նկատի առնվեն նաև բարեկարգման աշխատանքներն ու սանիտարական կուլտուրայի բարձրացման հարցերը։ Մի՞թե հնարավոր չէ հասնել այն բանին, որ շրջանում կոլտնտեսությունների ու սովխոզների առաջնություն սահմանվի նաև այդ տեսակետից։

Այսօր ամեն գյուղ պետք է ունենա իր հեռանկարային նախագիծը և ամեն ինչ կառուցի դրան համապատասխան։ Շինարարությունը պլանավորող և մատակարարող գերատեսչությունները, պետպլանը միայն այն դեպքում պետք է թույլատրեն գյուղերում կառուցել կուլտուր-կենցաղային մեծ օբյեկտներ, երբ վերջիններս ունեն իրենց նախագիծը և կառուցվելու են նախագծային հերթականությամբ։ Կարծում ենք՝ ամենից առաջ պետք է կառուցվեն գյուղի հիգիենայի, բնակչության կուլտուր-կենցաղային պահանջների բարելավման հետ կապված օբյեկտները։ Այլապես շատ դեպքերում կառուցումներն սկսում են այնպես, ինչպես ցանկանում է տեղի ղեկավարը, կամ ինչպես հաջողվում է նրանց։ Օրինակ, Վեդու շրջանի մի շարք գյուղերում կառուցվել կամ կառուցվում են մեծ, շքեղ կուլտուրայի տներ, մինչդեռ չունեն բաղնիք, մսուր-մանկապարտեզ, կաթնախոհանոց, սպանդանոց, վարսավիրանոց և այլն։

Վերջերս մամուլում բանավեճ է սկսվել այն հարցի շուրջ, թե գյուղերում բնակելի ինչպիսի շենքերի կառուցումն է նպատակահարմար՝ բազմահա՞րկ, թե առանձնատների։

Մեր կարծիքով սխալվում են նրանք, ովքեր սոցիալիստական գյուղի հե-

տագա զարգացման մեջ լայն կերպով նախատեսում են բազմահարկ բնակելի շենքերի կառուցումը: Գյուղը պետք է զարգանա առանց կորցնելու իր բնական յուրահատկությունը: Չնայած բազմահարկ շենքերի մի շարք առավելություններին, դեռևս վաղաժամ է դրանց մասին խոսելը: Վերցնենք Վեդու շրջանի Ս. Սպանդարյանի անվան սովխոզը: Ոչ մի գյուղացու չի հրապուրում բնակելի երկհարկանի շենքի գեղեցիկ ֆասադը: Ով գիտե գյուղացու կենցաղը, նրա այսօրվա պահանջներն ու բավարարման միջոցները, նա չի ձգտի գյուղը կառուցապատել բազմահարկ շենքերով: Այսօրվա մեր գյուղացին պահանջում է բարեկարգ, ժամանակակից հարմարություններով օժտված, պլանով կառուցված առանձնատներ: Իհարկե, մենք չենք բացառում բազմահարկ շենքերի կառուցումը գյուղերում, բայց դրանք պետք է լինեն բացառապես հասարակական օգտագործման օբյեկտներ:

Գյուղական բնակավայրերի սանիտարական բարեկարգման ու վերակառուցման գործում խիստ մեծ են տեղի բուժաշխատողների անելիքները: Նրանց խնդիրն է ո՛չ միայն լայն բացատրական աշխատանք ծավալել սանիտարական տեսակետից բարեկարգ բնակավայրերի հիգիենայի դերի, այլև մարդկանց առողջության և երկարակեցության վերաբերյալ, նրանք պետք է ժամանակին նկատեն այդ բնագավառում եղած բացերը, առաջարկություններ անեն դրանք վերացնելու մասին, ակտիվ մասնակցեն գյուղի պլանավորման գործին, լինեն հետևողական բոլոր այն խնդիրներում, որոնք կապված են իրենց գյուղերի կառուցման և վերակառուցման հետ, դառնան այդ գործի համար մղվող պայքարի առաջամարտիկներ:

Յուրաքանչյուր բնակավայրի բարեկարգման, նրա սանիտարական կուլտուրայի բարձրացման գործին պետք է ակտիվ մասնակցեն նաև բնակիչները, երիտասարդությունը, դպրոցականները, ողջ գյուղը: Ցավոք սրտի, դեռևս շատ հաճախ հենց իրենք՝ բնակիչներն են ստեղծում հակասանիտարական վիճակ, խախտում հիգիենայի կանոնները, ինչպես հարկն է չեն պահպանում գյուղամիջի ծառերը, մաքուր չեն պահում բակերն ու փողոցները: Ժամանակն է, որ գյուղերի բնակչությունն իր ձեռքը վերցնի սանիտարական բարեկարգման և նրա հսկողության գործը, կազմակերպի մասսայական արշավ մեր գյուղերը բարեկարգելու, ծաղկազարդելու և գեղեցկացնելու համար:

Մեծ նշանակություն տալով բնակիչների ակտիվ մասնակցությանը բնակավայրերի բարեկարգման գործում, մեր տեղամասի կոլեկտիվը ժամանակին բնակչության մեջ լայն բացատրական աշխատանք տարավ: Այդ բանն անհետևանք չմնաց: 1959 թվականի գարնանը մեր հանրապետությունում ծայր առած հանուն սանիտարական բարձր կուլտուրայի և բարեկարգման մասսայական շարժումն սկսվեց մեր տեղամասի Արմաշ, Արազդայան և Սուրենավան գյուղերի աշխատավորների նախաձեռնությամբ, որն զգալի դեր խաղաց գյուղերի արտաքին միջավայրի առողջացման, վերակառուցման ու մարդկանց կենցաղային ու աշխատանքային պայմանների բարելավման գործում: Եվ երբ համեմատում ենք մեր ներկա վիճակն անցյալի հետ՝ տարբերությունը մեծ է, իսկ ապագան ավելի խոստումնալից է, գործաշատ:

Տարեցտարի ավելի ու ավելի մեծ հնարավորություններ են ստեղծվում գյուղական կենցաղը բարելավելու, սանիտարիայի ու հիգիենայի պրոբլեմները հաջողությամբ լուծելու համար: Խնդիրն այն է, որ այդ հնարավորություններն օգտագործվեն լայն մասշտաբներով և առավել արդյունավետությամբ: Իսկ այդ կախված է մարդկանցից, բոլոր նրանցից, ում մտահոգում է սոցիալիստական գյուղի զարգացումն ու ապագան:

Ա. ՀԱՅՐՅԱՆ
Վեդու շրջանի Արմաշի բժշկական
տեղամասի վարիչ

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ

Մ. ԱՂՈՒՋՈՒՄՅԱՆ

Ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների թեկնածու, դոցենտ

## ԷՅՆՇՏԵՅՆԸ ԵՎ ՀԱՐԱԲԵՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

Տարբեր ժամանակներում մարդկությունը ժամանակի և տարածության մասին ունեցել է տարբեր պատկերացումներ: Իդեալիստները ժխտել և այսօր էլ փորձում են ժխտել ժամանակի և տարածության օբյեկտիվ ռեալականությունը և ընդունում են, որ դրանք մարդկային մտքի, գիտակցության արդյունք են, իսկ մետաֆիզիկները մատերիան կտրում են նրա գոյության ձևերից՝ ժամանակից ու տարածությունից: Այդ սխալ հայացքների հիմնավոր քննադատությունը տվել են Ֆ. Էնգելսը և Վ. Ի. Լենինը:

Դիալեկտիկական մատերիալիզմի տեսանկյունից ժամանակը, ինչպես նաև տարածությունը, լինելով մատերիայի գոյության ձևերը, օբյեկտիվ ռեալականություն են: Հետևաբար, ժամանակը և տարածությունը գոյություն ունեն մեր գիտակցությունից դուրս և նրանից անկախ, իսկ մարդկային գիտակցությունը պետք է ճիշտ ընկալի և արտացոլի դրանք: Ֆիզիկայի հետագա զարգացումը հաստատեց ժամանակի և տարածության մասին նման փիլիսոփայական պատկերացումը: Գիտությունը հաստատեց նաև դիալեկտիկական մատերիալիզմի այն դրույթը, որ շարժվող մատերիայի այդ օբյեկտիվ ձևերի միջև գոյություն ունի օրգանական կապ: Դրա ցայտուն օրինակն է Էյնշտեյնի հարաբերականության տեսությունը, որը բացահայտում է ժամանակի և տարածության փոխադարձ կապը:

Մինչև Էյնշտեյնը, Իսահակ Նյուտոնը գտնում էր, որ ժամանակը և տարածությունը օբյեկտիվ ռեալություն են. դրանք, ինչպես և մատերիան, գոյություն ունեն օբյեկտիվորեն, բայց անկախ են մատերիայից և նրա շարժումից: Ըստ Նյուտոնի ժամանակի ընթացքը ոչնչից կախված չէ, ամենուրեք միևնույնն է: Նա գտնում էր, որ ժամանակը բացարձակ է և ժամանակակից ֆիզիկայի իմաստով ժխտում էր նրա հարաբերական լինելը: Նյուտոնը գրել է. «Բացարձակ, ճշմարիտ կամ մաթեմատիկական ժամանակը ինքն իրեն և իր ներքին էության ուժով ընթանում է միատեսակ, որևէ արտաքինի նկատմամբ ոչ հարաբերականորեն և այլ կերպ անվանվում է տևականություն...»:

Այսպիսով, մինչև Էյնշտեյնը ընդունվում էր ժամանակի անփոփոխ լինելը, որն անկախ է մարմինների կամ համապատասխան հաշվարկման սիստեմների հարաբերական դադարի կամ հավասարաչափ ու ուղղագիծ շարժման մեջ գտնվելու վիճակից: Կլասիկ մեխանիկայում ժամանակը միևնույնն է հարաբերական դադարի մեջ գտնվող, ինչպես նաև հավասարաչափ և ուղղագիծ շարժում կատարող հաշվարկման սիստեմներում: Նյուտոնյան մեխանիկան հենվում է փոխազդեցությունների կամ ազդանշանների ակնթարթորեն տարածվելու ենթադրության վրա: Ըստ Նյուտոնի մի քանի փոխազդվող մարմիններից որևէ մեկի վիճակի փոփոխությունը ժամանակի հենց նույն մոմենտում փոփոխություն է առաջացնում մյուս մարմինների վրա: Սակայն փաստերը ցույց տվեցին, որ բնության մեջ ակնթարթային փոխազդեցություններ գոյություն չունեն: Փոխազդեցությունը իրականում տեղի է ունենում հետևյալ կերպ. եթե փոխազդվող մարմիններից որևէ մեկի հետ տեղի է ունենում որևէ փոփոխություն, ապա մյուս մարմնի մոտ այդ փոփոխությունը հանդես է գալիս որոշակի ժամանակ անցնելուց հետո: Այս դեպքում փոխազդեցությունների տարածման արագությունը կլինի ոչ թե անվերջ մեծ, այլ վերջավոր մեծություն: Հետևաբար, միաժամանակության և տա-

բաժամանակության հարցն առնչվում է այն բանի հետ, թե որտեղ են տեղի ունենում դեպքերը կամ ինչպիսի արագությամբ են շարժվում հաշվարկման իներցիալ սիստեմները միմյանց նկատմամբ։

Նյուտոնյան մեխանիկան չէր կարողանում մեկնաբանել նաև մի շարք փորձերի, այդ թվում Մայքելսոնի փորձի արդյունքը։ Ալբերտ Մայքելսոնը 1881 թվականին ապացուցեց տարբեր ուղղություններով լույսի տարածման արագության հաստատուն լինելու փաստը. վակուումում (անօդ տարածության մեջ) լույսի տարածման արագությունը կախված չէ լուսատու աղբյուրի և դիտողի շարժման արագությունից։ Մայքելսոնի փորձի արդյունքը հաստատեց, որ լույսը բոլոր ուղղություններով տարածվում է միևնույն արագությամբ, մինչդեռ համաձայն նյուտոնյան մեխանիկայի՝ լույսի արագությունը Երկրի շարժման ուղղությամբ պետք է փոքր լիներ, քան հակառակ ուղղությամբ։ Մինչև XX դարը, գիտության մեջ ընդունված էին ժամանակի և տարածության նյուտոնյան ձևակերպումները։ Ժամանակի և տարածության մասին եղել են նաև այլ պատկերացումներ, որոնք մշակվել են տարբեր հեղինակների կողմից (Լայբնից, Հեգել, Լոբաչևսկի, Լորենց և ուրիշներ)։ Սակայն, միայն հանճարեղ Ալբերտ Էյնշտեյնին հաջողվեց առաջարկել իրական աշխարհն ընկալելու միանգամայն նոր կոնցեպցիա։

Ալբերտ Էյնշտեյնը, հենվելով նյուտոնյան մեխանիկայի դրույթներին հակասող փորձնական արդյունքների վրա, գիտականորեն վերանայեց կլասիկ մեխանիկայի սկզբունքները։ Քննադատորեն վերլուծելով ժամանակի ու տարածության կլասիկ հասկացությունները, նա ցույց տվեց, որ Նյուտոնի կլասիկ մեխանիկայի դրույթները հնացել են, բացարձակ ճշմարտություններ չեն, ի վիճակի չեն պատասխանելու ժամանակի բոլոր հարցերին, և որ Նյուտոնի մեխանիկայում գոյություն ունեցող դժվարությունները հնարավոր է վերացնել։ Էյնշտեյնը 1905 թվականին ստեղծեց հարաբերականության հատուկ կամ մասնավոր տեսությունը, իսկ 1911—1916 թվականներին՝ հարաբերականության ընդհանուր տեսությունը։ Հարաբերականության այդ գիտական տեսությամբ նոր էտապ սկսվեց ժամանակի ու տարածության վերաբերյալ գիտական հայացքների զարգացման պատմության մեջ։ Ըստ հարաբերականության տեսության ֆիզիկայի ցանկացած բնագավառում, ցանկացած պրոցեսները (մեխանիկական, էլեկտրամագնիսական, միջուկային, տիեզերական ձգողական դաշտերում) քննարկվում են ոչ թե գոյություն չունեցող բացարձակ ժամանակի և տարածության, այլ հաշվարկման մատերիալ սիստեմների շարժման տեսանկյունից։ Հարաբերականության տեսությունը հրաժարվեց ժամանակի բացարձակ լինելու հասկացությունից՝ շարժվող բոլոր սիստեմների համար։

Մեր դարի սկզբին բավականաչափ ճշտվեցին ֆիզիկայի նախկին հասկացությունները։ Պարզվեց, որ մակրոսկոպիկ, այսինքն՝ մեծ չափեր ունեցող դանդաղաշարժ մարմինների օրենքները չի կարելի մեխանիկորեն կիրառել արագաշարժ, միկրոսկոպիկ, չզինված աչքով անտեսանելի մասնիկների նկատմամբ։ Այն մասնիկները, որոնց արագությունները շատ մեծ են և մոտենում են լույսի արագությանը, չեն ենթարկվում կլասիկ մեխանիկայի օրենքներին։ Դրանք բնութագրվում են հարաբերականության տեսության վրա հենվող էյնշտեյնյան կամ ռելյատիվիստական՝ լույսի տարածման արագությանը մոտ արագություն ունեցող մասնիկների մեխանիկայի օրինաչափություններով։

Էյնշտեյնի տեսությունը տվեց բնության ավելի ընդհանուր և ճշգրիտ օրինաչափություններ։ Այդ տեսությունը ոչ թե ամբողջությամբ բացառեց Նյուտոնի մեխանիկան, նրա օրենքները, այլ ցույց տվեց դրանց կիրառելիության սահմանափակությունը։ Նյուտոնի օրենքները կիրառելի են այնպիսի մարմինների համար, որոնք ունեն բավականաչափ մեծ մասսա և շարժման փոքր արագություն։ Ըստ Նիլս Բորի հայտնագործած համապատասխանության սկզբունքի՝ յուրաքանչյուր հետևողական, կիրառության լայն բնագավառ ունեցող, նոր, ավելի ընդհանուր տեսություն ընդգրկում է հին, նորին նախորդող տեսությունը, որպես սահմանային դեպք։ Համաձայն այդ սկզբունքի, յուրաքանչյուր ոչ դասական տեսությունից համապատասխան սահմանային անցման դեպքում ստացվում է դասականը, կամ այդպիսի անցումների դեպքում ցանկացած հաշվումների արդյունքները վերածվում են դասական ֆիզիկայում կիրառվող արտահայտությունների։ Այսպես, օրինակ, հարաբերականության հատուկ տեսության բանաձևերից ստացվում են դասական մեխանիկայի բանաձևերը, երբ շարժվող մարմնի արագությունը անհամեմատ փոքր է լույսի տարածման արագությունից ($v \ll c$)։ Տվյալ դեպքում ռելյատիվիստական մեխանիկան վերածվում է դասականի. այլ կերպ ասած՝ ռելյատիվիստական մեխանիկայի օրենքները համընկնում են դասական մեխանիկայի օրենքների հետ։ Նյուտոնյան մեխանիկայի օրինաչափությունները, որպես մասնավոր դեպք, կարելի է ստանալ ավելի ընդհանուր՝ էյնշտեյնյան մեխանիկայից։ Եթե շարժվող մարմինների արագությունները բավականաչափ փոքր են լույսի տարածման արագությունից, ապա ռելյատիվիստական մեխանիկայի օրինաչափությունները, ըստ համապատասխանության սկզբունքի, վերածվում են նյուտոնյան մեխանիկայի օրինաչափություններին։



Այսպիսով, ի հակադրություն նյուտոնյան պատկերացումների, ըստ հարաբերականության տեսության ժամանակը հարաբերական է, հարաբերական է նաև երևույթների միաժամանակ տեղի ունենալու հասկացությունը։

Եթե նախապես հիմք ընդունենք կլասիկ կամ նյուտոնյան մեխանիկայի դրույթները, ապա հարաբերականության տեսությունից բխող արդյունքները կարող են թվալ հակասական, պարադոքսային։ Այդ է պատճառը, որ Էյնշտեյնի տեսությունից բխող եզրակացությունները երկար ժամանակ չէին ընդունվում, քանի դեռ դրանք չէին հաստատվել փորձով։ Այդպիսին է, օրինակ, ժամանակի պարադոքսը կամ, այսպես կոչված՝ «ժամացույցների պարադոքսը»։ Չնայած այդ հարցը լայնորեն քննարկվում է գրականության մեջ, սակայն մինչև հիմա էլ, կարելի է ասել, չկա միասնական բացատրություն. կան տարբեր մեկնաբանություններ՝ տարբեր հեղինակների կողմից։ Պատահական չէ, որ քվանտային մեխանիկայի և ոչ գծային դաշտի տեսության ստեղծողներից մեկը՝ մեծ ֆիզիկոս-տեսաբան Մաքս Բորնը, վերջին տարիների աշխատություններից մեկում ժամանակի պարադոքսի մասին գրում է. «Թեև Էյնշտեյնը դեռևս կես դար առաջ տվել է դրա սպառիչ բացատրությունը, այնուամենայնիվ, մինչև այժմ այդ «պարադոքսը» առաջացնում է բուռն վեճեր»։

Բանն այն է, որ հարաբերականության տեսության համաձայն տարբեր արագություններ ունեցող իներցիալ սիստեմներում երկու դեպքերի միջև տեղի ունեցող ժամանակը տարբեր է։ Այսպես, օրինակ, հարաբերականորեն անշարժ Երկրի վրա և շարժական տիեզերանավում ժամանակն ընթանում է տարբեր կերպ։ Երկու նույն կառուցվածք ունեցող ժամացույցներ այսպիսի երկու տարբեր սիստեմներում ցույց կտան տարբեր ժամանակներ՝ տիեզերանավ սիստեմում ժամացույցը կաշխատի ավելի դանդաղ, քան Երկիր սիստեմում։ Այսօր, ժամանակների այդ տարբերությունը պրակտիկորեն զգալի չէ, քանի որ տիեզերանավի արագությունը լույսի արագության համեմատությամբ շատ փոքր է. հետևաբար հարաբերականորեն անշարժ Երկիր և շարժական տիեզերանավ սիստեմներում երկու դեպքերի ժամանակների ինտերվալների տարբերությունը շատ չնչին է, և, իրոք, այն գործնականորեն կարելի է հաշվի չառնել։ Իսկ եթե տիեզերանավերին հաղորդվի այնպիսի արագություն, որը մոտ լինի լույսի տարածման արագությանը, ապա այս դեպքում ժամանակների այդ տարբերությունը բավականաչափ մեծ կլինի։ Այսպիսով, երկու տարբեր իներցիալ սիստեմներում ժամանակների ինտերվալների հարաբերությունը կամ քանորդը կախված է այն սիստեմի (տվյալ դեպքում տիեզերանավի) շարժման արագությունից, որի վրա գտնվում է համապատասխան ժամանակը ցույց տվող ժամացույցը։ Էյնշտեյնի՝ հարաբերականության հատուկ տեսությանը նվիրված աշխատության մեջ արտահայտվել է այն միտքը, որ ժամացույցի՝ իներցիալ սիստեմի տված կետից շարժվելուց և նույն կետը վերադառնալուց հետո, նրա ցույց տված $\Delta t'$ ժամանակը փոքր է այդ կետում գտնվող (անշարժ) նույն կառուցվածքի ժամացույցի՝ $\Delta t$ ժամանակից։

Հարաբերականության տեսությունը ժամանակակից տեսական ֆիզիկայի ամենաբարդ բաժիններից է, որում օգտագործվում են բարդ մաթեմատիկական բանաձևեր։

Քննարկվող հարցը ավելի մատչելի դարձնելու և հնարավորին չափ պարզ կերպով ներկայացնելու համար դիմենք միայն մի տարրական բանաձևի։ Տարբեր իներցիալ սիստեմների ժամանակները իրար հետ կապված են համապատասխան բանաձևով [1]։ Կարճության համար հարաբերականորեն անշարժ սիստեմը (Երկիր) նշանակենք K-ով, իսկ շարժականը (տիեզերանավ)՝ K'-ով։ K' սիստեմում քննարկենք երկու դեպք, որոնք տեղի են ունենում տարածության միևնույն կետում։ K' սիստեմում այդ դեպքերի միջև ընկած ժամանակամիջոցը թող լինի՝ $\Delta t' = t_2' - t_1'$։ Բանաձևի օգնությամբ կարելի է գտնել $\Delta t'$ ժամանակին համապատասխանող $\Delta t = t_2 - t_1$ ժամանակը, որն անցել է դեպքերի միջև հաշվարկման K սիստեմում։

Համաձայն ժամանակների միջև կապ հաստատող բանաձևի, ժամանակի ինտերվալը շարժական հաշվարկման սիստեմներում փոքրանում է։ Այդպիսի սիստեմներում կատարվող դեպքերը ուշանում են «անշարժ» սիստեմներում տեղի ունեցող դեպքերի նկատմամբ։

Քննարկենք հետևյալ օրինակը, որն արտաքուստ թվում է ոչ ճշմարիտ։ Ընդունենք, որ 24 տարեկան տիեզերագնաց Հմայակը, Երկիր «անշարժ» հաշվարկման սիստեմում թողել է նոր ծնված իր երեխային՝ Աշոտիկին և 240 հազար կմ/վրկ հաստատուն արագություն ունեցող տիեզերանավով, ուղիղ գծով, թռել է անսահման տիեզերք, օրինակ հասել է Քնար համաստեղության Վեգա աստղին, որից լույսը մեր մոլորա-

---

[1] $\Delta t' = \Delta t \sqrt{1 - \frac{v^2}{c^2}}$

v-ն K' սիստեմի արագությունն է K-ի նկատմամբ, իսկ c-ն լույսի տարածման արագությունն է վակուումում։ Ժամանակների միջև կապ հաստատող այդ բանաձևից հետևում է. $\Delta t' < \Delta t$։

կին է հասնում 26,5 տարում: Այստեղ նա պտույտ է գործել և նույն արագությամբ ու նույն ուղիղ գծով վերադարձել է մեր մոլորակը, այսինքն՝ Երկիր «անշարժ» սիստեմը:

Նկատի ունենալով վերոհիշյալ տվյալները, ըստ Աշոտիկի ժամացույցի ճանապարհորդության տևողությունը կկազմի մոտ 66 տարի (ավելի ճիշտ՝ 66,25 տարի): Օգտվելով վերոհիշյալ բանաձևից պարզվում է, որ Հմայակի նույն տիպի ժամացույցը ցույց կտա ավելի պակաս ժամանակ, քան 40 տարին է (39,6 տարի): Ճանապարհորդություն կատարելուց հետո հայրը՝ Հմայակը, իր որդու համեմատությամբ «երիտասարդացած» կլինի 66—40=26 տարով: Այսպիսով, հայրը Երկիր վերադառնալիս կլինի 64 տարեկան, իսկ տղան՝ 66 տարեկան. ճանապարհորդությունից հետո հայրը իր տղայից փոքր կլինի 2 տարով, իսկ մինչև ճանապարհորդությունը հայրը որդուց մեծ էր 24 տարով: Եթե թռիչքը տեղի է ունեցել 1965 թվականին, ապա վերադառնալիս Հմայակը կգրանցի 2005, իսկ Աշոտիկը՝ 2031 թվականը: Այդ, իրոք, տարօրինակ եզրակացություն է, սակայն ոչ մի հնարամիտ տրամաբանությամբ դրանից չի կարելի խուսափել:

Պարզ է, տարիքային տարբերությունն ավելի կմեծանա, եթե է՛լ ավելի մեծանա հօր, այսինքն՝ տիեզերագնացի շարժման արագությունը: Եթե լույսի արագությանը մոտ արագությամբ տիեզերագնացն ըստ տիեզերանավի մեջ գտնվող ժամացույցի 2 տարի տիեզերական ճանապարհորդություն կատարի, ապա Երկիր վերադառնալիս նա կնկատի, որ իր հասակակիցները ծերացել են, նույնիսկ փոխվել են սերունդներ, իսկ ինքը ըստ տիեզերանավի մեջ գտնվող ժամացույցի մեծացած կլինի ընդամենը 2 տարով: Այստեղից հետևում է այն պարադոքսալ երևույթը, որ ցանկացած պրոցեսը շարժական սիստեմում կատարվում է ավելի դանդաղ, քան նույն պրոցեսը հարաբերականորեն անշարժ սիստեմում: Միևնույն պրոցեսի ընթացքը, տակտը, ռիթմը կլինեն տարբեր՝ այդպիսի հաշվարկման սիստեմներում:

Ժամացույցի դերը կարող է կատարել նույնիսկ կենդանի օրգանիզմը՝ նրա բաբախող սիրտը: Մենք տեսանք, որ շարժվող ժամացույցի աշխատանքի ընթացքը տիեզերանավի մեջ տեղի է ունենում դանդաղ, դանդաղ են ընթանում նաև կենսաբանական պրոցեսները: Տիեզերագնացի սիրտը կատարում է ավելի պակաս բաբախումներ, քան հարաբերականորեն անշարժ՝ Երկիր սիստեմում գտնվող միատեսակ բիոլոգիական տվյալներ ունեցող մարդու սիրտը:

Եթե շարժվող տիեզերանավի մեջ և հարաբերականորեն անշարժ Երկիր սիստեմում գտնվեր միևնույն քանակությամբ՝ միևնույն տեսակի ռադիոակտիվ նյութ, ապա տրոհվող միջուկների քանակը տիեզերանավի մեջ կլիներ ավելի պակաս, քան Երկրի վրա:

Այդ արդյունքների ստուգումը շարժվող մակրոսկոպիկ մարմինների օրինակով ներկայումս հնարավոր չէ, քանի որ ժամանակակից հրթիռների շարժման ամենամեծ արագությունը (մոտավորապես 11 կմ/վրկ) դեռևս շատ հեռու է լույսի տարածման արագությունից: Սակայն, ժամանակների համապատասխան կապը հաստատվում է, երբ քննարկվում է լույսի տարածման արագությանը մոտ արագություն ունեցող միկրոմասնիկների շարժումը: Արագաշարժ տիեզերական (կոսմիկական) միկրոմասնիկները հետազոտելու միջոցով կարելի է համոզվել ժամանակի դանդաղեցման մեջ: Չափազանց արագաշարժ, լույսի տարածման արագությանը մոտ արագություն ունեցող տիեզերական մասնիկները, օրինակ՝ պրոտոնները, ինչպես նաև ուրիշ թեթև ատոմների միջուկները, անցնելով երկնային մթնոլորտի միջով, բախվում են օդում գտնվող այլ ատոմների միջուկների հետ: Այդ բախումների ժամանակ առաջանում են մեզոններ և ուրիշ միկրոմասնիկներ: Հարաբերականության տեսությունն ստացել է անմիջական փորձնական հաստատում, երբ չափվել է մեզոնների կյանքի միջին տևողությունը: Այսպես, օրինակ. հայտնի է, որ դանդաղաշարժ կամ դադարի մեջ գտնվող մյու-մեզոնների կյանքի միջին տևողությունը, այսինքն՝ սեփական ժամանակը, հավասար է մոտավորապես 2 միկրովայրկյանի (միկրովայրկյանը=10 $^{-6}$ վրկ-ի), իսկ տիեզերական ճառագայթների մեջ գտնվող, լույսի արագությանը մոտ արագությամբ շարժվող մյուս մեզոնների կյանքի տևողությունը մոտ 33 անգամ մեծ է նրա սեփական ժամանակից: Այսպիսով, նույն, սակայն շարժվող մեզոնի կյանքի տևողությունը բավականաչափ մեծ է հանգստի մեջ գտնվող այդ մեզոնի կյանքի տևողությունից: Ստացվում է, որ (արագությունից կախված) արագաշարժ մեզոններն ավելի երկարակյաց են, քան դանդաղաշարժերը, իսկ վերջիններս երկարակյաց են դադարի մեջ գտնվող նույն տեսակի մեզոններից: Այդ էֆեկտը, որքան էլ որ զարմանալի թվա, ռեալ է, քանի որ ստուգված է փորձով: Հետևաբար շարժվող սիստեմներում ժամանակի ընթացքի հարաբերական դանդաղումը փորձով հաստատված փաստ է: Այսպիսով, մեզոնները ցուցադրում են ժամանակի պարադոքսը: Ստացված փորձնական տվյալները լրիվին համապատասխանում են հարաբերականության տեսությունից ստացվող արդյունքներին:

Մաքս Բորնը, բարձր գնահատելով Ա. Էյնշտեյնի կատարած աշխատանքները հարաբերականության տեսության բնագավառում, գրում է.

«...Էյնշտեյնի գաղափարները նրանց առաջին իսկ գիտակցման մոմենտից սկսած՝ ավելի քան կես դար անց բոլորովին չեն կորցրել իրենց ուժը: Նրանք ֆիզիկա գիտությանը տվեցին իմպուլս, որը նրան ազատեց հնացած (իդեալիստական— Մ. Ա.) փիլիսոփայական դոկտրիններից և ֆիզիկան դարձրեց ժամանակակից մարդկանց աշխարհի վճռական ուժերից մեկը»:

Հարաբերականության տեսության էության պարզաբանման և իմաստավորման, ինչպես նաև ժամանակի և տարածության իմացության հարցերում մեծ ավանդ են ներդրել նաև սովետական գիտնականները: Այդ տեսակետից հիշատակման արժանի է տեսաբան-ֆիզիկոս, ակադեմիկոս Ֆոկը: Նա առաջարկեց նոր ձևով հասկանալ Ա. Էյնշտեյնի ձգողականության հանրահայտ տեսության և ժամանակի ու տարածության հարցերի ֆիզիկական իմաստը: Վ. Ա. Ֆոկը քննադատեց «հարաբերականության ընդհանուր տեսության» հետ կապված ոչ ճիշտ պատկերացումները: Ա. Էյնշտեյնի տեսությունը Վ. Ա. Ֆոկը իրավացիորեն առաջարկեց անվանել ձգողության տեսություն, բայց ոչ «հարաբերականության ընդհանուր տեսություն», քանի որ այդպիսի անվանումը իմաստ չունի և իրեն չի արդարացնում:

«Գիտնականի աչքերով» ժողովածուում Վ. Ա. Ֆոկը գրում է. «Էյնշտեյնը, ինչպես նաև Կոլումբոսը, կատարել է խոշոր հայտնագործություն, բայց ճիշտ չէ նրա մեկնաբանությունը: Այդ մասին մեզ հիշեցնում է «հարաբերականության ընդհանուր տեսություն» անվանումը, որն այնքան քիչ է համարվում ձգողության տեսության համար, ինչպես «Վեստ-Հնդկաստան» անվանումը Հնդկաստանից հեռու գտնվող կղզիների համար»: Վ. Ա. Ֆոկի տեսակետը հարաբերականության տեսության վերաբերյալ վերջին տարիների ընթացքում ընդունվում է նաև արտասահմանյան մասնագետների կողմից:

Պատահական չէ, որ բացի ռուսերենից այդ գիրքը հրատարակվել է նաև անգլերեն (Լոնդոն, 1959), գերմաներեն լեզուներով (Բեռլին, 1960): Հարաբերականության տեսության վերաբերյալ նա ունի ուրիշ արժեքավոր աշխատություններ: Բացի հարաբերականության տեսությունից Վ. Ա. Ֆոկը զբաղվել է նաև քվանտային մեխանիկայի, քվանտային էլեկտրադինամիկայի, դիֆրակցիոն տեսության, ռադիոալիքների տարածման, մաթեմատիկական ֆիզիկայի և այլ հարցերով: Ֆիզիկայի տարբեր պրոբլեմներ մշակելիս նա հեղինակակից է մի շարք ականավոր ֆիզիկոսների հետ (Ա. Էյնշտեյն, Ն. Բոր, Մ. Բորն, Պ. Ա. Դիրակ, Լ. Դ. Լանդաու, Մ. Ա. Լեոնտովիչ և ուրիշներ): Ժամանակակից ֆիզիկայի տարբեր բնագավառներում կատարած կարևոր աշխատանքների համար նա արժանացել է Սովետական Միության Պետական մրցանակի (1946), Լենինյան մրցանակի (1960):

Գիտության զարգացմամբ ավելի ու ավելի են ճշտվում ժամանակի և տարածության վերաբերյալ հասկացությունները: Ժամանակի և տարածության այսօրվա և հետագա է՛լ ավելի ճշգրիտ պատկերացումները, անշուշտ, կնպաստեն բնության նոր օրինաչափությունների հայտնագործմանը:

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ *ամբիոն*

# ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԳԻՆԸ ԵՎ ԱՐԺԵՔԸ

*Սոցիալիզմի ժամանակ գների սահմանման ելակետն ինքնարժեքն է։ Որոշ ապրանքների գները սահմանվում են նրանց ինքնարժեքի մակարդակով, իսկ երբեմն էլ՝ ինքնարժեքից ցածր. այսպես՝ արտադրության միջոցների գները սահմանվում են առանց շրջանառության հարկի, այսինքն՝ դրանց ինքնարժեքից ցածր։ Պերճանքի առարկաների և այն մթերքների գները, որոնց սպառումը պետությունը ձգտում է սահմանափակել, զգալիորեն բարձր են դրանց ինքնարժեքից։ Սոցիալիստական պետությունը գների միջոցով խթանում է արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխումը, արտադրանքի որակի բարձրացումը և այլն։ Գների օգնությամբ որոշվում է արտադրության ծավալը, պլանավորվում ու չափվում է աշխատանքի արտադրողականությունը, սահմանվում ողջ ժողովրդական տնտեսության և նրա առանձին ճյուղերի զարգացման տեմպերը և այլն։*

*Սոցիալիզմի ժամանակ շինարարական արտադրանքը ևս ունի ապրանքի հատկություններ։ Շինարարական արտադրանքի, որպես ապրանքի, յուրահատկությունը հիմնականում այն է, որ արտադրվում է պատվերով։ Շինարարական կազմակերպությունը շենքեր ու այլ օբյեկտներ է կառուցում որոշակի սպառող-պատվիրատուի համար, նրա հետ մտնելով ոչ թե մատակարարման, այլ կապալային հարաբերությունների մեջ, որոնք ապրանքա-փողային բնույթ են կրում։*

*Գների ֆունկցիան շինարարությունում կատարում են՝*

*1. բնակարանային և մասսայական շինարարության մյուս տեսակներում՝ շրջանացված գնացուցակային գները.*

*2. ոչ մասսայական շինարարության ճյուղերում՝ ամբողջությամբ վերցրած շենքի կամ կառուցման նախահաշվային արժեքը։*

*Գնացուցակային գինը պատրաստի շինարարական արտադրանքի միավորի գինն է (1 քառ. մ. բնակելի տարածության գինը, 1 կմ ճանապարհի գինը, արտադրական կարողության միավորի գինը և այլն)։ Շինարարական արտադրանքի միավորի գնացուցակային գինը նրա նախահաշվային արժեքից էականորեն տարբերվում է նրանով, որ հանդիսանում է շինարարական արտադրանքի սպառողական միավորի ելակետային, արդեն տրված, ընդ որում՝ առավելագույն գինը։ Այդ դեպքում, օրինակ, բնակելի շենքի ինքնարժեքն աճում է բնակելի տարածության ավելացման հաշվին։ Իսկ բնակելի տարածության 1 քառ. մ. նախահաշվային արժեքը կարող է տարբեր լինել շենքի կոնստրուկտորային բնույթի տարբեր լուծումների հետևանքով։ Այս արժեքի մեծությունն ըստ արդյունքի է և ոչ թե ելակետային. ծավալի վրա բաժանելու միջոցով։*

*Յուրաքանչյուր տիպի շենք ունի իր սպառողական միավորի գնացուցակային գինը և գնացուցակային ընդհանուր արժեքը, որը հավասար է սպառողական միավորի գնացուցակային գնի առաջացմանը գնացուցակային ընդհանուր արժեքի քանակի համեմատ։ Միևնույն տիպի շինարարության օբյեկտները, որոնք կառուցվում են երկրի զանազան շրջաններում, տարբեր գնացուցակային գներ ունեն։ Այդ բացատրվում է նրանով, որ տարբեր շրջաններում շինարարության արժեքի գոյացման պայմանները տարբեր են։ Այսպես, օրինակ, զանազան գոտիներում տարբեր են դրսից փոխադրվող և տեղական նյութերի գները, տարբերակված են վերադիր ծախսերի նախահաշվային նորմաները, աշխատանքի վարձատրության վարձաչափերը և այլն։*



*Շինարարական օբյեկտի նախահաշվային արժեքի մեջ մտնում է շինարարական աշխատանքների նախահաշվային արժեքը, որը որոշվում է ըստ շինարարական և մոնտաժային աշխատանքների նկատմամբ տվյալ շրջանի համար ընդհանուր անհատական գնարկների և ձեռք բերված սարքավորումների վրա կատարված ծախսերի (Եր Եր)։ Անհատական գնարկները տարբերակված են Միության 20 տերիտորիալ շրջանների նկատմամբ և բովանդակում են միայն ուղղակի ծախսերը։ Դրանք արտացոլում են աշխատանքների կատարման միջին պայմաններն ու մեթոդները, նյութերի միջին մեծածախ գները և փոխադրումների միջին տարիֆները։ Գների ու տարիֆների փոփոխությունները հաշվի են առնվում ո՛չ թե նախահաշիվներում, այլ կառուցողների և կապալային շինարարական կազմակերպությունների ֆինանսական պլաններում։ Անհատական գնարկներն ունեն մի շարք թերություններ. այսպես՝ դրանք մասնատված են, մեծ աշխատանք է պահանջվում դրանց հիման վրա նախահաշիվներ կազմելու համար, հարկ է լինում հարմարեցնել դրանք տեղական պայմաններին, ծախսերի հաշվառումը լրիվ չի կատարվում և այլն։ Ուստի, դրանք ժամանակի ընթացքում կարտամղվեն և կփոխարինվեն գնացուցակային գներով, որոնք ընդունակ են կատարելու տնտեսական կատեգորիայի դեր։*

*Գնացուցակային գինը շինարարական արտադրանքի սպառողական միավորի մի այնպիսի հաստատուն գին է, որից բարձր նախագծային կազմակերպությունն իրավունք չունի նախագծելու, պատվիրատուն՝ գնելու, իսկ կապալառուն՝ վաճառելու պատրաստի արտադրանքի միավորը։ Իսկ նախագծային արժեքը նախապես չի սահմանափակվում, և աշխատանքների բնույթի կամ ծավալի փոփոխությունը առաջ է բերում օբյեկտի նախահաշվային արժեքի փոփոխություն, որը հաճախ է նկատվում կյանքում։ Բացի դրանից, շինարարության պատրաստի արտադրանքի նախահաշվային արժեքը, հանդես գալով որպես գին, իր մեջ ներառում է շինմոնտաժային աշխատանքների և սարքավորում ձեռք բերելու վրա կատարվող ծախսումների նախահաշվային գինը։ Պլանավորման շինարարական կազմակերպությունների գործունեության, ինչպես նաև կատարված աշխատանքի համար հաշվարկումների գնահատման հիմքը շինմոնտաժային աշխատանքների նախահաշվային գինն է, իսկ շինարարության արտադրանքի նախահաշվային արժեքը ծառայում է որպես կապիտալ ներդրումների պլանավորման գործիք։ Դրա հետևանքով շինարարական ձեռնարկությունների էկոնոմիկայում շինարարության պատրաստի արտադրանքի գնին երկրորդական դեր է հատկացվում և շինարարների ուշադրությունը սևեռվում է միջանկյալ արտադրանքի՝ շինմոնտաժային աշխատանքների գնի վրա։*

## ԳՆԵՐԻ ԳՈՅԱՑՄԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՈՒՄ

*Շինարարության արտադրանքի գները անհատական բնույթ են կրում։ Շինարարության օբյեկտներն ունենում են տարբեր քանակի հարկաբաժիններ, գաբարիտներ, պլանավորման լուծումներ և այլն։ Այստեղ ազդեցություն են թողնում մի շարք բնական գործոններ՝ կլիման, տեղամասի գեոլոգիան ու ռելեֆը, սեյսմիկությունը, արդյունաբերական արտադրության տեխնոլոգիան (արդյունաբերական օբյեկտներ կառուցելու դեպքում) և այլն։ Այդ չի նշանակում, թե շինարարության արտադրանքը հասարակական արժեք չունի։*

Դրան հատուկ է ինչպես հասարակական արժեքը, այնպես էլ՝ անհատական
արժեքն ու ինքնարժեքը:

Ներկայումս փաստական ինքնարժեքի հաշվառում չի տարվում, որովհետև
այս կամ այն օբյեկտի կառուցմանը մասնակցում են մի ամբողջ շարք տարբեր
գերատեսչություններ, որոնք ծախսերի հաշվառումը կատարում են ոչ թե ըստ
օբյեկտի, այլ ըստ արտադրության ամբողջ ծավալի: Պատվիրատուն գլխավոր
կապալառուի հետ հաշվարկումներ կատարում է ոչ թե ըստ փաստական գների
ու տարիֆների, այլ ըստ նախահաշիվների, որի հետևանքով էլ շինարարական
արտադրության վրա կատարված փաստական ծախքերը նրա մոտ չեն արտա-
ցոլվում: Այդ ամենն զգալի վնաս է հասցնում տնտեսական հաշվարկի ամրա-
պնդմանը շինարարությունում: Այսպիսով, շինարարության արտադրանքի
գների անհատական բնույթը շինարարությունում գների գոյացման առաջին
առանձնահատկությունն է:

Երկրորդ առանձնահատկությունն այն է, որ շենքերի ու կառույցների գնե-
րը սահմանվում են կենտրոնացված կերպով և կապալառուին հետաքրքրող
իրական ինքնարժեքից կտրված: Ֆաբրիկա-գործարանային արդյունաբերու-
թյան մեջ գինը սահմանվում է միջին-ճյուղային ինքնարժեքի հիման վրա, հե-
տևյալ սխեմայով՝ միջին-ճյուղային ինքնարժեք, ձեռնարկության բացթողման
գին, արդյունաբերության բացթողման գին, որ մոտավորապես համապատաս-
խանում է հասարակական արժեքին:

Շինարարությունում գների գոյացումը կատարվում է այլ կերպ. աշխա-
տանքների կատարման՝ СН и П նախատեսած միջին պայմաններ ու մեթոդ-
ներ — կենդանի և առարկայացած աշխատանքի հանրայնորեն-անհրաժեշտ
նախահաշվային նորմաներ —շինարարության արտադրանքի հասարակական
արժեք և դրա դրամական արտահայտություն — նախահաշվային գին: Ինքն-
արժեքի պլանավորման համար այստեղ ելակետայինը գինն է:

Շինարարությունում գների գոյացման այդպիսի կարգը չի համապատաս-
խանում ինքնարժեքի օրենքի գործողությանը և խանգարում է շինարարական
արտադրության ներքին ռեզերվների մոբիլիզացմանը: Արժեքի օրենքի համա-
ձայն, առաջին հերթին՝ գոյանում է արդյունքի անհատական արժեքը (ինքնար-
ժեքը) և միայն հետո է գոյանում հասարակական արժեքը:

Տնաշինարարական կոմբինատներ ստեղծելիս և աշխատանքների կատար-
ման ավելի կատարելագործված մեթոդների անցնելիս, երբ հիմնական պրո-
ցեսներն անցնեն գործարանային պայմանների, շինարարական հրապարակը
դառնա մոնտաժային հրապարակ, գնագոյացումը կկատարվի «ներքևից»՝ հա-
վաքովի տարրերի և դրանց մոնտաժի կատարման գործարանային պլանային
միավորի ինքնարժեքը կգոյանա
բազայի վրա: Վերջնական արտադրանքի
գործարանում, այսինքն՝ այնտեղ, որտեղ արտադրվում են շենքերի տարրերը և
կատարվում է արտադրության իրական ծախքերի արժեհաշվում:

Շինարարությունում գների գոյացման երրորդ առանձնահատկությունն
այն է, որ շրջանառության հարկը չի մտնում շինարարական գնի կազմի մեջ:
Այդ բացատրվում է նրանով, որ կապիտալ ներդրումների հիմնական ծավալը
կենսագործվում է պետական բյուջեի միջոցների հաշվին և շինարարության ար-
տադրանքը շրջանառության հարկով հարկադրելը պարզապես կնշանակեր մի-
ջոցների տեղաշարժ՝ բյուջեի ծախսումների մասից նրա եկամուտների մասը:

Չորրորդ առանձնահատկությունն այն է, որ շինարարական վերջնական ար-
տադրանքի գնի մեջ չեն մտնում շրջանառության ծախքերը, որոնք առաջանում
են արտադրանքը արտադրողից սպառողին հասցնելու անհրաժեշտությունից:

## ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ-ՄՈՆՏԱԺԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԿԱԶՄԸ

Գոյություն ունի ինքնարժեքի մեջ մտնող ծախսերի երկու խումբ. այն է՝
տնտեսական (ըստ տարրերի) և արժեհաշվական: Տնտեսականը ինքնարժեքի
կազմի մեջ անպայման մտնում են նյութերի վրա կատարված սկզբնական,



հետագայում անտրոհելի ծախսերը, աշխատավարձը, ամորտիզացիոն և
այլ ծախսեր: Սկզբնական ծախսերն այդ դեպքում միացվում են ար-
տադրության մեջ հիմնական գործոնների՝ կենդանի աշխատանքի, աշխա-
տանքի միջոցների և աշխատանքի առարկաների մասնակցության հատկանի-
շով: Ծախսերի սկզբնական համասեռ տարրերը, անկախ նրանից՝ դրանք ծա-
գում են անմիջականորեն արտադրության ոլորտում, թե դրանց կառավարման
կապակցությամբ, տնտեսական խմբավորման դեպքում միացվում են մեկ
առանձին հոդվածում: Այսպես, աշխատավարձի վրա կատարված ծախսերը
մտնում են բանվորների, ծառայողների, ինժեներա-տեխնիկական անձնակազ-
մի աշխատավարձի մեջ: Աշխատանքի միջոցների մարման վրա կատարված
ծախսերը, որոնք մտնում են այնպիսի կոմպլեքսային հոդվածների մեջ, ինչ-
պես՝ «նյութեր» (տրանսպորտի միջոցների ամորտիզացիա), «մեքենաների ու
մեխանիզմների շահագործում» և «վերադիր ծախսեր» հոդվածներն են, նույն-
պես գումարվում և ցույց են տրվում մեկ հոդվածում:

Նյութերի վրա կատարված ծախսերի մեջ մտնում են հիմնական, օժանդակ
նյութերի, վառելիքի, էներգիայի վրա կատարված ծախսերը և այլն:

Շինարարական-մոնտաժային աշխատանքների ինքնարժեքի տնտեսական
կազմը մեզ թույլ է տալիս որոշելու կենդանի և առարկայացած աշխատանք-
ների վրա կատարված ծախսերի միջև եղած հարաբերակցությունը: Այդ կազմը
հենց անընդհատ փոփոխվում է տեխնիկական պրոգրեսի ազդեցության
տակ. աճում է առարկայացած աշխատանքի բաժինը և նվազում կենդանի աշ-
խատանքինը. այդ արտացոլված է ստորև՝ աղյուսակում, Միության մասշտա-
բով բերված տվյալներում.

| №№ ը/կ | Ծախսումների տարրերը | Տոկոսներով | | |
|---|---|---|---|---|
| | | 1950 թ. | 1955 թ. | 1960 թ. |
| 1 | Նյութեր . . . . . | 50 | 51 | 58 |
| 2 | Աշխատավարձ . . . . | 46 | 45 | 36 |
| 3 | Մարում . . . . . | 2 | 3 | 3 |
| 4 | Այլ ծախսումներ . . | 2 | 1 | 3 |
| | Ընդամենը . . | 100 | 100 | 100 |

Շինարարական-մոնտաժային աշխատանքների վրա կատարվող ծախ-
սումները ներկայումս խմբավորվում են ոչ թե ըստ տնտեսական տարրերի,
այլ ըստ ծախսումների կոմպլեքսային հոդվածների (արժեհաշվական խմբա-
վորում):

Արժեհաշվական խմբավորումն արտացոլում է ըստ այդ խմբավորումների
նպատակային նշանակության կատարվող ծախսերի հաշվառման սկզբունքը—
որտեղ և ինչի համար են ծախսվում միջոցները շինարարական կազմակերպու-
թյուններում: Այստեղ բոլոր ծախսերն ստորաբաժանվում են երկու մասի՝ ուղ-
ղակի և վերադիր:

*Ուղղակի* ծախսերը տեխնոլոգիապես կապված են աշխատանքների
կատարման հետ և կարող են անմիջականորեն դուրս գրվել նրանց ինքնարժե-
քի հաշվին:

*Վերադիր* ծախսերն առաջանում են շինարարության կազմակերպման,
կառավարման և սպասարկման հետևանքով:

Ուղղակի ծախսումները կարող են անմիջականորեն վերագրվել շինարա-
րության որևէ կոնկրետ օբյեկտի կամ աշխատանքների ծավալի միավորի ինքն-
արժեքին, իսկ վերադիր ծախսերը չեն կարող անմիջականորեն վերագրվել շի-

նարարության կոնկրետ օբյեկտներում կատարվող աշխատանքների (կամ աշ-
խատանքների տեսակների) ինքնարժեքին:
Ուղղակի ծախսերը բաղկացած են ծախսումների հետևյալ կոմպլեքսային
հոդվածներից՝ նյութերի, դետալների և կոնստրուկցիաների վրա կատարվող
ծախսումներ, բանվորների հիմնական աշխատավարձ, շինարարական մեքենա-
ների ու մեխանիզմների շահագործման ծախսեր, այլ ուղղակի ծախսեր:
Նյութերի, դետալների և կոնստրուկցիաների վրա կատարվող ծախսումնե-
րը ներառնում են այն բոլոր ծախսերը, որոնք կապված են նյութեր ու կոնս-
տրուկցիաներ ձեռք բերելու, դրանք փոխադրելու, բարձելու հետ և այլն: Այս-
տեղ մտցվում են տարայի արժեքը, ինչպես նաև վաճառահանող ու մատակա-
րարող կազմակերպությունների հավելագները և մթերման-պահեստային ծախ-
սերը: Մեքենաների ու մեխանիզմների վրա գործադրվող նյութերի, ինչպես նաև
վերադիր ծախսերի մեջ հաշվի առնվող նյութերի արժեքը տվյալ հոդվածում
հաշվի չի առնվում:
Մեխանիզմների ու մեքենաների շահագործման ծախսերի մեջ մտնում է
միանվագ ծախսումների և ընթացիկ ծախսերի կոմպլեքսը:
Հիմնական աշխատավարձի մեջ մտնում է այն բանվորների հիմնական
աշխատավարձը, որոնք կատարում են միայն ձեռքի աշխատանք, ըստ որում
շինարարական-մոնտաժային հիմնական աշխատանքները: Դրան չի վերաբե-
րում այն բանվորների աշխատավարձը, որոնք զբաղված են մեքենաների սպա-
սարկմամբ օժանդակ արտադրության մեջ (առանձին հաշվեկշիռ ունեցող) և
վերադիր ծախսերի հաշվին կատարվող աշխատանքներում:
Այլ ուղղակի ծախսերի մեջ մտնում են գրունտի, շինարարական հրապա-
րակից աղբի ու ձյան փոխադրման վրա կատարված ծախսումները, օբյեկտա-
մերձ պահեստից մինչև դասավորման տեղը նյութերը փոխադրող տրանսպոր-
տի վրա կատարվող ծախսումները և այլն:
Վերադիր ծախսերն առաջանում են արտադրության ընդհանուր պայման-
ների ստեղծման անհրաժեշտությունից՝ արտադրական տերիտորիան և սար-
քավորումը պահելու, արտադրությունը, կառավարումը կազմակերպելու հա-
մար և այլն:
Ինքնարժեքի ցուցանիշների վերլուծությունը վերջին տարիներս զգալի
անհամապատասխանություններ է հայտնաբերել փաստական և նորմավորվող
վերադիր ծախսերի միջև: Այդ անհամապատասխանությունը որոշ դեպքերում
արտահայտվում է նորմաների դեմ թույլ տրվող գերածախսով, այլ դեպքում՝
զգալի տնտեսման ձևով: Այսպես, նյութերի, դետալների ու կոնստրուկցիաների
վրա կատարվող ծախսումների ավելացմամբ (այլ խոսքով՝ շենքերի ու կա-
ռուցումների համար հավաքովի շինանյութերի օգտագործման աստիճանի մե-
ծացմամբ) դրանց նորմավորման գոյություն ունեցող կարգի պայմաններում
աճում է վերադիր ծախսերի բացարձակ մեծությունը: Փաստորեն նկատվում է
հակառակը՝ շենքերի ու կառուցումների համար հավաքովի շինանյութերի օգ-
տագործման աստիճանի մեծացմամբ զգալիորեն իջնում են վերադիր ծախսերը:
Բացի դրանից, վերադիր ծախսերի գոյություն ունեցող նորմաները տարբերակ-
ված են ըստ միութենական ռեսպուբլիկաների, մինիստրությունների ու գերա-
տեսչությունների, որի հետևանքն է աշխատանքի միևնույն տեսակների համար
բազում նորմաների առկայությունը: Գլխավոր կապալառուների և ենթակապա-
լառուների համար փաստական վերադիր ծախսերը տարբեր են, նորմատիվ
ծախսերը՝ միևնույնն են: Այդ ամենը հասցրել է այն բանին, որ անհրաժեշտու-
թյուն է առաջացել վերանայելու վերադիր ծախսերի նորմավորման կարգը՝
դրանց չափերը շինարարական արտադրության մեջ ձեռք բերված տեխնիկա-
կան մակարդակի և ուղղակի ծախսումների կառուցվածքին համապատասխա-
նեցնելու նպատակով: Պահանջվում է ճշգրտել նաև վերադիր ծախսերի կազմը,
որն անհրաժեշտ է գներն առավել ճիշտ որոշելու համար:
Մեր պարբերական հրատարակություններում պետեղված մի շարք հոդ-
վածներում արդարացիորեն մատնանշվել է վերադիր ծախսերի կազմը ճշգրր-
տելու և նորմավորման կարգը վերանայելու անհրաժեշտությունը: Մասնավո-



րապես, առաջարկվում է վերադիր ծախսերի կազմից հանել բնակարանա-կո-
մունալ տնտեսության շահագործման ասպարեզում շինարարական կազմակեր-
պությունների ծախսերի ու եկամուտների միջև եղած տարբերությունը և բնա-
կարանա-կոմունալ ծախսերը ծածկել շինարարության շահույթների հաշվին:
Բանվորների կազմակերպված հավաքագրման հետ կապված ծախսերը նույն-
պես առաջարկվում է հանել վերադիր ծախսերի կազմից և դրանք առանձին
նախատեսել ամփոփիչ նախահաշվա-ֆինանսական հաշվարկումներում: Այն-
պիսի հոդվածներ, ինչպիսիք են՝ լրացուցիչ աշխատավարձի վրա կատարվող
ծախսումները, սոցիալական ապահովագրության, կուլտուր-մասսայական
և ֆիզկուլտուրայի աշխատանքների համար կատարվող մասհանումները, ա-
ռաջարկվում է մտցնել ուղղակի ծախսումների մեջ և դրանք կախման մեջ դնել
հիմնական աշխատավարձի գումարներից: Խիստ նպատակահարմար է վերա-
դիր ծախսերի նորմաների գերատեսչական տարբերակումից և գլխավոր կա-
պալառուների ու ենթակապալառուների համար միատեսակ նորմաներից հրա-
ժարվելու վերաբերյալ առաջարկությունը: Նպատակահարմար է վերադիր ծախ-
սերը տարբերակել ըստ աշխատանքների տեսակների և շինարարական կազ-
մակերպությունների ճյուղային մասնագիտացման: Ընդ որում աշխատանքնե-
րի որոշակի տեսակների նկատմամբ վերադիր ծախսերի չափերը պետք է
միասնական լինեն երկրի բոլոր կազմակերպությունների ու շրջանների համար:
Աշխատանքների տեսակների նկատմամբ վերադիր ծախսերը տարբերվում են
լեռնահանքային հիմնական աշխատանքներում, մետաղե կոնստրուկցիաների
մոնտաժներում, ճանապարհային նախապատրաստական աշխատանքներում: Այդ-
պիսի տարբերակման կարգը իրեն լիովին արդարացրել է:
Վերադիր ծախսերի նորմաներ սահմանելիս պետք է հաշվի առնել շինա-
րարական կազմակերպությունների տնտեսական գործունեությունը՝ պլանավո-
րելու և վերլուծելու համար դրանց օգտագործման հնարավորությունը: Այդ
պատճառով էլ վերադիր ծախսերն անհատական գնարկների կազմի մեջ
մտցնելը, ինչպես առաջարկում են որոշ հեղինակներ, կբարդացնի նախահաշ-
վային փաստաթղթերի ու շինարարական ֆինպլանների կազմումը, կատարված
աշխատանքների փոխադարձ հաշիվների ձևակերպումը, կդժվարացնի կազմա-
կերպությունների տնտեսական գործունեության վերլուծությունը: Մեր կար-
ծիքով ընդունելի է այն առաջարկությունը, ըստ որի նպատակահարմար է վե-
րադիր ծախսերը կախման մեջ դնել շինարարության տեսակից՝ տոկոսային
հարաբերությամբ բանվորների հիմնական աշխատավարձի և մեքենաների ու
մեխանիզմների շահագործման ուղղությամբ կատարվող ծախսումների նկատ-
մամբ:
Վերադիր ծախսերի նորմավորման կատարելագործումը կնպաստի տնտե-
սական հաշվարկի ամրապնդմանը շինարարական կազմակերպություններում,
շինարարության ինքնարժեքի իջեցմանը և գնագոյացման բարելավմանը:

Ի. ՍԵՄՅՈՆՈՎ

# ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԿԱՆԱՆՑ ՈՒԺԸ

*Մարդկանց կենսական պահանջմունքների բավարարման գործում մեծ դեր են խաղում կոմունալ-կենցաղային և բնակարանային պայմանները, որոնց բարելավման համար սոցիալիստական պետությունը խոշոր գումարներ է ներդնում։ Ստեղծել աշխատավորության համար նորմալ կենցաղային պայմաններ, նշանակում է ավելի ռացիոնալ օգտագործել աշխատանքային ռեսուրսները՝ մասնավորապես, որոնք կազմում են մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ սուրսները ընդհանրապես, իսկ կանանց աշխատանքային ռեսուրսները՝ մասնավորապես, որոնք կազմում են մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվոր-ծառայողների 48, իսկ Հայաստանում՝ 39 տոկոսը։*

*Ազգաբնակչության սպասարկման հասարակական ձևերի ու մեթոդների զարգացումը և, մասնավորապես, կոմունալ-կենցաղային ծառայությունների կատարելագործումը մեծ չափով կկրճատեն տնային տնտեսության վրա ծախսվող աշխատաժամանակը։ Գիտնականները հաշվել են, որ 3—4 մարդուց կազմված ընտանիքի տնտեսության վարումը օրական խլում է մոտ 9 ժամ։ 1959 թվականի համամիութենական մարդահամարի տվյալների հիման վրա կատարված հաշվարկները ցույց են տալիս, որ այժմ տնային աշխատանքը ազգաբնակչությունից խլում է տարեկան 150 միլիարդ ժամ (տե՛ս* П. Г. Олдак, Экономические проблемы повышения уровня жизни, М., Экономиздат, 1963, с. 17)*։ Այդ հավասար է 70 միլիոն մարդու տարեկան աշխատանքային բյուջեի, որը մոտ 2 անգամ գերազանցում է արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի բնագավառներում աշխատող բանվոր-ծառայողների տարեկան միջին թիվը։*

*Մարդահամարի տվյալները ցույց են տալիս նաև, որ ամբողջ տարին զուտ տնային տնտեսությամբ զբաղվածների թիվը հասնում է մոտ 13 միլիոնի, որը կազմում է երկրի աշխատանքային ռեսուրսների 10 տոկոսը։ Այլ կերպ ասած, 13 միլիոն մարդ (որոնց 89 տոկոսը կանայք են) կտրված են հասարակական արտադրության ոլորտից և զբաղված են տնային տնտեսության մեջ, իսկ հիմնարկ-ձեռնարկություններում աշխատող կանայք իրենց տնային տնտեսության վարման վրա ծախսում են օրական առնվազն 4—7 ժամ։ Նկատենք, որ հանգստի օրվա մի մասը, իսկ հաճախ նաև ամբողջ օրը տրամադրվում է այդ հոգնեցուցիչ ու ծանր տնային աշխատանքին (լվացք, հարթուկ, մաքրություն և այլն)։ Գաղտնիք չէ, որ հանգստյան օրվա նման օգտագործումը վատ է անդրադառնում մարդու աշխատանքային գործունեության վրա։*

*Վերջին տարիներս մեզ մոտ աստիճանաբար մեքենայացվում են տնային աշխատատար մի շարք պրոցեսներ։ Այսպես՝ 1960 թվականին կարգավորվել է լվացքի (տնային) մեքենաների մասսայական արտադրությունը, 1940 թվականի համեմատությամբ, 1964-ին մոտ 20 անգամ ավելացել է զանազան կոնստրուկցիաների էլեկտրական հարթուկների արտադրությունը։*

*Ներդրվում են տնային տնտեսություններում օգտագործվող բազմապիսի կենցաղային մեքենաներ, հարմարանքներ և էլեկտրասարքեր, որոնք կոչված*



*են թեթևացնելու տնային աշխատանքները։ Լայնորեն կիրառվում են էլեկտրական պլիտաները, թեյնիկները, հատակմաքրիչները, փոշեծծիչները և այլն։ Արտադրվում են անհրաժեշտ քանակի և բարձրորակ կարի մեքենաներ։ Սակայն պետք է նշել, որ դեռևս դանդաղ են ներդրվում, հատկապես, խոհանոցային անհրաժեշտ հարմարանքները (խոհանոցային կոմբայն)։ Դեռևս չեն արտադրվում բավարար քանակությամբ կենցաղային սառնարաններ, որոնք ուրույն ձևով օժանդակում են ազատ ժամանակի ավելացմանը։ Բերված աղյուսակում ցույց է տրված որոշ կենցաղային մեքենաների ու սարքերի իրացման դինամիկան Հայկական ՍՍՌ-ում։*

Կենցաղային պարագաների իրացումը Հայկական ՍՍՌ-ի պետական և կոոպերատիվ առևտրի ցանցում *(հազար հատով)* [1]

| *Տեսակներ* | 1955 | 1956 | 1961 | 1962 | 1963 |
|---|---|---|---|---|---|
| *Կարի մեքենաներ* . . . | 8 | 19,4 | 29,7 | 30,5 | 34,9 |
| *Տնային սառնարան* . . . | 1,4 | 6,6 | 11,2 | 11,8 | 13,3 |
| *Լվացքի մեքենաներ* . . | 1,9 | 8,3 | 16,7 | 17,7 | 20,6 |
| *Փոշեծծիչներ* . . . . . | 0,5 | 2,3 | 4,7 | 7,8 | 7,0 |

*Սակայն կենցաղային մեքենաների, հարմարանքների ու էլեկտրասարքերի կիրառումը և քիմիկատների օգտագործումը բավական չէ։ «Անհրաժեշտ է պայմաններ ապահովել տնային տնտեսության մեջ կնոջ աշխատանքը կրճատելու և հեշտացնելու համար, իսկ ապա՝ հնարավորություն ստեղծել այդ աշխատանքն ընտանիքի նյութական-կենցաղային կարիքների բավարարման հասարակական ձևերով փոխարինելու համար» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 519)։*

*Հետևաբար, տնային աշխատանքի մեքենայացման զուգահեռ պետք է զարգացնել ու կատարելագործել կոմունալ-կենցաղային ծառայությունների սպասարկման մասսայական ձևերն ու մեթոդները։*

*Սկզբնական շրջանում կենցաղային ծառայություններն իրագործվում էին մասնավոր, տնայնագործական ձևերով։ Այնուհետև կենցաղային ծառայությամբ սկսեցին զբաղվել արհեստագործական կոոպերացիայի միավորումները։ Սակայն մեր էկոնոմիկայի հետագա զարգացման շնորհիվ կազմակերպման այդ ձևն էլ սկսեց հնանալ։ 1956 թվականին կոմունալ-կենցաղային սպասարկման նախկին կոոպերատիվ խոշոր ձեռնարկությունների մեծ մասը միավորվեց պետական արդյունաբերության մեջ և հետզհետե վերածվեց ժողովրդական տնտեսության ինքնուրույն ճյուղի։ Այժմ ժողովրդական տնտեսության այդ կարևոր ոլորտը՝ կոմունալ-կենցաղային ծառայությունների ձեռնարկությունները զարգանում են ավելի արագ։*

*ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների սովետը 1959 թվականի մարտին, ապա 1962 թվականի օգոստոսին որոշումներ ընդունեցին ազգաբնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու միջոցառումների մասին, ուր խնդիր է դրվում շեշտակիորեն բարելավել բնակչության կենցաղսպասարկման ձեռնարկությունների աշխատանքը, ընդլայնել ծառայությունների ոլորտը, կատարելագործել սպասարկման ձևերն ու մեթոդները։ Տրվում են կոնկրետ առաջադրանքներ մինիստրություններին, գերատեսչություններին ու տեղական սովետներին՝ ընդարձակելու կենցաղային կոմբինատները, ֆաբրիկաները, տաղավարները, արհեստանոցները և այլն։*

*Ազգաբնակչության կենցաղ-սպասարկման ձևերի օգտագործումը, կանանց տնային աշխատանքը թեթևացնելուց բացի, արտադրության ոլորտն է ներդնում հասարակական լրացուցիչ աշխատանքային ռեսուրսներ։ ՍՍՌՄ-ի*

---

[1] *Աղյուսակը կազմված է վիճ. վարչության տվյալների հիման վրա։*

տալիս «Айна», «Мильва», «Огонек» և այլ փոշիները, ժավելի ջուրը և այլ
քիմիկատներ, որոնք հնարավորություն են տալիս իդեալական մաքրություն
սահեղծել բնակարանում. դրանք որոշ չափով հեշտացնում են տնտեսությունն, բայց ըն-
տանիքում անհրաժեշտ շատ աշխատանքների կատարումը:
Եվ, վերջապես, ինչպիսի՜ պրոգրես է տնտեսուհիների համար նայլոնի,
կապրոնի, սիլոնի, լավսանի և սինթետիկ այլ մանրաթելերից պատրաստված
վերնաշապիկների, սպիտակեղենի, գուլպաների և այլ հագուստեղենի մուտքը
մեր կենցաղը: Հայտնի է, որ սրանք ոչ միայն դիմացկուն են և գեղեցիկ, այլև
անհամեմատ քիչ խնամք են պահանջում (հեշտ լվացվում են, շուտ չորանում
և արդուկի կարիք չեն զգում):
Ցավոք, լայն տարածում չեն գտել նաև կենցաղային մեքենաները, էլեկտրա-
սարքերը, ինչպես և տնտեսական այլ ապրանքներ վարձով օգտագործելու
շահավետ ձևը: Այդ մասամբ բացատրվում է սպասարկման բարձր գներով,
առն տարվող ու վերադարձվող պարագաների, մեքենաների շահագործման վատ
կազմակերպումով: Ճիշտ կլինի կենցաղային իրերի օգտագործման վարձատվու-
թյունը վերանայել՝ այն էժանացնելու նպատակով, այնուհետև երկարացնել
օգտագործման ժամկետը, դրանց երկկողմյա փոխադրումը կազմակերպել
պատվիրատուի հաշվով: Այդ զգալի չափով կընդլայնի ապրանքների օգտա-
գործումը և, որ կարևորն է, կավելացնի այդ հարմարավետ կենցաղային ծառա-
յությունից օգտվողների թիվը:
Վերջին տարիներս Միության մեջ արմատավորվում է ազգաբնակչության
կենցաղային ծառայությունների պահանջմունքների կոմպլեքսային սպասարկ-
ման պրոգրեսիվ ձևը, որը հայտնի է «բարի ծառայություններ» անվանումով[1]:
Կիևի կենցաղային ծառայությունների բյուրոն աշխատում է ժամը 9-ից
21-ը առանց հանգստի, միաժամանակ հանդիսանում է կենցաղ-սպասարկման
վարչության դիսպետչերականը: Բյուրոյի աշխատակիցները լինում են նոր
բնակարաններ ստացողների տանը և տեղում վերցնում պատվերներ: Մոսկ-
վայի և Լենինգրադի կենցաղային ծառայությունների բյուրոները զանազան
ծառայություններ մատուցելու հետ մեկտեղ, լայնորեն իրագործում են ազգա-
բնակչության տրանսպորտային-էքսպեդիցիոն սպասարկումը: Քիշինևի կեն-
ցաղ-սպասարկման կոմբինատը 70 տեսակի «բարի ծառայություններ» է մա-
տուցում ազգաբնակչությանը, ընդհուպ մինչև ճաշեր պատրաստելն ու ճաշա-
սեղաններ ձևավորելը:
1964 թվականից «Ազգաբնակչության սպասարկման բյուրո» է կազմա-
կերպվել նաև Երևանում: Այդ բյուրոն ազգաբնակչության համար կատարում է
մի շարք ծառայություններ: Քաղաքի կենտրոնում գործում են երկու դիսպետ-
չերական կայան, որոնք ազգաբնակչությունից պատվերներ են ընդունում (ծա-
ռայությունների հայտեր է ընդունում նաև կենտրոնական վարչությունը): Քա-
ղաքացիների պատվերներով կատարում են տնային բոլոր տեսակի աշխա-
տանքները՝ լուսամուտների, դռների, պարկետի լվացում, սպիտակեղենի
լվացք, երեխաների ու հիվանդների խնամք, պարապմունքներ են կազմակերպ-
վում ետ մնացող երեխաների համար, երաժշտական տարբեր գործիքների լա-
րում և ուսուցում, ռադիոյի, մագնիտաֆոնի, հեռուստացույցի վերանորոգում,
կահ-կարասիքի և ավտոմեքենաների պաստառապատում, իրերի տեղափո-
խում և այլն: Հատկապես մեծ պահանջ է ներկայացվում տեխնիկական աշ-
խատանքներ կատարելու (պարկետների, դռների ու լուսամուտների մաքրում),
որոնք կանանցից մեծ էներգիա և ժամանակ են խլում:
Ուսումնասիրությունները ցույց են տալիս (Վերին Այգեստան 10-րդ փո-
ղոց) 74 ընտանիքներում երեխաներ խնամելու պատճառով չաշխատող 21 աշ-
խատունակ կանանցից 15-ը ցանկանում են աշխատել կես աշխատանքային
օրվա պայմանով, ընդ որում նրանցից 9-ը կարող են կատարել տեխնիկական
աշխատանք: Այս ցույց է տալիս, որ ազգաբնակչության կենցաղային սպա-
սարկման ձեռնարկություններն ի վիճակի են ընդլայնելու իրենց աշխատանքի
ծավալը ի հաշիվ կես աշխատանքային օրով աշխատող բանվորների ու ծառա-
յողների: Կոմունալ-կենցաղային ձեռնարկությունները պետք է օգտվեն այդ
հնարավորությունից:
Նորմալ կոմունալ-կենցաղային պայմանները թեթևացնում են կնոջ տնա-
յին աշխատանքը. օրինակ, եթե բնակարանն ապահովվում է գազօջախով,
ապա 2—3 անգամ արագանում է ճաշ եփելու պրոցեսը, իսկ եթե բնակարանն
ապահովվում է տաք ջրով, արագանում են աման լվանալու, լվացքի և հիգիե-
նայի պայմաններն ապահովելու հետ կապված այլ պրոցեսներ:
Տնային աշխատատար պրոցեսների մեքենայացումը և, մյուս կողմից՝
ծառայությունների հասարակական ձևերի ընդլայնումն ու կատարելագործումը,
ինչպես նաև բնակարանային պայմանների բարելավումը մեծ չափով կնպաս-
տեն թեթևացնելու կանանց աշխատանքը: Այս տեսակետից կենցաղ սպասարկ-
ման աշխատանքների բարելավումն ու կատարելագործումը հրամայողական
պահանջ են:
Կոմունալ-կենցաղային սպասարկման աշխատանքների բարելավումը
բխում է կանանց լիակատար ազատագրման շահերից և սոցիալիստական ար-
տադրական հարաբերությունների զարգացման բնույթից: Այս ուղղությամբ
պարտիայի և կառավարության նախագծած միջոցառումների կենսագործումը
առաջադիմական խոշոր քայլ կլինի մեր էկոնոմիկայի զարգացման ասպարե-
զում:

Գ. ԳԻՄՈՅԱՆ

[1] Վերջերս այդ անվանումը ճշտվել է և կոչվում է «Ազգաբնակչության սպասարկման բյուրո» և, ըստ էության, այդ ավելի ճիշտ է:

# ԳՐԾՈՒՂՈՒՄ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՑԱՆԿՈՒԹՅԱՄԲ

## ՀՍԿԱՆ ԱՆԳԱՐԱՅԻ ՎՐԱ

Մոսկվա—Վլադիվոստոկ երկաթուղու մայրուղով էլեկտրագնացքը սլանում էր դեպի Սիբիրի խորքերը: Արշալույսից վերջալույս վագոնի պատուհանին գամված ակնապիշ նայում էի դուրս. արագ-արագ իրար էին հաջորդում ցանքատարածությունները, թավշյա կանաչով ծածկված անծայրածիր մարգագետինները, ուր արածում էին խատուտիկ կովերի նախիրներ, ամենուրեք սոճու և սպիտակ կեչու անտառներ, լապուր լճակներ ու լճեր, գետակներ ու գետեր: Արևելքից արևմուտք սլացող գնացքները բեռնված էին անտառանյութով ու քարածխով: Անցել էի Ուրալյան լեռները, Իրտիշն ու Օմսկը, Օբն ու Նովոսիբիրսկը, Ենիսեյն ու Կրասնոյարսկը, Տայշետը, գնում էի դեպի Իրկուտսկ, դեպի Բայկալ:

### ԳԵՂԱՏԵՍԻԼ ԲԱՅԿԱԼԸ

Ահա Բայկալը՝ աշխարհի չքնաղ ու ջրառատ լճերից մեկը, որի մակերեսն ավելի քան երեսունմեկ հազար քառակուսի կիլոմետր է: Նավակով, լճի արևմտյան ափով Լիստվյանկայից գնում եմ դեպի հյուսիս՝ Բ. Կոտի (Պեսչանայա) բնակավայրը: Մի կողմը անեպր ջուր է, մյուս կողմը՝ անտառապատ բլուրներ են ու բարձր լեռներ: Նույնիսկ ժայռերն էլ ծածկված են ծառերով ու հատապտուղների թփուտներով:

Վճիտ է Բայկալի ջուրը, սառնորակ ու համեղ, արցունքի պես վուլալ, ինչպես Սևանինը. երևում են հատակի քարերն ու լողացող ձկները: Հարուստ ֆլորա ու ֆաունա ունի Բայկալը: Լճում աճում են ավելի քան հինգ հարյուր տեսակ բույսեր ու ապրում մոտ հազար երեք հարյուր տեսակ կենդանիներ, որոնց թվում՝ օմուլ, օսետր, խարիուս մեծարժեք ձկները: Փարթամ բուսականությամբ, հարուստ կենդանական աշխարհով և ջրառատ գետերով այդ տեսարժան տեղերը հիանալի հանգստավայրեր են: Նախատեսվում է մոտ ապագայում Բայկալի ափերին կառուցել սանատորա-կուրորտային կոմպլեքս՝ պանսիոնատներով, հանգստյան տներով, տուրիստական բազաներով՝ տարեկան 50—60 հազար հանգստացողների համար:

Բայկալի մեջ թափվում են երեք հարյուր երեսուն գետեր ու գետակներ, որոնք լճի մեջ տարեկան լցնում են վաթսուն խորանարդ կիլոմետր ջուր: Ըստ բուրյաթական ավանդության, հսկա Բայկալի որդիներն են դրանք, որ անընդհատ հարստություն են բերում, լցնում նրա գանձարանը: Ծերունի Բայկալն ուներ նաև մի դուստր՝ գեղեցիկ, կապուտաչյա Անգարան: Նրա գեղեցկությամբ հմայվել են անվեհեր նավավարները, խիզախ ձկնորսները, նախշուն հավքերը, նրա սառնորակ ջուրը խմող եղնիկները: Բայց նա իր սերը չի նվիրել ոչ ոքի: Չվող թռչունները Անգարային պատմում են հյուսիսային հսկայի՝ Ենիսեյի գեղեցկության ու հզորության մասին: Տարվում է աղջիկը Ենիսեյի սիրով ու ձգտում դեպի հյուսիս: Իմանալով այդ մասին՝ ծերունի Բայկալն ապառաժներով է փակում աղջկա ճանապարհը: Անգարայի սիրո ուժը ճեղքում է անխոցելի ժայռերն ու հոսում դեպի հյուսիս: Անհնազանդ աղջըկա արարքից կայրանում է հսկա Բայկալը: Նրա մռնչյունից շանթ ու որոտ է առաջանում, փոթորիկ բարձրանում, արմատախիլ եղած հսկայական ծառերը, փլված ժայռերը փակում են Անգարայի ճանապարհը: Բայց սերը հզոր է, Անգարան հաղթահարում է բոլոր արգելքները, հասնում Ենիսեյին, գրկախառնվում: Այդ օրվանից Անգարան հյուսիս է տանում եղբայրների բերած հարստությունը՝ տարեկան 58 խորանարդ կիլոմետր ջուր, որն էներգիայի հզոր աղբյուր է:

Բայկալի պես պարզ ու վճիտ Անգարան մինչև Բրատսկ նավարկելի է. և ես գերադասեցի նավով ուղևորվել այնտեղ: Իրկուտսկի հիդրոէլեկտրակայանի ամբարտակի շնորհիվ Անգարան հունից դուրս է եկել և ընդարձակվել աջ ու ձախ ափերով. առանձին տեղեր նրա լայնությունը երեքից-հինգ կիլոմետր է:

Անգարայի աջ ու ձախ ափերին ձգված է մոտ 400 հազար բնակչություն ունեցող Իրկուտսկ՝ երեքհարյուրամյա քաղաքը: Հանդիսանալով Արևելյան Սիբիրի կենտրոնը, այն բուռն թափով կարգացել է սովետական իշխանության տարիներին, հատկապես՝ վերջին երկու տասնամյակում: Այժմ քաղաքում կան արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկություններ, այդ թվում՝ ալյումինի, մեքենաշինական գործարանները, սննդի ու թեթև արդյունաբերության օբյեկտներ: Քաղաքում կան բարձրագույն ուսումնական յոթ հաստատություն, չորս թատրոն, պատմական և նկարչական թանգարաններ: Այստեղ է գտնվում միութենական գիտությունների ակադեմիայի Արևելյան Սիբիրի ֆիլիալը:

ՍՍՌՄ ժուռնալիստների միության տեղական կազմակերպության պատասխանատու քարտուղար ընկ. Վ. Մուխարտովի ուղեկցությամբ այցելեցի քաղաքի տեսարժան վայրերն ու հիդրոէլեկտրակայանը, որի մեքենայական սրահն իր ճարտարապետական ոճով, ակնապարար տեսքով ավելի շատ կուլտուրական օբյեկտի տպավորություն է թողնում, քան արդյունաբերական ձեռնարկության: Էլեկտրակայանի ութ ագրեգատները տարեկան արտադրում են 4,1 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա:

### ՏԱՅԳԱՆ ՆԱՀԱՆՋՈՒՄ Է

Իրկուտսկից Բրատսկ ջերմանավով երկու օրվա ճանապարհ է: Անգարայի ափերը միայն Իրկուտսկի մոտ են անտառապուրկ: Գետափից սկըսվում է տայգան, որը ձգվում է հեռո՜ւ, շատ հեռու և ձուլվում հորիզոնին: Որքան դեպի հյուսիս ես գնում, այնքան սակավ են վարելահողերն ու խոտհարքները: Կոլտնտեսությունններն զբաղվում են անտառահատությամբ, անտառանյութի վաճառքով: Մինչև Բալագանսկ հասնելը գետը դուրս է եկել իր նախկին հունից և ընդարձակվել հազարավոր մետրերով: Որքան մոտենում ես Բրատսկին, այնքան ընդարձակվում է Անգարան, լճի ու ծովի տեսք ստանում:

Իրկուտսկից Բրատսկ նավարկության վերջին կանգառը Պադուն բնակավայրն է: Ասում եմ կանգառ, որովհետև ոչ մի տեղ նավահանգիստ չկա, չեն կառուցել, նկատի ունենալով, որ առաջիկայում ծովի մակարդակը բարձրանալու է ևս երկու մետրով: Պադունից հյուսիս նավեր չեն անցնում՝ Բրատսկի ծովի պատնեշն արգելակում է: Անցյալում էլ այստեղ նավարկությանը խոչընդոտել են սահանքները, քիչ լաստավարների է հաջողվել նավարկել գետի այդ մասով: Պադունում են գտնվում պարտիայի քաղաքային կոմիտեն, քաղաքային սովետի գործադիր կոմիտեն, Բրատսկի շինարարության վարչությունը և այլ օրգաններ: Այստեղ ես հանդիպեցի պարտիայի քաղաքային կոմիտեի քարտուղար Ռեգինա Մուսատովային. կրթությամբ ու մասնագիտությամբ ժուռնալիստ է նա:

— Մեզ մոտ,— ասաց նա,— շատ հյուրեր ու տուրիստներ են գալիս ո՛չ միայն մեր երկրի բոլոր ռեսպուբլիկաներից ու մարզերից, այլև աշխարհի չորս կողմից:

Տեղի պարտիական կազմակերպության մասին խոսելիս նա հայտնեց.

— Ավելի քան վեց հազար կոմունիստներ են աշխատում կառույցներում և սպասարկման ոլորտում: Պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում շինարարական առաջադրանքների կատարումն է, որին ծառայում է մասսաների մեջ տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը: Ամենուրեք կոմունիստները նորագույն տեխնիկայի, աշխատանքի առաջավոր մեթոդների կիրառման առաջամարտիկներ են:

Շարունակելով իր խոսքը Ռեգինա Մուսատովան պատմեց, որ Բրատսկի հիդրոէլեկտրակայանից բացի իրենց մոտ կառուցվում են բազմաթիվ արդյունաբերական օբյեկտներ, այդ թվում՝ ալյումինի գործարանը. այն ՍՍՌՄ-ում ամենամեծն է լինելու, որի արտադրության բոլոր պրոցեսները պետք է մեքենայացվեն ու ավտոմատացվեն: Կորշունովոյում կառուցվող հարստացուցիչ ֆաբրիկան տարեկան վերամշակելու է ավելի քան տասը միլիոն տոննա երկաթահանք և արտադրելու է վեց միլիոն տոննա կոնցենտրատ: Կառուցողների մեծ ընտանիքում շատերի հետ մեկտեղ աշխատանքային սխրանքների լավագույն օրինակ են ցույց տալիս՝ ՍՍՌՄ Գերագույն սովետի դեպուտատ Վ. Կոպմիրչուկը, բրիգադավարներ Վ. Ռեվտովը, Վ. Մակուշևը, մոնտաժող Դ. Տիխոնովսկին և ուրիշներ:

Աշխատավորների դեպուտատների քաղաքային սովետի նախագահի տեղակալ Վասիլի Ռուդիխը ծնվել է Անգարայի ափին, մեծացել Տայգայում՝ Բրատսկում:

— Պատմական Բրատսկը,— ասաց նա,— որը հիմնել են արևելյան Սիբիր գաղթած կոզակները 1631 թվականին, այլևս չկա, մնացել է ծովի հատակում, ջուրը ծածկել է այն: Հին բնակավայրից, որպես հիշատակ, վերցվել է բերդապարիսպի փայտյա աշտարակներից մեկը, որը դըրվելու է նոր քաղաքի ակնառու տեղերից մեկում: Պադունը, որը հայտնի է Պադունյան սահանքներ անունով, տասը տարի առաջ տայգա էր՝ վիթխարի ծառերով ու անանցանելի թփուտներով ծածկված: Կառուցվում է նոր քաղաք, այստեղից երեսուն կիլոմետր հեռու, ծովափին:

Այժմ Բրատսկն ունի ավելի քան հարյուր հազար բնակիչ, երեսուներեք դպրոց, տասնհինգ կինոթատրոն, բազմաթիվ ակումբներ ու գրադարաններ, հեռուստատեսության ստուդիա, բժշկական ուսումնարան: Այստեղ գործում է Իրկուտսկի պոլիտեխնիկական ինստիտուտի ֆիլիալը: Քաղաքի բուժաշխատողների թիվն անցնում է հազարից, որից երկու հարյուրը բժիշկներ են: Արագ թափով առաջ է ընթանում քաղաքային շինարարությունը. կառուցվում են հինգ-վեցհարկանի հարմարավետ բնակելի տներ, ուսումնական, կուլտուրական և

առողջապահական օբյեկտների շենքեր: Միայն այս տարի շահագործման է հանձնվելու մոտ 100 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն: Մոտ ապագայում, անտառներով շրջապատված Բրատսկը այցելուների ուշադրությունը կգրավի իր կանաչազարդ փողոցներով, պուրակներով, ստադիոնով, ծովափնյա հանգստավայրերով:

Ես պետք է կրուցեի Բրատսկի՝ աշխարհի խոշորագույն հիդրոէլեկտրակայանի շինարարության գլխավոր ինժեներ Գինդինի հետ: Աշխատանքային օրվա հենց սկզբից նրա ընդունարանում հավաքվել էին բազմաթիվ մարդիկ: «Հավանաբար ժամանակ չի ունենա ինձ ընդունելու», անցավ մտքովս: Բայց հաստատ մնալով վճռիս, մոտեցա քարտուղարուհուն, նրան ասացի որտեղից եմ եկել և հայտնեցի գալուս նպատակը:

— Ահարոն Մարկովիչին կկեկուցեմ, սպասեք, խնդրեմ:

Քարտուղարուհուն համաձայնեցնելը գործի հաջողության կեսն է, հուսադրեցի ինքս ինձ: Եվ իրոք, տասնհինգ-քսան րոպե անց նա ինձ ներս հրավիրեց: Վիթխարի կառույցի գլխավոր ինժեների աշխատասենյակը փոքր էր, համեստ կահավորված, պատերը կարդարված էին գծագրերով ու սխեմաներով: Ներողություն խնդրեցի ընկ. Գինդինից, որ իր աշխատանքի ոսկե ժամերից տասը-տասնհինգ րոպե խլելու եմ:

— Հեռավոր վայրից, Հայաստանից եք եկել, պետք է ընդառաջել ձեզ,— պատասխանեց նա:

Ինձ հետաքրքրեց այդքան մարդամոտ մարդու անձնական կյանքը ևս:

Ավելի քան վաթսուն տարեկան է Ահարոն Մարկովիչ Գինդինը: Հարցերին նա պատասխանում է հակիրճ, ինչպես զինվորականը, բայց սպառիչ ու համոզիչ: Նա ակտիվ մասնակցել է Միջին Ասիայի հիդրոտեխնիկական օբյեկտների շինարարությանը, Հայրենական մեծ պատերազմի ժամանակ գլխավորել Կապբեկի լեռնանցքի պաշտպանական ամրությունների կառուցումը, երկար տարիներ ղեկավար աշխատանք է վարել Վրաստանի հիդրոէլեկտրակայանների կառույցներում. եղել է Հայաստանում, դիտել Սևանի ստորերկրյա և Գյումուշի հիդրոէլեկտրակայանները: Արդեն տասը տարի է Ա. Գինդինը Բրատսկի շինարարության գլխավոր ինժեներն է, այդ վիթխարի օբյեկտի տեխնիկական մտքի ղեկավարը: Տեղացիները պատմում են, որ ցրտաշունչ սառնամանիքներին, հորդառատ տեղումներին նա բանվորական հագուստով հասնում է էքսկավատորավարի, կռունկավարի մոտ, հետաքրքրվում նրանց աշխատանքով ու կյանքով: Բրատսկում սիրում ու հարգում են այդ մեծ մասնագետին, ազնիվ քաղաքացուն, որն իրեն նվիրել է ժողովրդի շահերին ծառայելուն:

Ինչպիսի՞ մասշտաբներով է ընթանում ձեր



Ա. Մ. ԳԻՆԴԻՆ

մոտ շինարարությունը, հարցիս Ա. Մարկովիչը պատասխանեց.

— Եթե նկատի ունենանք միայն ջրամբարի պատնեշը և հիդրոէլեկտրակայանի շենքի կառուցումը, 5100 մետրից մի փոքր ավելի ճակատով: Բայց մեր շինարարական կազմակերպությունը կոմպլեքսային է: Բրատսկի հիդրոէլեկտրակայանից բացի կառուցում ենք արդյունաբերական օբյեկտներ, բնակելի տներ, ճանապարհներ:

— Կառուցողների բանակը մե՞ծ է:

— Կառուցման ծավալման զուգընթաց աճել է և բանակը. այժմ այն հասնում է ավելի քան հիսուն հազարի:

— Որքա՞ն է ջրամբարի պատնեշի բարձրությունը:

— Հարյուր քառասունյոթ մետր, հիմքի լայնությունը՝ ավելի քան հարյուր մետր...

## ԱՆԳԱՐԱՅԻ ԿԱՍԿԱԴԸ

Անգարայի էներգետիկ կարողության օգտագործումը մեր երկրի գիտնականների ուշադրության կենտրոնում է եղել սովետական իշխանության հաստատման առաջին իսկ տարիներից: 1930 թվականին հիդրոէներգետիկայի ականավոր մասնագետ ակադեմիկոս Ի. Գ. Ալեքսանդրովը, Գ. Մ. Կրժիժանովսկու (Վ. Ի. Լենինի զինակից, այն ժամանակ պետպլանի նախագահ) աջակցությամբ, կազմել է Անգարայի կոմպլեքսային օգտագործման գլխավոր պլանը: Ստեղծվել է Անգարայի բյուրո, որը 1935 թվականին ավարտել է գետի հետազոտման առաջին էտապը: Ըստ այդ հետազոտության նախատեսվել է Անգարայի վրա կառուցել վեց հիդրոհանգույց... 1953 թվականին վերջնականորեն հաստատվել է Անգարայի կասկադի նախագիծը, ըստ որի վեց էլեկտրակայան՝ 10 միլիոն կիլովատ կարողությամբ: Բոլոր կայանները միասին արտադրելու են տարեկան 70 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա:

Բրատսկի հիդրոէլեկտրակայանը Անգարայի կասկադի երկրորդ օբյեկտն է, առաջինը Իրկուտսկինն է: Շինարարների առաջին ջոկատներն այստեղ են եկել 1954 թվականի վերջերին: Այնուհետև եկել են հազար-հազարները՝ ռուսներ ու բելոռուսներ, ուկրաինացիներ ու վրացիներ, թաթարներ ու հայեր, երկրի հիսուն ազգությունների ներկայացուցիչներ... եկել են կոմունիստներ, կոմերիտականներ, Սովետական բանակից զորացրվածներ... Վոլխովի, Դնեպրի, Ստալինգրադի, Կույբիշևի, Մինգեչաուրի հիդրոէլեկտրակայանների կառուցման մասնակիցներ: 1956 թվականի մարտին, տեղական «Огни Ангары» լրագիրը հաղորդում է, որ «Բրատսկը կառուցող բանվորների ու բանվորուհիների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների թիվն արդեն հասել է տասը հազարի, որից ութ հարյուրը կոմունիստներ են, երկու հազարը՝ կոմերիտականներ: Դրանց թվում են՝ Վոլխովի և Դնեպրի հիդրոէլեկտրակայանների կառուցման մասնակից Ալեքսանդր Արսենևիչ Նազարովը, Դնեպրի հիդրոէլեկտրակայանի շինարարության մասնակից, էքսկավատորավար Ֆյոդոր Սապը: 1961 թվականին Բրատսկում աշխատում էին քառասուն հազար մարդ, որոնք օրական կատարում էին հինգ միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանք:

Բրատսկում կենտրոնացված են հիդրոտեխնիկական շինարարության հզոր սարքավորումներ, առաջնակարգ տեխնիկա, տարբեր տեսակի 213 էքսկավատոր, տրակտորային բազայի վրա գործող 858 մեխանիզմներ, 318 ամբարձիչ կռունկ, մոտ 3000 բեռնատար ավտոմեքենա և այլն:

Ինչպես կռվի դաշտում, այնպես էլ այստեղ մարդիկ ապրում են վրաններում, հողատներում, համառ մաքառում՝ հաղթահարելու կատաղի Անգարան, նրա ուժը հասարակության բարօրությանը ծառայեցնելու համար: Մարդիկ աշխատում են զօր ու գիշեր, ձմռան բուք ու բորանին՝ 45—50 աստիճան սառնամանիքին, հորդառատ անձրևի տակ ու պատվով կատարում իրենց առաջադրանքները:

Կառուցողների կոլեկտիվում իրենց աշխատանքային սխրանքներով համբավ են վաստակել Ե. Վերեշչագինի և Ի. Լյամինի ղեկավարած կոմերիտական բրիգադաները: Իրկուտսկի հիդրոէլեկտրակայանից Բրատսկ պետք էր անցկացնել բարձր լարվածության էլեկտրահաղորդման գիծ: Ուղատը (просек) անցնում էր տայգայի միջով ու ճահիճների վրայով: Անվեհերների ջոկատը, հաղթահարելով բնական արգելքները, կիլոմետր առ կիլոմետր առաջ է շարժվում, պատրաստում էլեկտրահաղորդման լարերի սյուներ: Մարդիկ որքան խորանում են տայգայում, այնքան հեռանում են բնակավայրից, գիշերում վրանների տակ, ծառերի ճյուղերից պատրաստած հյուղակներում: Օդում վխտացող մոծակներն ու մլակները ներթափանցում են մարդկանց դեմքին քաշած ցանցի միջով, խայթում: Մլակների խայթոցների կըսկիծն էլ չի հուսահատեցնում անվեհերներին, նրանք շարունակում են պայքարել իրենց նպատակին հասնելու համար: Բարձր լարվածության հաղորդման գիծը կառուցվում է ժամանակին:

Անգարայի միջին հոսանքում ամենանեղ տեղը Ժուրավլինայա գրուդ և Պուրսեյ հրվանդանների միջև ընկած տարածությունն է, որը մի փոքր մեծ է հազար մետրից: 90—100 մետր բարձրություն ունեցող այդ ժայռապատ հրվանդաններն ուղիղ կտրվածքով իջնում են մինչև գետի ափը և շատ նման են Հրազդանի, Դեբեդի ու Քասախի կիրճերին: Անգարայի ալիքները դարեր շարունակ զարնվել են այդ ժայռերին, համբույր տվել ու առել, մաշել ապառաժը, բայց երբեք չեն վհատվել, միշտ հոսել են դեպի հյուսիս, դեպի անձկալի Ենիսեյը: Բրատսկի հիդրոէլեկտրակայանի ամբարտակի կառուցման համար ընտրված է այդ կանյոնը: Մարդկային ջանքերի և հզորագույն տեխնիկայի միջոցով երկու հըրվանդանների վրա բարձրանում են հողաթմբերը, գետի աջ ու ձախ ափերի պատնեշները:

Անգարայի հոսանքը փակելու վճռական ճակատամարտն սկսվել է 1959 թվականի հունիսի 18-ին: Հզորագույն տեխնիկա է գործադրվում: 90 մետր բարձրություն ունեցող ժամանակավոր կամրջից ինքնաթափ ավտոմեքենաներն ապառաժի հսկայական կտորներ են լցնում գետի հունը: Անգարան կատաղում ու փրփրում է, փորձում ճեղքել իրեն կաշկանդող պատնեշը, բայց զուր... Այն, ինչ չկարողացավ կատարել հսկա Բայկալն իր կախարդական ուժով, կատարեցին մարդիկ՝ իրենց դյուցազնական գործերով:

Տասնինը ժամում գետի մեջ թափած ավելի քան 15 հազար խորանարդ մետր դիաբազի հսկայական կտորները փակեցին Անգարայի ճանապարհը: Ավելի քան 51000 մետր երկարություն ունեցող պատնեշի (որի վրայով անցնում է երկաթուղի, իսկ նրա երկու կողմից ասֆալտապատ ավտոճանապարհ է) շնորհիվ ստեղծվել է աշխարհի ամենախոշոր ջրամբարը՝ 179 միլիարդ խորանարդ մետր ջրատարողությամբ:

Չանցած մեկ տարի, 1960 թվականի ապրիլի

21-ին, ի նշանավորումն Վ. Ի. Լենինի ծննդյան 90 ամյակի, դրվում է Բրատսկի հիդրոէլեկտրակայանի հիմքը: Առաջին խորանարդ մետր բետոնի հետ հիմքի մեջ դրվում է մետաղյա սալիկ. հետևյալ մակագրությամբ.

СССР
БРАТСКАЯ ГЭС
Здание
Гидроэлектростанции
Заложено
21 апреля 1960 г
В ознаменованне
90 летия со дня рождения
В. И. ЛЕНИНА
Работы выполнены
Братскгэсстроем

## ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՄԵՆԱՀԶՈՐԸ

Պատնեշի հյուսիսային կողմում կառուցված է էլեկտրակայանի շենքը, որի մի մասը մտնում է նրա մեջ: Կայանի գլխավոր ինժեների պաշտոնակատար՝ Բ. Ցետլինը այդ հսկայի մասին ասաց.

— Բրատսկի հիդրոէլեկտրակայանը աշխարհում խոշորագույնն է: Նրա հզորությունը 4 միլիոն 500 հազար կիլովատ է, մինչդեռ Ամերիկայի Միացյալ Նահանգների Գրանդ-Կուլի ամենամեծ հիդրոէլեկտրակայանինը՝ 2,3 միլիոն-կիլովատ է, Վոլգայի վրա կառուցված ՍՄԿԿ XXII համագումարի անվան հիդրոէլեկտրակայանինը՝ 2,5 միլիոն: Նախատեսված 20 ագրեգատներից 16-ը արդեն գործում են [1], առաջիկայում կտեղադրվեն մյուսները: Բոլոր ագրեգատները միասին տարեկան կարտադրեն ավելի քան 22,5 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա: Մեր էլեկտրակայանի առավելությունը մյուսների համեմատությամբ այն է, որ տարվա բոլոր եղանակներին ամբարտակի ջուրը նույն մակարդակի վրա է:

Էլեկտրահինժեներ Վ. Պետրիշակի ուղեկցությամբ գնացի դիտելու էլեկտրակայանը: Մտանք մեքենայական սրահը, որի երկարությունը հինգ հարյուր մետր է, լայնությունը՝ երեսուն: Ավելի քան 90 մետր երկարություն, 7 մետր տրամագիծ ունեցող մետաղյա խողովակները ջրամբարից (պատնեշի միջով) իջնում են մինչև տուրբինները, որոնց գործող յուրաքանչյուր անիվի տրամագիծը 5,5 մետր է, քաշը՝ 100 տոննա: 92—96 մետր բարձրությունից հոսող ջրի ուժեղ ճնշման շնորհիվ այդ հսկայական անիվները րոպեում կատարում են 125 պտույտ:

— Բրատսկի հիդրոէլեկտրակայանի տուրբինները,— ասում է ուղեկիցս,— Վոլգայի էլեկտրակայանների տուրբիններից քաշով շատ թեթև են, բայց երկու անգամ ավելի հզոր:

Յուրաքանչյուր հերթափոխում տասներկու մարդ են սպասարկում այդ հսկայական էլեկտրակայանին, իսկ կենտրոնական ղեկավարման կետում կանգնած է մեկ մարդ, որն ավտոմատ սարքավորումների միջոցով ղեկավարում է էլեկտրահաղորդման ցանցի աշխատանքը: Կոլեկտիվում մեծ հեղինակություն են վայելում տրանսֆորմատորային մասի պետը, ավագ վարպետ Ս. Գարկովցևը, տուրբինների ցեխի պետ, վարպետ՝ Վ. Պոլիկովը, բրիգադավար Ա. Գալյուտան, կայանի հերթափոխի ինժեներ՝ Վ. Պիլցինը: Բրատսկի էլեկտրակայանը միացվել է Արևելյան Սիբիրի ողջ էլեկտրահաղորդման ցանցին:

Երբ դուրս եկանք էլեկտրակայանի շենքից, Պետրիշակը իմ ուշադրությունը հրավիրեց մեկնից ոչ շատ հեռու գտնվող ժայռի վրա:

— Տեսնո՞ւմ եք այս ապառաժը, մենք սրան դիաբազ ենք անվանում, գրանիտի պես ամուր է, գուցե դուք ա՞յլ կերպ եք կոչում:

— Այդ մեր բազալտն է,— ասացի ես:

— Էլեկտրակայանից մինչև բաց բաշխման ենթակայանը բարձր լարվածության հաղորդման գիծն անցնում է ժայռի միջով: Այդ թունելը բացելու համար հրավիրվեց հորատողների հատուկ բրիգադա, որը մեծ գործ կատարեց: Այդ բրիգադայի անդամները հայեր էին:

— Ովքե՞ր են նրանք և որտե՞ղ են այժմ:

— Չեմ կարող ասել, որովհետև ոչ մի առընչություն չեմ ունեցել նրանց հետ:

## ԹՈՒՆԵԼԱԳՈՐԾՆԵՐԸ

Հորատողների խմբի մասին մանրամասնությունն իմանալու համար դիմեցի «Огни Ангары» թերթի խմբագիր Մ. Սավենկոյին: Նա արդեն տասը տարի է խմբագրում է լրագիրը և անձամբ ճանաչում է շատերին:

— Այո՛, եղել է այդպիսի մի խումբ,— ասաց նա.— նրանց մասին մեր թերթում գրել ենք: Ապա նա հեռախոսով խոսեց մի ընկերոջ հետ, որն անցյալում ղեկավարել է թունելագործների և ժայռեր հորատողների աշխատանքը:

— Ավելի լավ է նախ զրուցեք այդ ընկերոջ հետ, հետո թերթեք մեր լրագրի կոմպլեկտը,— խորհուրդ տվեց Միխայիլ Իգնատիչը:

Պաշտոնյան, որին ներկայացա, սեղմելով ձեռքս, ասաց իր ազգանունը, ես էլ իմը: Բայց մինչև մեր խոսակցությունն սկսելը, ուզեցի ճշգրտել զրուցակցիս ազգանունը, պատճառաբանելով, որ լավ չլսեցի:

— Լրագրողի խորամանկության դիմեցիք,— կատակեց նա ու կրկնեց իր ազգանունը. «Զուլ-

1 Վերջերս գործարկվեց նաև 17-րդ ագրեգատը:



դոտվորցով» և, շարունակելով խոսքը՝ ասաց,— երևի սարսափեցիք ազգանունիցս: Անկեղծ ասած, ես ոչ մի հրաշք չեմ գործել, ա՛յ, հրաշք գործեցին ձեր հայրենակիցներն՝ այստեղ:

— Ովքե՞ր են նրանք և որտե՞ղ են այժմ:

— Դեմքով գրեթե բոլորին հիշում եմ, ազգանունով՝ միայն ղեկավարին, կարծեմ Շահումյան էր: Նրանք մեր մոտից վաղուց են գնացել, չորս-հինգ տարի առաջ:

— Իսկ որտեղի՞ց էին եկել:

— Հայաստանից, եթե հիշողությունս չի դավաճանում, Հայէլեկտրաշինից: Թունելը բացելուց հետո նրանք նորից վերադարձան իրենց ծննդավայրը:

Բարձր լարվածության կաբել անցկացնելու համար թունելը 60—70 քառակուսի մետր կտրվածք է ունեցել: Հորատողները քրտնաթոր աշխատել են ծնկաչոք, սանտիմետր առ սանտիմետր պոկելով գրանիտյա ժայռի կտորներ, առաջ են շարժվել դեպի լույս աշխարհ, դեպի բաց բաշխման ենթակայանը: Նրանք ճեղքել են էլեկտրակայանի շենքի հիմքի ապառաժը և ճանապարհ բացել ստորերկրյա ջրերի համար:

Վլադիմիր Միխայլիչը գովեց Շահումյանին, նշելով, որ նա բազմակողմանի զարգացած, տեխնիկապես գրագետ, բարձր կուլտուրայի տեր մասնագետ է, որից շատ բան են սովորել իրենց լեռնային ինժեներները:

Մեր բաժանման պահին ընկ. Զուլդոտվորցովը խնդրեց.

— Ուղարկեք մեկ ձեր ամսագրի այն համարը, որում կտպագրվի մեր կոլեկտիվի մասին:

— Դուք հայերեն չեք կարող կարդալ:

— Ես կգտնեմ մի հայ ընկերոջ, կխնդրեմ կարդալ ու թարգմանել: Մեկ համար հաճելի է հայերեն ամսագրում հանդիպել Բրատսկի կառուցողներին:

Շահումյանի ղեկավարած հորատողների խմբի աշխատանքային սխրանքների մասին ավելի ստույգ տեղեկություն վերցնելու համար նորից դիմեցի «Огни Ангары» լրագրի օգնությանը. թերթեցի 1959—1960 թթ. կոմպլեկտները: Թերթի էջերում գովասանական բազում թղթակցություններ են տպագրվել թունելային աշխատանքի տեղամասի պետ Ս. Շահումյանի [1], բրիգադավարներ Հրաչիկ Սոլկարյանի, Ռաֆիկ Գրիգորյանի, Վասիլի Երմոլինի. Գերասիմ Նիկողոսյանի, Գալուստ Ղարիբյանի, Աշոտ Մարգարյանի և ուրիշների մասին:

Բրատսկհիդրոշինարարությունում էքսկավատորավարներ Մաթևոս և Արշալույս Ոսկանյաններն (Իջևանի շրջանի Ոսկեպար գյուղից) արդեն տասը տարի է աշխատում են Բրատսկում: Վերջերս նրանց է միացել երրորդ եղբայրը՝ ավտովարորդ Գագիկը: Իրենց ազնիվ աշխատանքով նրանք վայելում են կոլեկտիվի համակրանքը: Գործի տեղում չկարողացա ոչ մեկին հանդիպել. հերթափոխից հետո տուն էին գնացել: Մաթևոսն իր ընտանիքով ապրում է աջափնյա ավանում, կնոջ՝ սևքարեցի Գեղեցիկի և Սիբիրում ծնված որդու հետ: Իմ անակնկալ այցելությունն սկզբում զարմացրեց ամուսիններին, բայց, իմանալով Բրատսկ գալուս նպատակը, սկսեցին սրտաբաց զրուցել հետս: Նրանք վաղուց է չեն եղել Հայաստանում: Դրա համար Մաթևոսին հետաքրքրում էր շինարարությունը, Գեղեցիկին՝ այլ բաներ: Ես սիրով պատասխանում էի նրանց հարցերին, նրանք՝ ինձ: Մեր զրույցն ավարտվելու վրա էր, երբ Գեղեցիկը պատրաստվեց սեղան բացել: Շնորհակալություն հայտնելով, խնդրեցի նեղություն չկրել:

— Անկարելի է,— համառեց Գեղեցիկը,— հայի տուն մտնել ու հաց չկտրել:

Հյուրը տանտիրոջ ծառան է, մտածեցի և ենթարկվեցի: Մեր զրույցը շարունակվեց: «Արդյոք մտադիր չե՞ն Հայաստան վերադառնալ» հարցիս Մաթևոսը բացասական պատասխան տվեց, պատճառաբանելով, որ հարմարավետ բնակարանով ապահովված է, աշխատավարձը լավ, աշխատանքային շրջապատը համերաշխ, գետն ու ջրամբարը հարուստ են ձկներով, տայգայում կան վայրի այծեր, վարազներ ու արջեր, երբ կամենա ընկերների հետ որսի կգնա:

— Օդն էլ շատ լավ է Մաթևոսի համար,— ամուսնու խոսքը շարունակեց կինը,— արձակուրդներին, երբ Իջևան ենք գնում, անմիջապես հիվանդանում է, իսկ այստեղ գլխացավը չգիտե ինչ բան է:

Ահա թե իջևանցին ինչպես է ընտելացել հեռավոր Սիբիրին:

## ԵՐԿՆԱՍԼԱՑ ՍՈՃԻՆԵՐ

Կիրակի օր էր: Հիմնարկները փակ էին: Դուրս եկա զբոսնելու Պադուն ավանում: Գլխավոր՝ հիդրոշինարարների փողոցը, որն ավելի քան երեք կիլոմետր երկարություն ունի, սկսվում է ծովափից ու ձգվում մինչև տայգա: Ավտոճանապարհներն ու մայթերը միմյանցից բաժանված են բնական սոճիներով ու թփուտներով: Ինչպես գլխավոր, այնպես էլ մյուս փողոցների տները, բացառությամբ դպրոցների, բուժհիմնարկների և երկու մեծ խանութների, փայտաշեն են, երկհարկանի: Բայց դրանք այնքան ճաշակով ու նուրբ են ներկված, որ հեռվից չես տարբերում քարից: Տայշետ—Լենա երկաթուղու հյուսիսային կողմով, անտառի եզրով անցնում է ասֆալտապատ ճանապարհը, որն անտառին այնքան է մոտ, որ

1 Սոս Հակոբի Շահումյանը ներկայումս Երևանյան լճի կառուցման պետն է:

Հարց է ծագում, արդյոք տնտեսական շրջանացման համար, իրո՞ք, անհրաժեշտ է նկատի ունենալ վերոհիշյալ և միայն վերոհիշյալ սկզբունքները։ Եվ հետո՝ ո՞վ է որոշում այդ սկզբունքները։ Մի՞թե դա թողնված է յուրաքանչյուրի քմահաճույքին։ Չէ՞ որ քմահաճ չափանիշներով տնտեսա-աշխարհագրական շրջանացումը կարող է հասցնել զվարճալի հետևությունների և անհայտ կոմբինացիաներ ու փոխադարձ կապեր հայտնաբերելու խաբուսիկ հույսեր ներշնչել։

Այսպես, վերցնենք տնտեսական շրջաններից մեկը՝ դիցուկ Զանգեզուրը և տեսնենք, թե դրա առանձնացումը որքանով է ելնում վերոհիշյալ հինգ սկզբունքներից։ Նախ՝ Զանգեզուրի արդյունաբերական Ղափան-Քաջարան հանգույցը գտնըվում է շրջանի ծայր՝ հարավ-արևելյան մասում և այն խիստ մասնատված լեռնային մակերևույթի հետևանքով չի կարող դառնալ «Վարդենիսի լեռնաշղթայից հարավ և հարավ-արևելք ընկած տերիտորիաների կազմակերպիչ կորիզը»։ Որոտանի ապագա արդյունաբերական հանգույցը քիչ փոփոխություն կարող է մտցնել այդ բնագավառում։ Ինչպես հայտնի է, Հայոց ձորը տնտեսական շատ քիչ միասնություն ունի Զանգեզուրի հետ։ Առաջինը մասնագիտանում է խաղողագործության, պտղաբուծության, անասնապահության, սննդի արդյունաբերության, իսկ երկրորդը՝ անասնապահության և լեռնային հանքարդյունաբերության ուղղությամբ։ Այդպես էլ մյուս սկզբունքներից և ոչ մեկն այս ընդարձակ և լեռնային կտրտված տերիտորիայի համար միասնական լինել չի կարող։

Քննենք Սևան-Աղստև շրջանի օրինակը։ Հեղինակը Հրազդանի վարչական շրջանը և Սևանի ավազանը միացնում է Դիլիջանի, Իջևանի, Կրասնոսելսկի շրջաններին։ Ինչո՞ւ է այդպես վարվում։ Նրան դեպի այդ քայլն է մղել իր կողմից նշված սկզբունքներից առաջինին բավարարելու պահանջը։ Չէ՞ որ տնտեսական շրջանն ըստ հեղինակի պետք է ունենա արդյունաբերական «բավարար հզորության» կենտրոն կամ հանգույց, իսկ այդ շրջաններին համեմատաբար մոտ կանգնած հանգույցները Հրազդանն ու Սևանն են, ուրեմն պետք է դրանք վերցնել նշված շրջանների մեջ՝ որպես «տերիտորիայի կազմակերպող տնտեսական կորիզի»։

Արդյունաբերական այդ հանգույցները ոչ մի կերպ չեն կապվում տնտեսական շրջանի մյուս մասերի հետ։ Ընդհակառակը. և՛ Հրազդանի, և՛ Սևանի արդյունաբերական հանգույցները հիմնականում ստեղծվել են Արարատյան շրջանի և, առաջին հերթին, Երևանի տնտեսական պահանջով, ավելի ճիշտ՝ ազդեցությամբ։ Հայտնի է, որ Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը կառուցվում է հիմնականում Երևանի ալյումինի գործարանը համապատասխան հումքով բավարարելու համար։ Իհարկե, այն կարտադրի նաև այլ օժանդակ նյութեր, որոնց մեծ մասը նույնպես կօգտագործվի Երևանի արդյունաբերական ու շինարարական տարբեր ճյուղերում։ Գրեթե նույնպիսի նկատառումներով և նույն պահանջներով է ստեղծվել Սևանի արդյունաբերական հանգույցը։

Ինչպե՞ս, ի՞նչ տրամաբանությամբ է Սևանը և Հրազդանը առանձնացվում Երևանի (Արարատյան տնտեսական շրջանի) արդյունաբերական հանգույցից և մտցվում մի այլ շրջանի մեջ, որի ծայրամասերը հասնում են Դիլիջան, Իջևան, Բերդ, Բաշքենդ, Աչաջուր։

Հինգ սկզբունքներից մյուսը, որով հեղինակն առանձնացնում է տնտեսական շրջանները, «միասնական արտադրական մասնագիտացումն է»։ Այդ առումով եթե քննելու լինենք Սևան-Աղստևի տնտեսական շրջանը, կնկատենք, որ ոչ մի միասնական արտադրական մասնագիտացում գոյություն չունի Հրազդանի, Սևանի և Աղստևի միջև (վերջինիս տակ հեղինակը հասկանում է Դիլիջանի, Իջևանի, Շամշադինի և Կրասնոսելսկի շրջանները)։

Միանգամայն տարբեր են նաև Հրազդանի, Սևանի և Աղստևի հովտի բնակլիմայական պայմանները, բնակչության զբաղմունքը։ Նշենք նաև, որ նույն ձևով այդ շրջանն առանձնացվել է 1929 թվականին, վերը հիշատակված սխեմայում։ Բայց այն, բնականաբար, մոռացության տրվեց՝ չթողնելով ոչ մի հետք, եթե չհաշվենք դրա այս մեխանիկական կրկնությունը։ Հեղինակը մոռանում է նաև, որ Աղստևի հովտում (Իջևանում) ստեղծվել և շարունակում է ձևավորվել արդյունաբերական բավական խոշոր հանգույց՝ ի դեմս փայտամշակման և գորգագործական կոմբինատների։ Բացի այդ, այստեղ տեղի հումքի բազայի վրա, թերևս, նպատակահարմար կլինի ապագայում կառուցել ծխախոտի ֆաբրիկա։ Այդ շրջանում, որը գտնվում է Անդրկովկասյան երեք ռեսպուբլիկաների սահմանագլխին, շահավետ կլինի կառուցել նաև բրդալվացման ֆաբրիկա։ Դրանով Անդրկովկասը, որը տեղի բուրդը լվանալու համար տեղափոխում է Հյուսիսային Կովկաս (Նովինոմինսկ), կունենա իր բրդալվացման ֆաբրիկան և գորգագործական ֆաբրիկայի հետ այստեղ կստեղծվի տեքստիլի մի յուրահատուկ կոմպլեքս՝ հետագա ընդլայնման մեծ հնարավորություններով։ Հասկանալի է, որ սխալ կլինի աչքաթող անել Աղստևի հովտում ստեղծված (և ընդլայնվող) արդյունաբերական հանգույցը և հովիտը տնտեսական տեսակետից միավորել Հրազդան-Սևան հանգույցներին։



Այնուհետև Լ. Վալեսյանը գրում է, որ «Բարձրալեռնային գոտում (ծովի մակերևույթից 2.500մ. բարձր) լեռնաշղթաների մերձկատարային ընդարձակ տարածությունները ամբողջովին յուրացված չեն կամ օգտագործվում են տարվա մի քանի ամիսներին միայն։ Դրանք... իրենցից ներկայացնում են յուրահատուկ տնտեսական «սպիտակ բծեր»։ Սահմանազատելով բնակչության արտադրական գործունեության գլխավոր կենտրոնները՝ հովտային շրջանները, կանխորոշելով (?) ճանապարհային ցանցի հիմնական կոնտուրները, այդ «սպիտակ բծերն էլ հենց մեծ մասամբ հանդիսանում են տնտեսական շրջանների սահմանները»։ Ինչպես նկատում ենք, հեղինակը 2.500 մետրից բարձր գոտին համարում է «սպիտակ բիծ», որն, իբր, ամբողջովին չի յուրացված կամ օգտագործվում է տարվա մի քանի ամիսներին միայն։ Նա մոռանում է, սակայն, որ արոտավայրերում, հիմնականում՝ հենց այդ գոտում էլ տարվա մի քանի ամիսներին ստացվում է «ոչխարաբուծական մթերքների մինչև 80, խոշոր եղջերավոր անասունների մթերքների՝ 60—65, կովերի տարեկան կաթի՝ 60—70 տոկոսը...։ Ընդ որում... մթերքներն ստացվում են ամենացածր ինքնարժեքով և բարձր որակով» (Հ. Ա. Բունիաթյան, Հ. Գ. Թումանյան և ուրիշներ — «Անասնաբուծության կազմակերպման հիմնական հարցերը», Երևան, 1959 թ., էջ 246)։ Մի՞թե դա «սպիտակ բծերի» շրջան է և հետո՝ ինչպե՞ս կարելի է «սպիտակ բծերը» համարել տնտեսական շրջանների սահմաններ։

Այսպիսով, կարծում ենք բերած օրինակները բավարար համոզչությամբ ցույց են տալիս, որ քննարկվող սխեման գիտական, առավել ևս պրակտիկ կիրառության առումով դժվար կարելի է ընդունել մեր ռեսպուբլիկայի համար։

Մեր կարծիքով, Հայկական ՍՍՌ-ն տնտեսական նման կոմպլեքսային շրջանների բաժանելը, առհասարակ, աննպատակ է։ Մեր ռեսպուբլիկայի պայմաններում գիտա-պրակտիկ նշանակություն կարող է ունենալ ճյուղային շրջանացումը, որը ենթադրում է առանձին կոմպլեքսային հանգույցների գոյացում։

Սովետական Միության աշխատանքի բաժանման ընդհանուր սիստեմում Հայկական ՍՍՌ-ն ունի իր տնտեսական ուրույն խնդիրը, որը ելնում է տեղի բնական ու աշխատանքային ռեսուրսներն առավելագույն շահավետությամբ օգտագործելու, նպատակադրումից և կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության վեհ սկզբունքներից։ Ըստ այդ խնդրի մեր ռեսպուբլիկայում զարգացվում է, բացի լեռնա-հանքային և շինանյութերի արդյունաբերությունից, բարդ և ճշգրիտ մեքենաշինությունը, սարքաշինությունը և արդյունաբերության նմանօրինակ այն ճյուղերը, որոնք պահանջում են քիչ մետաղ (նաև քիչ էներգիա) և որակյալ ու շատ աշխատանք։ Հարկ է նշել, որ, հատկապես, վերջին տարիներս զգալի աշխատանք է տարվել ռեսպուբլիկայում արդյունաբերության վերոհիշյալ ճյուղերի զարգացման ուղղությամբ։ Չնայած դրան, տակավին չլուծված է մնում աշխատանքային ռեսուրսները լիովին օգտագործելու հարցը մեր ռեսպուբլիկայում. մի հանգամանք, որը հետագա մեծ ջանքեր է պահանջում պետական պլանավորող օրգաններից ու այդ հարցով զբաղվող մասնագետներից։

Աշխատանքային ռեսուրսները լրիվ և արդյունավետ օգտագործելու և դրա հետ միասին քաղաքի ու գյուղի տարբերությունը վերացնելու լավագույն միջոցներից մեկը հանդիսանում է արդյունաբերական օբյեկտների նպատակահարմար տեղաբաշխումը ռեսպուբլիկայում։ Այդ նշանակում է՝ անհրաժեշտ է զբաղվել ոչ թե ընդհանուր տնտեսական շրջանացման, այլև արդյունաբերական օբյեկտները ռեսպուբլիկայում խելացի, նպատակահարմար տեղաբաշխելու հարցերով, որոնք մեզ մոտ երբեմն, ցավոք, ըստ ամենայնի հաշվի չեն առնվում։

Արդյունաբերության տեղաբաշխումը թողնելով դրանով զբաղվողներին, ցանկանում ենք մեր նկատառումները հայտնել Հայկական ՍՍՌ-ում գյուղատնտեսության զարգացման ուղղության, մասնագիտացման ու տեղաբաշխման (շրջանացման) խնդիրների մասին։

Հայկական ՍՍՌ-ն ունի փոքր տերիտորիա և համեմատաբար խիտ բնակչություն։ Նման պայմաններում ոչ միայն ավելորդ է խոսել գյուղատնտեսական բոլոր մթերքներով ինքնաբավարարման մասին, այլև վնասակար՝ բնական ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու առումով։ Գյուղատնտեսության բնագավառում ինքնաբավարարման (ավտարկիայի) քաղաքականությունը մեզ մոտ շատ ուժեղ զգացվեց հատկապես հետպատերազմյան առաջին տասնամյակում, երբ որոշում կայացվեց ռեսպուբլիկաները սեփական հացով բավարարելու մասին։ Դա ո՛չ միայն վնասակար էր ուղղակի հասցրած վնասի առումով, այլև ծանր հետևանքներ ունեցավ։ Հսկայական տարածության արոտավայրեր, որոնք մեծ մասամբ տեղաբաշխված էին լեռնալանջերին, դրվելով հացահատիկի մշակության տակ, հողմնահարության ենթարկվելով, երկար ժամանակով դուրս եկան օգտագործումից, իսկ դրանց տեղում մշակված ցանքերից չնչին բերք ստացվեց։ Հետագա տարիներին հիմնականում վերացվեցին այդ սխալները։ ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան (1965) պլենումի նյութերում որոշակիորեն դրված է գյու-

ծությունը, կորիզավոր պտղաբուծությունը և բանջարա-բոստանային կուլտուրաները (պոմիդոր, ձմերուկ, սոխ, բադրիջան և այլն)։ Տվյալ գոտու մեջ կարող են մտնել Արարատյան դաշտը՝ իրեն հարող նախալեռնային տարածություններով, որտեղ հնարավոր է զբաղվել տնտեսության վերոհիշյալ ճյուղերով (կամ դրանցից մի քանիսով) Մեղրու, Ազիզբեկովի, Եղեգնաձորի, Նոյեմբերյանի շրջանների ցածրադիր հովիտները։ Արարատյան դաշտում քաղաքային բնակչության՝ մեծ չափերով ավելանալու շնորհիվ թարմ կաթնամթերքների նկատմամբ օրավուր աճող պահանջարկը բավարարելու համար հարկ կլինի բամբակի ցանքատարածություններն աստիճանաբար վերացնելու հաշվին ընդարձակել կերային կուլտուրաների ցանքերը՝ մեծապես զարգացնելով ինտենսիվ կաթնաանասնաբուծությունը։ Այդ խնդիրը պետք է լուծել անհապաղ, որպեսզի հնարավոր լինի քաղաքային բնակչության կաթնամթերքի պահանջները բավարարել տեղում, իսկ լեռնային շրջաններում անասնաբուծությանը տալ մսա-կաթնատու ուղղություն՝ արտադրվող կաթը վերամշակելով անհրաժեշտ կաթնամթերքների (պանիր, կարագ, յուղ, խտացրած կաթ և այլն)։

2. Միջին գոտի, որը պետք է ընդգրկի ռեսպուբլիկայի լեռնային միջին բարձրության տարածությունները, որտեղ որպես տնտեսության գլխավոր ճյուղեր կարող են հանդես գալ մսակաթնաբրդատու անասնաբուծությունը, ծխախոտագործությունը, հնդավոր պտղաբուծությունը, կերային կուլտուրաների մշակությունը և հացահատիկի մշակությունը (վերջինս նույնպես հիմնականում պետք է ծառայի անասնաբուծության նպատակներին)։ Ընդ որում տնտեսության վերոհիշյալ գլխավոր ճյուղերն այս գոտու բոլոր շրջաններում կարող են միասին հանդես չգալ, ընդհակառակը՝ դրանցից մեկը կամ երկուսը այս կամ այն շրջանում կարող է դոմինանտ դեր խաղալ։

Միջին գոտու առանձին հատվածներում, ուր արդյունաբերության օջախների ստեղծման շնորհիվ մեծապես կավելանա քաղաքային բնակչությունը և զարկ կտրվի նոր առողջարանների ստեղծմանն ու եղածների ընդլայնմանը, գյուղատնտեսության առաջատար ճյուղ պետք է դառնա ինտենսիվ կաթնա-մսատու անասնաբուծությունը՝ իրեն ենթարկելով տնտեսության մյուս ճյուղերը։ Առաջիկայում նման շրջաններ պետք է դառնան Սևանի ավազանը, Ազիզբեկովի շրջանի միջին գոտու տերիտորիաները, Ախուրյանի, Մարալիկի շրջանները և այլն։

3. Վերին գոտին, որն ընդգրկում է բնական արոտավայրերն ու խոտհարքները, հանդիսանում է տնտեսության մոնոճյուղային տնտեսական շրջանը, ուր զարգանում է առավելապես արոտային անասնաբուծությունը։

Այս երեք գոտիների կոնկրետ սահմանները, որոնք բավական զիգզագների են ենթարկվում տերիտորիայի ձգվածության, դիրքադրման և այլ պատճառներով, կարելի է որոշել տեղում՝ ելնելով բնա-տնտեսական երկարամյա միջին տվյալներից և տաքսոնոմիական չափերից։ Այդ նպատակով անհրաժեշտ կլինի տարբեր մասնագետներից (գյուղատնտեսներ, աշխարհագրագետներ, հողագետներ, տնտեսագետներ) ստեղծել համապատասխան էքսպեդիցիաներ, որոնք իրենց ձեռքի տակ, ունենալով նախնական համաձայնեցված սխեմաներ՝ տեղում ուսումնասիրություններ կատարելու միջոցով կճշտեն դրանց սահմանները։ Քանի որ այդ գոտիների ուրվագծերը դրեթե ակնհայտ են, ապա դրանց սահմանների ճշտումն առանձնապես մեծ ջանքեր ու միջոցներ չի պահանջի, մանավանդ որ սահմանների մասնակի ճշտումը հնարավոր է շարունակել ապագայում՝ կուտակվող նոր տվյալների հիման վրա։

Պետք է ենթադրել, որ երեք գոտիներն անընդհատ տարածություններ չեն, ընդհակառակը, բնա-պատմական զանազան պատճառներով դրանք երբեմն ընդհատվում են՝ հանդես գալով որպես կղզիներ։ Կարող է ստորին գոտուն բնորոշ մի հատված (օջախ) հանդիպել միջին գոտում և ընդհակառակը։ Դա երբեք չպետք է տարակուսանք առաջացնի։ Նման դեպքում տվյալ օջախը (հատվածը) պետք է հաշվել բնատնտեսական համապատասխան պայմաններ ունեցող գոտու մեջ։

Գյուղատնտեսության տվյալ շրջանացումը նկատի չունի ռեսպուբլիկայի վարչա-տերիտորիալ բաժանումը, որի հետևանքով հաճախ նույն շրջանում կարող են հանդիպել երեք գոտիներին բնորոշ հատվածներ։ Առաջին հայացքից կարող է թվալ, որ դա կդժվարացնի շրջանի ղեկավար աշխատողների գործը։ Մինչդեռ ընդհակառակը՝ իրականում հնարավորություն է ստեղծվում շրջանի ղեկավարների համար շրջանը ճիշտ և լավ իմանալ, հետևաբար նաև խելացի ու կոնկրետ ղեկավարել։ Չէ՞ որ բնա-տնտեսական այդ գոտիները գոյություն ունեն օբյեկտիվորեն, անկախ մեր կամ շրջանի ղեկավարների կամքից։ Ուրեմն խելացի ղեկավարելու համար պետք է տեսնել գոտիների օբյեկտիվ գոյությունը և մտածել դրանք շահավետությամբ օգտագործելու մասին։

Գ. ԱՎԱԳՅԱՆ
Աշխարհագրական գիտությունների թեկնածու, դոցենտ

# ՀԱՐՑԻՆ ԱՅԴՊԵՍ ՉՊԵՏՔ Է ՄՈՏԵՆԱԼ

Կոլտնտեսությունների և սովխոզների ստեղծման օրվանից գյուղատնտեսության մեջ նյութական բարիքներ արտադրող մարդկանց և արտադրական կոլեկտիվների նյութական շահագրգռվածության բարձրացման ձևերի կատարելագործման խնդիրը միշտ էլ եղել է մեր պարտիայի ուշադրության կենտրոնում, որովհետև այն ոչ թե սոսկ հարց է, այլ նյութական բարիքների արտադրությունը գիտականորեն կազմակերպելու հարցերի հարցը, արտադրության կազմակերպման խնդիրների մի բարդ հանգույց։

Սակայն, մեր կարծիքով, ինչպես աշխատանքի կազմակերպման և էկոնոմիկայի ինստիտուտի որոշ ընկերներ, այնպես էլ այդ բնագավառում զբաղվող գիտական շատ աշխատողներ դեռ կոնկրետ պատկերացում չունեն այդ շատ կարևոր հարցի մասին։ Մարդկանց նյութական շահագրգռվածության բարձրացմանը վերաբերող ընդհանուր բնույթի հոդվածներից, զեկուցումներից ու զրույցներից նրանք դեռևս չեն անցնում մեր կյանքի փորձի ընդհանրացմանը, արտադրությունը գիտականորեն կազմակերպելու ձևերի որոշմանը և այլն։

Ավելին, մամուլում տպագրված առանձին հոդվածներում թույլ են տրվել կոպիտ աղավաղումներ, խառնաշփոթություններ, որոնց կողքով չի կարելի անտարբերությամբ անցնել։ Մենք ցանկանում ենք այստեղ մեր նկատառումները հայտնել «Լենինյան ուղիով» ամսագրի 1965 թվականի № 8-ում տպագրված «Գյուղատնտեսական արտադրության մեջ նյութական շահագրգռվածության բարձրացման հարցի շուրջ» պատմական գիտությունների թեկնածու ընկ. Վ. Բաղդագուլյանի հոդվածում առաջ քաշված հարցերի կապակցությամբ։

Մեր կարծիքով հոդվածագիրը միանգամայն ճիշտ ու տեղին քննադատելով գյուղատնտեսական արտադրության կազմակերպման և մարդկանց ու կոլեկտիվների անձնական շահագրգռվածության բարձրացման հարցերի մասին մամուլում հրապարակված ոչ ճիշտ դրույթները, ինքը ևս թույլ է տալիս լուրջ սխալներ, որոնց հետ համաձայնել չի կարելի։

Նա գտնում է, որ զարգացման ներկա էտապը պահանջում է կոլտնտեսություններում ու սովխոզներում կազմակերպել փոքր արտադրական բրիգադներ և վարձատրությունը կազմակերպել այդ բրիգադների ներսում՝ ըստ արտադրանքի։ «Արտադրական փոքր բրիգադների (մինչև 25 հոգուց բաղկացած) առավելությունը խոշորների նկատմամբ այն է, որ այստեղ համեմատաբար պարզորոշ է հանդես գալիս բրիգադայի յուրաքանչյուր անդամի աշխատանքի արդյունքի կախվածությունը քանակական ու որակական ցուցանիշներից»—գրում է նա։

Համաձայնել այս մտքի հետ, նշանակում է՝ տրոհել այժմ գործող բրիգադները, դրանց ներսում կազմակերպել նոր բրիգադներ, ուռճացնել կոլտնտեսությունների վարչակառավարչական ապարատը, ավելացնել նյութական բարիքներ չարտադրող մարդկանց թիվը։ Այդ նշանակում է էֆեկտիվ չօգտագործել և փոշիացնել կոլտնտեսություններում գտնվող տեխնիկան և արտադրության մյուս հնարավորությունները։

Համոզվելու համար բերենք այսպիսի օրինակ. «Լենինյան ուղիով» կոլտնտեսությունը բաղկացած է մոտ 500 ընտանիքից, ունի մոտ 1700 աշխատող ձեռք, որոնք ընդգրկված են դաշտավարական 5, այգեգործական, ծխախոտագործական բրիգադներում և անասնապահական ֆերմաներում։ Եթե առանձնացնենք անասնապահությունում զբաղված մարդկանց, ապա այս տնտեսությունում նորից պետք է կազմակերպվի 45—50 բրիգադ։ Պարզ է, որ բրիգադն պետք է ունենա իր բրիգադավարը, որը պետք է վարձատրվի, իսկ այդ միանգամայն ավելորդություն է։ Իր ոչ ճիշտ դրույթը հիմնավորելու համար նա բերում է այն միտքը, որ կոլտնտեսային արտադրության մեջ յուրաքանչյուր աշխատողի վարձատրության չափը պայմանավորվում է ոչ միայն սեփական աշխատանքի ցուցանիշներով, այլև ամբողջ կոլեկտիվի աշխատանքի արդյունքով և իբր թե դա է խանգարում մարդկանց անձնական շահագրգռվածության բարձրացմանը և դրա համար անհրաժեշտ է կազմակերպել արտադրական փոքր բրիգադներ։ Բայց մի՞թե

փոքր բրիգադներում այլ կերպ կարող է լինել։ Փոքր բրիգադայում նույնպես աշխատողի վարձատրության չափը պետք է պայմանավորված լինի ամբողջ կոլեկտիվի աշխատանքի արդյունքով և ոչ թե սեփական աշխատանքի ցուցանիշներով։

Ըստ նրա, որքան մեծ է կոլեկտիվը, որի շրջանակներում կատարվում է հանրային արդյունքից անհատական աշխատանքի վարձատրությունը, այնքան շատ են տատանումներն այդ աշխատանքի և նրա դիմաց տրվելիք վարձատրության միջև, հետևապես, նույնքան դժվար է այդ երկուսի համապատասխանեցումը։ Մինչդեռ,— գտնում է նա,— փոքր բրիգադներում այդպիսի համապատասխանությունն ստեղծվում է ինքնին, այն բանի շնորհիվ, որ փոքր բրիգադայում աշխատանքի ընդհանրական արդյունքը գոյանում է նեղ շրջանակներում և բաժանվում համեմատաբար քիչ աշխատողների միջև։ Այս նշանակում է, որ Սիսիանի շրջանի Բռնակոթ գյուղում պետք է ստեղծել 30—35 փոքր բրիգադա, թույլ տալ, որ ամեն մի բրիգադայում ստեղծվի ընդհանրական արդյունք և այդ նեղ շրջանակներում գոյացած արդյունքները բաժանվեն համեմատաբար քիչ աշխատողների, այսինքն՝ 25 աշխատողների միջև։ Շատ ցավալի է, որ այս առաջարկությունն անում է գիտնականը։ Մեր ասածն ապացուցենք պրակտիկ կյանքի մի քանի օրինակներով։ Գորիսի շրջանի Առաջաձոր, Կորթկալախ, Աղբուլաղ, Մալղաշ, Տանձատափ, Արավուս, Զորաշեն գյուղերի կոլտնտեսությունները տասնյակ տարիներ շարունակ համարվում են ետ մնացող տնտեսություններ։ Այդ գյուղերից յուրաքանչյուրում աշխատող ձեռքերը չեն անցնում 17—40 հոգուց. այս իսկ և իսկ ապահովում է ընկ. Բաղդագուլյանի պահանջը փոքր բրիգադներ կազմակերպելու մասին։ Սակայն նշված տնտեսություններում հասկանալի պատճառով չի հաջողվում շոշափելիորեն ավելացնել ոչ ընդհանրական արդյունքը, ոչ էլ անհատական աշխատանքի հասույթը։

Կամ, Ղափանի շրջանի 17 տնտեսություններում գործում են միայն մեկական փոքր բրիգադներ՝ 25—30 հոգուց բաղկացած, սակայն այս փոքր բրիգադներում էլ բարձր արտադրանք, անհատական աշխատանքի վարձատրության ցանկալի արդյունքներ չեն ստացվում։ Եվ ընդհակառակը, խոշոր կոլեկտիվներում և նրանց խոշոր բրիգադներում բարձր է և հանրային արդյունքը, և հանրային արդյունքից անհատական աշխատանքի վարձատրությունը։

Կարելի է շատ օրինակներ բերել, բայց բավարարվենք այսքանով։ Ուրեմն փոքր բրիգադաներն աշխատողի նյութական շահագրգռվածության բարձրացման ազդակ հանդիսանալ չեն կարող։ Ավելին, մեծ բրիգադների տրոհումը փոքրերի կփոշիացնի արտադրական միջոցները, կիջեցնի հանրային եկամուտները, անհատական վարձատրության չափը և անձնական շահագրգռվածության աստիճանը։

Ինչպես ցույց է տվել պրակտիկան, անձնական նյութական շահագրգռվածության սկզբունքը ենթադրում է ամենից առաջ աշխատանքի ճիշտ կազմակերպում, ինչպես նաև (կարևոր բազմապիսի այլ հանգամանքների հետ միասին), աշխատանքի ճիշտ վարձատրություն, այսինքն՝ աշխատանքի քանակական ու որակական ցուցանիշների բաշխման սոցիալիզմի տնտեսական օրենքի հետևողական կիրառում։ Բարիքներ արտադրող մարդկանց նյութական շահագրգռվածությունը միշտ բարձր կլինի և ոչ մի տրտունջ այդ ուղղությամբ չի լինի, եթե կոլտնտեսության ստացած ամբողջ եկամուտների 60—70 տոկոսը բաժանվի նրանց աշխատանքի դիմաց։ Ահա թե որն է նյութական անձնական շահագրգռվածության բարձրացման իսկական ճանապարհը։

Այնուհետև, ոչ ոք չի կարող ժխտել, որ կոլտնտեսություններում ու սովխոզներում գոյություն ունեցող բրիգադային սիստեմը իրոք իր քննությունն է բռնել որպես աշխատանքի կազմակերպման լավագույն ձև։ Այն լավագույն ձև է նաև անձնական շահագրգռվածության բարձրացման տեսակետից, եթե բրիգադայում լավ է կազմակերպված աշխատանքը, բարձր է աշխատանքային կարգապահությունը, ամեն մի կոլտնտեսական գիտե իր տեղը արտադրական տեղամասում, պատասխանատվություն է զգում իր առաջադրանքների քանակական ու որակական ցուցանիշների համար, եթե բրիգադայի ներսում ճիշտ է իրականացվում անհատական և մանր խմբային գործավարձային սիստեմը։ Եթե ճիշտ է իրականացվում լրացուցիչ վարձատրության սիստեմը, ամեն օր չափվում և ընդունվում է կոլտնտեսականի կատարած աշխատանքը և գրանցվում աշխօրը, ապա բոլորովին հարկ չկա այդպիսի բրիգադները նորից տրոհել փոքր բրիգադների և ուռճացնել տնտեսության վարչակառավարչական ապարատը, փոշիացնել նրա արտադրական միջոցները։

Սակայն, բանը նրանում է, որ վերջին տարիներս նկատելիորեն անուշադրության է մատնվել բրիգադներում աշխատանքի կազմակերպումը։ Բրիգադայի անդամներն աշխատում են միասին, իսկ բրիգադայի յուրաքանչյուր կոլտնտեսական իր բաժինն ստանում է բրիգադայի օրվա ընդհանուր վաստակից, որը, կարելի է ասել, ուղղակի կործանիչ հարված է հասցնում արտադրությանը։ Եվ արդյունքը լինում է այն, որ երկու և ավելի արտադրական նորմայի կատարման կարողություն ունեցող կոլտնտեսականը չի ծավալում իր ունակությունները, որովհետև նա վարձատրվելու է հազիվ մեկ արտադրական նորմայի կատարման կարողություն ունեցող կոլտնտեսականի չափ։

Քիչ կարևորություն չունի նաև բրիգադավարների ընտրության հարցը։ Բրիգադայի աշխատանքի բովանդակությունը, այն լինի մեծ թե փոքր, ամենից առաջ կախված է նրանից, թե կազմակերպական և գործիմացության տեսակետից ինչպիսի կարողություն ունի տվյալ բրիգադայի գլուխ կանգնած մարդը։ Բայց ցավով պետք է նշել, որ վերջին տարիներս համարյա ուշադրություն չի նվիրվում այդ հարցին։ 1963—64 թվականների տվյալներով Սիսիանի, Գորիսի և Ղափանի շրջաններում մոտ 150 բրիգադավարներից միայն 45-ն ունեին միջնակարգ մասնագիտական կրթություն, մինչդեռ այդ երեք շրջաններում գյուղատնտեսական մասնագիտական կրթություն ունեցող հարյուրավոր երիտասարդ մասնագետներ զբաղված էին իրենց մասնագիտության հետ ոչ մի առնչություն չունեցող աշխատանքներով։ Այսպիսին է դրությունը նաև այժմ։ Մեր կարծիքով հանրային տնտեսության զարգացման այժմյան էտապը պահանջում է, որ բրիգադավարը լինի առնվազն կոլտնտեսության նախագահի, կամ սովխոզի դիրեկտորի չափ կազմակերպչական աշխատանքի ունակության տեր մարդ, ազատված լինի բոլոր հոգսերից, առաջին հերթին՝ ֆիզիկական աշխատանքից և միայն զբաղվի բրիգադայի գործերի կազմակերպմամբ։

Որպես նյութական շահագրգռվածության բարձրացման միջոց ընկ. Բաղդագուլյանը քննարկում է նաև մի շարք այլ հարցեր։ Դրանցից առաջինը կոլտնտեսային արտադրության արդյունքի իրացումն է։ Կասկած չկա, որ ապրանքա-դրամային հարաբերությունների գոյության պայմաններում եկամտի գոյացման մեջ իր պատկառելի տեղն ունի նաև հանրային արտադրության արդյունքի իրացումը։

Նա գտնում է, որ արտադրության և իրացման ամենամեծ թերությունը՝ դա արտադրության և նրա արդյունքի իրացման արհեստական անջրպետն է, այն, որ կոլտնտեսությունները տնօրինելով արտադրամիջոցներն ու լինելով արտադրության կրողները, չեն տնօրինում նրա արդյունքը։ «Մինչդեռ նրանք պետք է հանդիսանան իրենց արտադրանքի լիիրավ տնօրենը»։ Նա դժգոհում է, որ կոլտնտեսություններն արտադրում են մթերքներ, իսկ դրանց գները սահմանում է պետությունը, այսինքն՝ «գնորդն ինքն է որոշում գնվելիք ապրանքի գինը»։ Եվ ըստ նրա այս հանգամանքն էլ թուլացնում է կոլտնտեսություններում նյութական շահագրգռվածության սկզբունքը։ Բանը հասնում է այնտեղ, որ հոդվածագիրը դժգոհություն է հայտնում գյուղատնտեսական մթերքների գնման գներից։ Մեզ թվում է, որ այս հարցում նրա հետ համաձայնել չի կարելի։ Հայտնի է, որ ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումը արմատական միջոցառումներ մշակեց, հատկապես, գյուղատնտեսական մթերքների գնման գների գծով, որի շնորհիվ գրեթե կրկնապատկվեցին, իսկ որոշ տնտեսություններում եռապատկվեցին հանրային տնտեսությունների դրամական եկամուտները, դրա հետևանքով նաև՝ կոլտնտեսականների հասույթները։ Օրինակ. Գորիսի շրջանի Բարձրավան գյուղի կոլտնտեսությունն իր դրամական եկամտից տարիներ շարունակ յուրաքանչյուր աշխօրին տվել է 30 կոպեկից ոչ ավելի, իսկ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումի որոշմամբ սահմանված գնման գների նոր կարգի շնորհիվ ամեն մի աշխօր արդեն ավանսավորել է 2 ռուբլի։ Բարձրավանի կոլտնտեսության օրինակը եզակի չէ։

«Լենինյան ուղիով» կոլտնտեսությունում աշխօրի դրամական արժեքը մոտավոր հաշվարկներով, հավանաբար, կգերազանցի 3 ռուբլուց, մինչդեռ անցած տարիներում չի գերազանցել 1 ռ. 60 կոպեկից։ Այժմ մթերքների վաճառքից կոլտնտեսությունների ստացած դրամական միջոցները դարձել են կոլտնտեսականների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման անվիճելի ազդակ։ Ուրեմն, գյուղատնտեսական մթերքների պետական գնման այժմյան գները բնավ չեն կարող բացասաբար անդրադառնալ մարդկանց նյութական շահագրգռվածության վրա, ինչպես կարծում է հեղինակը, եթե չհաշվենք նաև այն հսկայական միլիոններ կազմող վարկերն ու պարտքերը, որ պետությունը զիջեց կոլտնտեսություններին, որը նույնպես որոշակիորեն նպաստում է մարդկանց նյութական շահագրգռվածության բարձրացմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշմամբ այժմ գյուղատնտեսական մթերքների պետական գնման գները որոշված են ըստ երկրի առանձին գոտիների։ Այստեղ, իհարկե, նկատի են առնված դրանց բնակլիմայական պայմաններն ու արտադրական առանձնահատկությունները. այս հանգամանքը, անկասկած, մեծ առավելություն ունի անցյալում գործող միասնական գների համեմատությամբ։ Սակայն հոդվածի հեղինակը դժգոհում է նաև դրանից։ Նա գտնում է, որ սխալ է գյուղատնտեսական մթերքների պետական գնման մեջ միասնական գների սահմանումը թեկուզ և մեկ գոտու տնտեսությունների համար, այդ համարում է ինչ-որ ապրանքափոխանակության օրենքների խախտում, տնտեսությունների արտադրապայմանների ու ապրանքային արտադրանքի ինքնարժեքի տարբերության անտեսում և այլն։

Սակայն ո՞ւմ հայտնի չէ, որ ոչ միայն միևնույն գոտու բոլոր տնտեսությունները, այլև միևնույն շրջանը, միևնույն կոլտնտեսության բրիգադները նույնանման բնակլիմայական ու արտադրական պայմաններ չունեն: Այստեղ նա պահանջում է անհնարինը: Ըստ հոդվածագրի պետք է չբավարարվել անգամ բնակլիմայական միանման պայմանները նկատի ունենալով, այլև պետք է նկատի ունենալ նաև նրանց արտադրապայմանները, որովհետև իրոք բնակլիմայական պայմանների նույնությունը դեռևս արտադրապայմանների նույնություն չէ. այս հանգամանքն էլ պայմանավորում է տարբեր տնտեսությունների արտադրանքի ինքնարժեքի անխուսափելի տարբերությունը, որը գնորոշման ժամանակ հաշվի չառնել չենք կարող: Իհարկե, շատ ցանկալի կլինի, որ գյուղատնտեսական մթերքների գնման գների որոշման ժամանակ հաշվի առնվեն նաև այս գործոնները: Բայց մի՞թե այդ չի նշանակում, որ ինչքան կոլտնտեսություններ ու սովխոզներ կան, այնքան էլ գներ պետք է սահմանվեն:

Այնուհետև, հոդվածի հեղինակը գտնում է, որ պետության կողմից գնվելիք գյուղատնտեսական մթերքների պլանավորման գործող սիստեմը (վերևից), այսինքն՝ այդ մթերքների քանակի և տեսակների սահմանումը ըստ կոլտնտեսությունների ու սովխոզների, քիչ է նպաստում նյութական շահագրգռվածության բարձրացմանը, և առաջարկում է՝ գյուղատնտեսական մթերքների պետգնումները սահմանել ոչ թե բնամթերային ձևով, այլ դրամական արտահայտությամբ: Այսինքն՝ յուրաքանչյուր կոլտնտեսությունից չպահանջել մթերքներն ըստ տեսակների ու քանակի, գտնելով, որ այդ ձևը հանրային տնտեսություններին զրկում է ինքնուրույնությունից և բացասաբար է անդրադառնում նյութական շահագրգռվածության բարձրացման վրա: Մեզ թվում է, որ կոլտնտեսություններում ու սովխոզներում գյուղատնտեսական մթերքների գնումն ըստ քանակի և տեսակների չպլանավորելը նշանակում է երկրում ստեղծել անարխիկ վիճակ: Եթե մի պահ վերանանք մթերքների կոնկրետ առաջադրանքները իջեցնելուց և յուրաքանչյուր կոլտնտեսությունից պահանջենք, որ նա վաճառի 100—50 կամ 25 հազար ռուբլու գյուղատնտեսական մթերքներ, իսկ մթերքների տեսակի հանձնումը թողնենք կոլտնտեսության ցանկությանը, կարո՞ղ է արդյոք պետությունը հաշվառում պահպանել, թե յուրաքանչյուր մթերքից երկիրը ինչ ստանալիք ունի, չնայած հայտնի է երկրի պահանջը: Կոլտնտեսություններն արդյոք չե՞ն դադարի բազմաճյուղ տնտեսություններ լինելուց: Օրինակ, ծխախոտը գրեթե բոլոր տնտեսությունների համար էլ հանդիսանում է ամենաեկամտաբեր ճյուղը: Բայց փորձեք նրա հումքը չպլանավորել. ոչ մի տնտեսություն ծխախոտ չի ցանի:

Կամ, Սիսիանի և Գորիսի շրջաններից յուրաքանչյուրում կա առնվազն 20—25 հազար մեղվաընտանիքի պահպանման կերի բազա: Ինչպես հայտնի է, մեղվաբուծությունը հանրային տնտեսության ամենաեկամտաբեր ճյուղերից մեկն է, որտեղ մեկ միավոր արտադրության վրա կատարած չնչին ծախսումներով մեծ եկամուտ է ստացվում: Բայց տասնյակ տարիներ շարունակ այդ եկամտաբեր ճյուղի զարգացումը մնում է միայն ցանկություն, որովհետև պետությունը ոչ մի տարի մեղրի գնումը չի պլանավորում:

Անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման տեսակետից ուշագրավ է նաև կոլտնտեսային արտադրության մեջ զբաղված մարդկանց լրացուցիչ վարձատրության սիստեմը, որը արդարացրել է իրեն և նպաստել հանրային բարիքների արտադրության ավելացմանը:

Ո՞րն է այս կարևոր միջոցառման գործում եղած թերությունը: Այն, որ անընդհատ չեն կատարելագործվում լրացուցիչ վարձատրման ձևերը, որ շատ տնտեսությունների ղեկավարներ, ուղղակի արգելակում են լրացուցիչ վարձատրության կիրառումը:

Սակայն ինչ-ինչ պատճառներով հոդվածագիրը պահանջում է վերացնել լրացուցիչ վարձատրության գոյություն ունեցող կարգը, դրա համար վկայակոչելով «Լենինյան ուղիով» կոլտնտեսությանը, որ իբր թե նրա կոլտնտեսականների ընդհանուր ժողովը, տնտեսության ետ մնացող ճյուղերի աշխատողների պահանջով, որոշել է վերացնել լրացուցիչ վարձատրության սիստեմը այն դեպքում, երբ այդ կոլտնտեսությունը միակ տնտեսությունն է, որ անթերի է կիրառում լրացուցիչ վարձատրությունը: Հոդվածագիրը գտնում է, որ իբր թե այդ ձևը ստվերոտ կողմեր ունի, այսինքն՝ քանի որ լրացուցիչ վարձատրությունը տրվում է գերպլանային արտադրանքի դիմաց, ուստի յուրաքանչյուր կոլտնտեսական, բրիգադավար, ֆերմայի վարիչ, կամ կոլտնտեսության նախագահ ձգտում է ցածր պլանները սահմանել, որը և ուղեկցվում է տնտեսության ռեզերվների ու հնարավորությունների քողարկմամբ: Բայց մի՞թե պլանավորումը չի ղեկավարվում: Մի՞թե տնտեսության ետ մնացող ճյուղերից չի կարելի պահանջել աշխատանքի այնպիսի կազմակերպում, որ հասնեն առաջավորներին, որպեսզի իրենք ևս ստանան լրացուցիչ վարձատրություն: Ցավալի է, երբ հեղինակը գտնում է, քանի որ տնտեսության ետ մնացող ճյուղերում հնարավոր չէ լրացուցիչ վարձատրություն ստանալ, պետք է վերացնել նաև առաջավոր ճյուղերում աշխատողների լրացուցիչ վարձատրությունը: Դրա հետ համաձայնել չի կարելի:

Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՀՈՒՄԱՆԻԶՄԻ ՊՐՈԲԼԵՄԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՄԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Հումանիզմի տեսական ուսումնասիրությունը պատկանում է առավել սակավ մշակված պրոբլեմների թվին, թեև առաջին իսկ հայացքից ակնհայտ է նրա ուսումնասիրության արդիականությունը: Մինչև վերջին ժամանակներս այդ պրոբլեմի լուսաբանումը սահմանափակվում էր մի քանի բրոշյուրներով և մի շարք հոդվածներով: «Мысль» հրատարակչության կողմից վերջերս լույս ընծայված Մ. Ի. Պետրոսյանի մենագրությունը[1] ոչ միայն լրացնում է մեր փիլիսոփայական գրականության մեջ նկատվող այդ բացը, այլև նշանակալի չափով հարստացնում է հումանիզմի պրոբլեմի մշակումը: Այն ծավալուն ու լուրջ ուսումնասիրություն է, որի լայն շրջանակները ներառնում են հումանիստական իդեալի ձևավորման պատմությունը և հումանիզմի գիտական հիմնավորումը, որ առաջին անգամ տվել են մարքսիզմի հիմնադիրները: Ավելին, նրանում տրված է հումանիզմի էության վերլուծությունը սոցիալ-քաղաքական առումով, հատուկ շեշտ դնելով բովանդակության փիլիսոփայական-էթիկական կողմի վրա: Գրքի տրամաբանական ավարտն է հանդիսանում կոմունիզմի կառուցմանը ամբողջապես նվիրված գլուխը, որի մեջ կոմունիզմը ներկայանում է որպես իսկական և ռեալ հումանիզմի հասարակություն:

Սոցիալական այն կապերի քննարկումը, որոնց մեջ է գտնվում անձը, այդ կապերի բնույթը որոշող հասարակական հարաբերությունների վերլուծությունը, ինչպես նաև անհատի շահերի, իրավունքների և ազատության վերլուծությունը պահանջում էին հումանիզմի հարցերի նկատմամբ սոցիոլոգիական մոտեցում, իսկ դա չէր կարող հումանիզմի մարքսիստական տեսությունը չառնչել ռևոլյուցիոն խնդիրների հետ:

Այդ, սակայն, չէր նշանակում, որ հիշյալ հարցերի լուծումը մարքսիզմի կողմից պետք է հանգեցվեր արտադրահարաբերությունների կամ էլ հասարակական որևէ այլ հարաբերության վերլուծության: «Խնդիրն այն է,— իրավացիորեն նշում է հեղինակը,— որ բացահայտվի նրանց (այդ հարաբերությունների) կապը մարդու պրոբլեմի հետ, հաշվի առնելով անհատի ներդաշնակ զարգացման համար գոյություն ունեցող սոցիալական պայմանները: Խոսքը կարող է լինել և պետք է լինի հասարակության ու անհատի միջև սոցիալական հարաբերությունների ու կապերի մասին, անհատի զարգացումը անմիջականորեն որոշող օբյեկտիվ օրինաչափությունների ու պայմանների մասին», որովհետև անհատի հարցում հումանիզմի սկզբունքների իրագործումը էականորեն կարևոր է (էջ 9): Այսպիսի հատուկ հարցադրումը շատ բանով կանխորոշել է ողջ ուսումնասիրության ամբողջականությունն ու նպատակասլացությունը:

Իհարկե, կարելի է վիճել հեղինակի հետ հումանիզմի սահմանման հարցի շուրջ, թեպետ գրքում միանգամայն ճիշտ կերպով հումանիզմը դիտվում է որպես խիստ լայն սոցիոլոգիական և սոցիալ-քաղաքական կատեգորիա, այլ ոչ միայն էթիկական: Այստեղ ըստ էության կրկնվում է հումանիզմի՝ որպես ուսմունքի այն սահմանումը, որն ինքը՝ հեղինակը տվել է դեռևս երկու տարի առաջ[2]: Ըստ այդ սահմանման հումանիզմի ուսմունքի համար բնորոշ է մարդուն որպես աշխարհի մեծագույն արժեք դիտելը, ինչպես նաև պրակտիկ գործունեությունը, որը նպատակ ունի պայմաններ ստեղծել այն բանի համար, որ ոչ միայն ապահովվի անհա-

---

[1] *М. И. Петросян*—Гуманизм. Опыт философско-этического и социологического исследования проблемы. «Мысль», М., 1964, 334 стр.

[2] *Տե՛ս* Сборник «Против современной буржуазной философии», изд-во Московского университета, 1963, 106 стр.

տի ազատությունը, այլև բավարարվեն նրա նյութական և հոգևոր պահանջմունքները (էջ 8):

Մեզ թվում է, որ եթե հումանիզմի գաղափարների առաջացման սոցիալական հիմքը պատմականորեն հանդիսացել է դասակարգերի պայքարը, ապա սահմանման մեջ պետք է մատնանշվի, որ հումանիզմը միևնույն ժամանակ հանդիսանում է մարդու ճնշման այս կամ այն ձևի դեմ հանդես եկող որոշակի սոցիալական խմբերի հայացքների և սկզբունքների սիստեմ:

Այսպես թե այնպես գրքի արդեն առաջին էջերն ընթերցողին տանում են հումանիզմի պրոբլեմի շուրջ մեր օրերում ծավալված գաղափարական պայքարի ոլորտը: Թեմայի արդիականության նման ընդգծումը գիրքը դարձնում է առավել հետաքրքիր, ուսումնասիրությունը զերծ է պահում սխեմատիզմից:

Գրքի գլուխներից մեկում ընդարձակ կերպով ցույց է տրված բուրժուական հետազոտողների այն պնդումների սնանկությունը, թե հումանիստական գաղափարների ծագումը պայմանավորված է կապիտալիզմի առաջացմամբ: Փաստական նյութով ցույց է տրված, որ հումանիստական իդեալները, համերաշխության և փոխօգնության սկզբունքները բնորոշ էին աշխատավոր մասսաների գաղափարախոսությանը շատ վաղուց, նախքան պատմական ասպարեզի վրա հանդես կգար բուրժուազիան որպես դասակարգ, նախքան վերածնության գործիչները կձևակերպեին իրենց սկզբունքները:

Ուրույն մոտեցում է հեղինակը ցուցաբերում նաև գիտական հումանիզմի տեսության ձևավորման պատմությանը: Նույնիսկ այստեղ, ուր, թվում է թե շարադրանքը պետք է գնար խիստ ժամանակագրական հունով, առավել ակնառու կերպով է ներկայանում հումանիստական սկզբունքների հիմնավորումը Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի կողմից, և որը միաժամանակ հնարավորություն է տալիս պսակազերծելու բուրժուական փիլիսոփայության կեղծ տեսությունները: Հումանիզմի տեսության այդ կողմը, որը շեշտել է հեղինակը, հանդիսանում է օտարման մարքսիստական կոնցեպցիան, հենց այն օտարման, որը ժամանակակից արևմտյան փիլիսոփաների մեկնաբանություններում իբր վկայում է առհասարակ մարդու գոյության համընդհանուր ողբերգականության (պանտրագիզմի), մասին: Մ. Պետրոսյանը օգտագործել է «1844 թ. տնտեսական-փիլիսոփայական ձեռագրերի» ուսումնասիրության գործում գիտության ձեռք բերած նվաճումները, որոնցում Կ. Մարքսը առավել լրիվ կերպով տվել է փիլիսոփայական սոցիոլոգիական վերլուծությունը՝ օտարումն ըմբռնելով որպես աշխատանքի օտարում, և կոմունիզմը մեկնաբանել է որպես այդ օտարումը վերացնելու արդյունք: Դրա հիման վրա Մարքսը կոմունիզմը նույնիսկ բնութագրում էր ռեալ հումանիզմ, քանի որ նրա վերլուծությունից պատմական ու տրամաբանական անհրաժեշտությամբ հետևում էր այն եզրակացությունը, որ միայն օտարումը հաղթահարելուց (մասնավոր սեփականության վերացումից) հետո է մարդը վերգտնում իր իրական էությունը, սոցիալական պայմաններից վերցնելով այն, ինչ նպաստում է իր համակողմանի ներդաշնակ զարգացմանը:

Մ. Պետրոսյանը ցույց է տալիս, թե ինչպես Մարքսը արդեն իր այդ վաղ աշխատության մեջ հրաժեշտ տալով կլասիկ փիլիսոփայության տրադիցիաներին, օտարման գաղափարն օգտագործում է մարդու պրոբլեմի վերլուծության համար, քննարկելով շահագործողական հասարակության մեջ բանվորի օտարման պրոցեսը: Բանվորը ստեղծում է հարստություն, արտադրում ապրանքներ, սակայն առուծախի վրա հիմնված աշխարհում «իրերի աշխարհի արժեքի աճին» զուգընթաց, աճում է նաև «մարդկային աշխարհի արժեզրկումը»: Աշխատանքը չի նպաստում բանվորի ֆիզիկական և հոգևոր ուժերի զարգացմանը: Ընդհակառակը, բանվորի գործունեությունը նրա ինքնագործունեությունը չէ, «այն պատկանում է ուրիշին, այն հանդիսանում է բանվորի ինքնության կորուստ»:

Նմանօրինակ պնդումները վերացական-տեսական բնույթ չէին կրում, և հեղինակը չափազանց հաջող կերպով ցույց է տալիս, որ Մարքսի ուսումնասիրությունը փաստորեն ապացուցում էր օտարման երևույթի պայմանավորվածությունը մարդկանց հասարակական գործունեությամբ՝ մասնավոր սեփականատիրական հարաբերությունների պայմաններում: Հեղինակը իրավացիորեն ընդգծում է, որ Մարքսի կողմից այն բանի ապացուցումը, որ օտարման, որպես սոցիալ-տնտեսական փաստի հիմքում ընկած են մարդկանց հասարակական հարաբերությունները, հանդիսանում է մարքսիզմի մեծ հիմնադրի անտարակուսելի պատմական վաստակը (էջ 75): Օտարման գաղափարը Մարքսը կիրառեց աշխատավոր անհատի ըմբռնման համար և այդ կատեգորիայի վերլուծության հիման վրա առաջ քաշեց հումանիզմի հիրավի կարևորագույն փիլիսոփայական պրոբլեմը՝ բանվորի էության և նրա գոյության պայմանների պրոբլեմը: Մ. Պետրոսյանը իրավացի է նաև գրանում: Եվ առհասարակ հումանիզմի տեսական ուսումնասիրության մեջ օտարման գաղափարի օգտագործումը Պետրոսյանի անառարկելի առավելությունն է. սովետական գրականության մեջ հարցի այսքան հանգամանալից լուսաբանմանը ոչ ոք չի ձեռնարկել: Սակայն Մ. Պետրոսյանը մի փոքր մեծացնում է «1844 թ. տնտեսական-փի-



լիսոփայական ձեռագրերի» նշանակությունը: Առաջին անգամ լրիվ հրատարակված լինելով 1956 թ.[1], այդ ձեռագրերը, Պետրոսյանի կարծիքով սխալ կերպով են բնութագրվել որպես ֆոյերբախականության կնիքը կրող գործ, քանի որ նրանում հին տերմինաբանության տակ թաքնված է նոր բովանդակություն, որը վկայում է, որ Մարքսը արդեն այստեղ հումանիզմը վերացական ոլորտից տեղափոխել է ռեալ հողի վրա (էջ 87): Մ. Պետրոսյանը գտնում է, որ «Ձեռագրերը» հասուն աշխատությունների հետ միասին պետք է տպագրվեին Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի երկերի ժողովածուի երկրորդ հրատարակության մեջ (էջ 91): Այնինչ պետք է նշել, որ այդ «Ձեռագրերի» առաջին ծավալուն ուսումնասիրությունը սովետական գրականության մեջ տրվել է միայն 1960 թվականին և նրա եզրակացությունները հիմնականում հաստատել են 1956 թվականին ժողովածուի ներածությունում տրված բնութագիրը: Պետրոսյանը ինքն էլ 87-րդ էջում խոստովանում է, որ ձեռագրերը գրվելու պահին Մարքսը դեռևս չէր մշակել պատմության հետևողական մատերիալիստական ըմբռնումը: Պարզ է, որ Մարքսի այդ վաղ աշխատությունը կարելի է գնահատել որպես Մարքսի հայացքների էվոլյուցիան արտացոլող փաստաթուղթ, էվոլյուցիա, որը 1844 թ. դեռ չէր ավարտվել: Մարդու պրոբլեմի վերաբերյալ հայացքների ձևավորման պրոցեսը դեռևս շարունակվում էր, և Էնգելսը իրավացի էր, երբ մատնացույց էր անում, որ Մարքսի կողմից անհատի պրոբլեմի մշակումը սկսվում է 1845 թվականից[2]: Մ. Պետրոսյանի ծավալուն ուսումնասիրության մեջ այդ հարցը զբաղեցնում է ավելի քան համեստ տեղ: Մեզ թվում է, սակայն, որ այդ փաստը որոշ չափով լինենով պայմանավորել է նաև այն հանգամանքը, որ գրքում չի տրվում հստակ պատասխան այն հարցին, թե ինչ տեղ է զբաղեցնում օտարման կատեգորիան Մարքսի հասուն շրջանի աշխատություններում: 94-րդ էջում Մ. Պետրոսյանը նշում է, որ օտարման կատեգորիան Մարքսի մոտ ավելի ուշ «ներկայանում է պատմական մատերիալիզմի տեսակետից ավելի բյուրեղացված և հստակ ձևով», չխոսելով արդեն օտարման բովանդակության և այն տեղի մասին, որ այդ կատեգորիան գրվում է մարքսիստական փիլիսոփայության հիմնական կատեգորիաների շարքում:

Մենագրության նշված բաժնի հետ անմիջականորեն կապված է ժամանակակից բուրժուական փիլիսոփայական ուղղությունների քննադատությունը, ուղղություններ, որոնք խեղաթյուրում են ինչպես Մարքսի վաղ շրջանի աշխատությունների իմաստը, այնպես էլ մարքսիստական համոզմունքների բովանդակությունը ամբողջությամբ վերցրած: Տեսության համար այնպիսի կարևոր հարցերի քննարկումը, ինչպիսիք են՝ մարդու էությունն ու գոյությունը, օտարման հաղթահարումը, ազատությունը և այլն, ուղեկցվում է ժամանակակից Արևմուտքի վերացական հումանիստական, որպես կանոն սխալ տեսությունների քննադատությամբ: Անկախ այն բանից, թե ում մասին է խոսքը՝ «Միջազգային հումանիստական և էթիկական միության»-ը հարող ասոցիացիաների հրատարակությունների, թե՞ բուրժուական փիլիսոփայության հիմնական ուղղությունների ներկայացուցիչների, հեղինակը քննադատության սուր ծայրը անշեղորեն ուղղում է նրանց փաստարկների ու եզրակացությունների դեմ, մերկացնում է արևմտյան գաղափարախոսների կեղծ մարդասիրական տեսությունները:

Պետք է նկատի ունենալ, որ մեր հրատարակություններում հաճախ նկատվում է ոչ մարքսիստական կոնցեպցիաների սոսկական մերժում, իսկ դա նվազեցնում է մարքսիստական քննադատության արդյունավետությունը: Հեղինակի մոտեցումն այլ է: Այսպես օրինակ, անդրադառնալով էկզիստենցիալիստ Սարտրի կողմից առաջ քաշված՝ մարդու բարոյական պատասխանատվության գաղափարին, հեղինակը արդարացիորեն այդ գաղափարի արմատական արատը տեսնում է այն բանում, որ էկզիստենցիալիստները մերժում են դետերմինիզմը, հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների առկայությունը: Եթե մարդու ազատությունը ոչնչով չի սահմանափակված և ոչ մի բանի հետ չի կապված, ապա մարդը իսկապես բարոյական պատասխանատվություն է կրում իր վարքի համար, այն բանի համար, ինչ ինքն է հանդիսանում:

Մարքսիզմը լրիվ կերպով մերժում է անհատի բացարձակ ազատությունը, քանի որ անկարելի է ապրել հասարակության մեջ և միևնույն ժամանակ ազատ լինել հասարակությունից: Սակայն, նկատի ունենալով, որ համարյա բոլոր բուրժուական փիլիսոփաները տարվում են բարոյականության ձևական վերլուծությամբ, պետք է ընդունել, որ «Սարտրի կողմից բարոյական պատասխանատվության հարցի առաջադրումն ինքնին ուշադրության է արժանի» (էջ 210): Անհատի էկզիստենցիալիստական կոնցեպցիան, որի վրա է հիմնված Է. Ռեմարկի, Վ. Սարոյանի և մյուսների հումանիզմը, թույլ չի տալիս այդ

[1] *К. Маркс,* «Экономическо-философские рукописи 1844 г.», см. К. Маркс и Ф. Энгельс «Из ранних произведений», Госполитиздат, 1956 г.

[2] *Տե՛ս К. Маркс* и *Ф. Энгельс,* Соч. т. 21, стр. 299.

նրանց կոլեկտիվիզմի, համերաշխության, ռասսայական խտրականության դեմ պայքարելու համար, բայց երբեք կոմունիստ չի եղել:

«Ես ոչ մի քաղաքական կուսակցության անդամ չեմ,—հայտարարում է նա,— ես ոչ հանրապետական եմ, ոչ դեմոկրատ, իմ համակրանքը միշտ եղել է պրեզիդենտ Ռուզվելտի կողմը»: Իր հասցեին ուղղված ողջ մեղադրանքները, դատավարության ժամանակ լսածները զզվեցրել են նրան, և նա որոշել է մեկուսանալ, նվիրվել միայն մաքուր գիտությանը, չի ուզում մահ արտադրել այն ժամանակ, երբ մարդկությունը թոթափել է պատերազմի լուծը: Նա բարոյապես արդարացնում է ատոմային ռումբի ստեղծումը, որովհետև վտանգ կար, որ գերմանացիները կարող էին ունենալ այն, իսկ ջրածնային ռումբը անհրաժեշտություն կլիներ միայն բազմամյա գերազանցության հնարավորության դեպքում: Մինչդեռ այն այլևս գաղտնիք չէ և ռուսներն արդեն շատ բաներով անցել են ԱՄՆ-ից. ամերիկյան ժողովուրդը միլիարդավոր դոլլարներ է զոհաբերել, իսկ արդյունքը եղել է ոչ թե ազատ աշխարհի համակրանքը, այլ ավելի է սրվել միջազգային լարվածությունը: Նա չի կամենում, որ իր հայրենիքի փրկությունը հիմնվի թշնամուն անհաքեկելու գաղափարի վրա. ատոմային ամբակոծությունը համարում է անբարոյական և գտնում, որ ոչ մի պատճառ չի կարող արդարացնել այն:

«Խիղճը» վերջանում է ռուսերեն հրատարակության վերջաբանով, ուր Պոտիկը գրում է, որ շատ է փոխվել ուժերի հարաբերությունը, աշխարհն այլևս չի հավատում ամերիկյան այն հերյուրանքին, թե Սովետական Միությունը սպառնում է աշխարհի խաղաղությանը, որովհետև «... հենց այն ժամանակ, երբ ամբողջ աշխարհը տեսավ, որ ռազմական գերազանցությունը թեքվում է Սովետական Միության կողմը, սովետական կառավարությունը վեհ մարդասիրական առաջարկություն արեց լրիվ և ընդհանուր զինաթափության մասին»: Վերջաբանում հեղինակը տալիս է նաև իր հերոսների հետագա ճակատագիրը, որից իմանում ենք, որ Օպենհեյմերը շարունակում է դասախոսել Պրինստոնում: Ապրելով ու գործելով այդ կարծրացած սրտերի աշխարհում, պատասխանատվության մեծագույն զգացումով տոգորված Օպենհեյմերը գրում է. «Ես վախենում եմ, որ մարդիկ բոլորովին չեն հասկանում այն վտանգը, որն իր հետ բերում է մեր դարը: Վախենում եմ, որ նրանք այդ բանը հասկանան չափազանց ուշ... Գլխավոր պրոբլեմը ոչ թե ատոմային էներգիան է, այլ մարդկանց սրտերը... Այլևս ոչ ոքի սարսափելի չի թվում, երբ ոչնչացվում են ամբողջ քաղաքներ»: Այս գրքի կարևոր արժանիքներից մեկը ամենամասսայական զենքն ստեղծող մարդու՝ Ռոբերտ Օպենհեյմերի այսահազանգն ու զգուշացումն է. «Մոլեռանդություն, գումարած ջրածնային ռումբ, գումարած անտարբերություն՝ մարդկությանը դեպի կործանում տանող ամենաուղիղ ճանապարհն է»:

Զգուշացե՛ք, մարդի՛կ, վառած մոմը ձեռքներիդ մի՛ք պտտվի վառոդով լցված տակառի շուրջը:

Մ. Ռուզեի «Ռոբերտ Օպենհեյմերը և ատոմային ռումբը» և Յա. Պոտիկի «Խիղճը» գրքերի թարգմանությունը շատ շնորհակալ և արժեքավոր գործ է, որն այնպես բարեխղճորեն կատարել է Բենգաս Ղուկասյանը: Չնայած լեզվական որոշ անհարթություններին ու թերություններին, ընթերցողը հաճախ մոռանում է, որ կարդացածը թարգմանություն է: Այն մեծ չափով կօգնի մեր պրոպագանդիստներին, ագիտատորներին և ընթերցող լայն հասարակությանը՝ ճիշտ պատկերացում կազմելու ԱՄՆ-ում դոլարի թագավորության դեմոկրատիայի, ազատության մասին, երկիր, ուր գիտությունը հարմարեցվում է ռեակցիոն դասակարգերի շահերին:

ԼՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 10457 Պատվեր 2897 Տիրաժ 10.800 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 31/XII 1965 թ.:

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*ՍՍՌՄ-ի ԿՈՒԼՏՈՒՐԱՆ, ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ, ԱՐՎԵՍՏԸ: Բառարան-տեղեկատու Մ., Քաղհրատ: 1965: 220 էջ:*

Պարունակում է ավելի քան 200 հոդված-տեղեկանք, բազմաթիվ թվական ու փաստական տվյալներ, որոնք լուսաբանում են սովետական կուլտուրայի բոլոր բնագավառների՝ լուսավորության ու կոմունիստական դաստիարակության, գիտության, գրականության ու արվեստի, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության, ֆիզկուլտուրայի և սպորտի վիճակն ու զարգացման ընթացքը:

*ԱՆՄՈՌԱՑ ԴԵՄՔԵՐ, ՆԵՐՍԻՍՅԱՆ ԴՊՐՈՑԻ ՍԱՆԵՐԸ. Ե., «Հայաստան» հրատ. 1965:*

Ներսիսյան դպրոցի 100-ամյա տարեդարձին նվիրված այս ժողովածուում զետեղված են նրա 102 սաների կյանքին և ակտիվ գործունեությանը ձոնված հուշագրեր: Այս անունների շարքում են՝ կուսակցական-պետական, գիտության տարբեր բնագավառների, ժողովրդական կրթության և առողջապահության, գրականության և արվեստի շատ գործիչներ, այդ թվում՝ Բժիշկյան Հայկ (Գայ), Երզընկյան Ա., Խանոյան Ս., Կոստանյան Հ., Խումարյան Ա., Մանդալյան Թ., Լալայան Ե., Համբարձումյան Հ., Ջրբաշյան Տ., Էլիբեկյան Հ., Հարությունյան Ի., Ալիխանյան Ի., Դեմիրճյան Դ. և ուրիշներ:

*ԼԵՆԻՆ Վ. Ի..—Գաղափարական աշխատանքի մասին: Մ., Քաղհրատ, 1965, 435 էջ:*

Յոթ բաժնից բաղկացած այս ժողովածուում զետեղված են Վ. Ի. Լենինի ճառերը, հոդվածները, քաղվածքներ, նամակներ և այլ նյութեր մեր պարտիայի գաղափարական աշխատանքի մասին:

*ՎԻԳՈԴՍԿԻ Վ. Ս.— Կարլ Մարքսի մի խոշոր հայտնագործության պատմությունը («ԿԱՊԻՏԱԼԻ» ստեղծման առթիվ) Մ., «Միտք», հրատ., 1965, 200 էջ:*

Հեղինակը Մարքսի, Էնգելսի երկերի և այլ գրականության հիման վրա շարադրում է Մարքսի տնտեսական ուսմունքի ձևավորման, «Կապիտալի» ստեղծման պատմական ժամանակաշրջանի պատմությունը:

*ՆՐԱՆՑ ՊԱՐԶՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՄԱՐԴԿԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ: Ե., Հայաստան, հրատ., 1965, 414 էջ:*

Գրքում հավաքված են նամակներ, փաստաթղթեր ու ժամանակակիցների հուշեր, որոնք արտացոլում են Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի՝ երկու հանճարեղ և, միևնույն ժամանակ շատ պարզ, սրտակից ու համեստ մարդկանց կերպարը: Այդ նյութերը, մի կողմից ցույց են տալիս պրոլետարիատի մեծ առաջնորդների արիությունն ու աննկունությունը և, մյուս կողմից՝ ընդգծում հուզիչ ջերմությունն ու հոգատարությունը բարեկամների ու հարազատների հետ ունեցած հարաբերություններում:

*ՍՈՒՔԻԱՍՅԱՆ Ա. Գ.— Մխիթար Գոշը և «Հայոց դատաստանագիրքը»: Ե., «Միտք» հրատ., 1965, 255 էջ:*

Մխիթար Գոշի մահվան 750-ամյակի առթիվ տպագրված այս մենագրության մեջ հանգամանորեն ուսումնասիրված է նրա «Հայոց Դատաստանագիրքը», բացահայտված է գրքի պատմական ու գիտական նշանակությունը, ինչպես նաև շարադրված են Գոշի հայացքները հայ պետականության, օրինականության պահպանման, կնոջ իրավահավասարության և նման այլ հարցերի մասին:

ԳԻՆԸ 25 Կ.

# ՀԵՏԱՔՐՔՐԱԿԱՆ ՓԱՍՏԵՐ ԵՎ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Երկրագնդի ամենահազվագյուտ բույ-
սերից են Աղանսոնյա Գիգիտատա հացի
ծառերը, որոնք աճում են Տանգանիկա-
յում: Այդ ծառերի բարձրությունը 20
մետրից չի անցնում, բնի հաստությունը
7 մետր է, իսկ պսակի լայնքը՝ 21 մետր:
Ամենահնագույն ծառերի հասակը հաշվ-
վում է 5000 տարի: Մի հացի ծառը կա-
րող է մի ամբողջ տարի կերակրել մի
քանի մարդուց բաղկացած ընտանիքը:

Հարավային Ամերիկայի չորային շրջան-
ներում աճում է մի հազվագյուտ բույս՝
Սելագինելա Կոնվոլյուտա: Երբ սպառվում
է խոնավությունը այնտեղ, ուր աճում
է Սելագինելան, նա հողից զգույշ հանում
է իր արմատը, վերածվում առանձգական
փոքրիկ գնդիկի և քամու ազդեցության
տակ գլորվում դեպի հերթական «օազիս»:
Այստեղ բույսը ծավալվում է, արմատիկը
մտնում է հողի մեջ, բայց երբ նոր տեղում
էլ խոնավությունը չի բավականացնում,
նորից կծկվում է ու գնում այլ տեղ:

Բրազիլիայում բնակվում է մրջյունների
«խելացի» տեսակ. երբ մրջնանոցը գեր-
բնակեցվում է, մրջյունների մի մասը հա-
վաքվում է մի վիթխարի գնդի մեջ, որը
գլորվում է մոտակա առուն կամ գետակը
և նանապարհորդում ներքև՝ հոսանքին
համընթաց: Ցամաք դուրս գալուն պես
գունդը տրոհվում է, և վերաբնակիչները
սկսում են կառուցել իրենց նոր բնակա-
րանը:

Շնաձկները ծովի սարսափն են, որոնց
դեմ մղվող պայքարը այժմ կազմակերպ-
վում է գիտական հիմունքներով:
Վերջերս Կարմիր ծով է ուղևորվել հա-
տուկ արշավախումբ (10 ադամարդ և մեկ
կին): Նկատի ունենալով մարդկային ար-
յան նկատմամբ շնաձկների հիվանդագին
թուլությունը, գիտնականները որոշեցին
խաղալ այդ լարի վրա: 25-ամյա աղջի-
կը՝ Ջիլ Ռիդը, պետք է խաղար խայծի
դեր: Հագած ջրապաշտպանական համա-
զգեստ, նա երկարե վանդակի մեջ իջնում
է ծովի խորքը և այնտեղից սկսում շնա-
ձկներին հրապուրել մարդկային կոնսեր-
վացված արյունով: Գիշատիչները երկար
սպասեցնել չեն տալիս: Այդ ժամանակ Ջի-
լը ջրի մեջ արտամղում է արյան գույնի
և բաղադրության մի քանի խորանարդ
քիմիական հատուկ պրեպարատ: Ճաշա-
կելով այն, շնաձկները անմիջապես սատ-
կում են և բարձրանում ծովի մակերես:
Շուտով ծովագնացները կստանան ունի-
վերսալ միջոց ծովային գիշատիչներից
պաշտպանվելու համար:

Վլադիվոստոկում վառվող մոմի էներ-
գիան կարող է ուսալ հզոր ռադիոտելես-
կոպը, որը որոշված է կառուցել Հայաս-
տանում: Այդ ռադիոտելեսկոպը հնարավո-
րություն կտա գիտնականներին ավելի
մանրազնին զբաղվելու, այսպես կոչված,
հեռավոր աստղային սիստեմների՝ ռադիո-
գալակտիկաների ուսումնասիրությամբ:

Զապաններր (ռեսորներ) պահում են...
տունը: Սա երևակայություն չի, այլ ռեալ
գոյություն ունեցող նախագիծ: Միջին
Ասիայի երկրաշարժային շրջանների հա-
մար դա ունի վիթխարի նշանակություն:
Աշխաբադում արդեն կառուցված է այդ-
պիսի մի տուն՝ զսպանների վրա:
Նախագծի հեղինակ, ինժեներ-շինարար
Յ. Զելենկովը հիմնական տանող եր-
կաթբետոնային կոնստրուկցիան տեղա-
դրել է գետնի վրա, իսկ շենքը կախ-
ված է պողպատե կախոցներից, որոնց
ծայրերին զսպաններ են: Մասնագետների
կարծիքով այդպիսի կառուցվածքը տունը
փրկում է նույնիսկ ուժեղ երկրաշարժերից: